# ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅ ԵՒ ՊԱՐՍԻԿ

# ՍԵՊԱԳԻՐ

# ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ



Digitized by Google

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԻԹ.

# ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅ ԵՒ ՊԱՐՍԻԿ

# ՍԵՊԱԳԻՐ

# ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

Digitized by Google

# ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅ ԵՒ ՊԱՐՍԻԿ

# ՍԵՊԱԳԻՐ

# ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ԿԱՄ

ՆՈՑԻՆ ՔԱՂՈՒԱԾՔ

ՈՐՈՆՔ

**ՆԱԻՐԻ-ՈՒՐԱՐՏՈՒ**

ԱՇԽԱՐՀԻՆ

ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԿԸ ՎԵՐԱԲԵՐԻՆ

ԹԱՐԳՄԱՆԵԱՑ

ՅՈՎՍԷՓ Վ. ՍԱՆՏԱԼՃԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

Digitized by Google

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Լեզուագէտք եւ պատմագէտք տեղեակ են քաջ թէ ինչպէս Եւրոպայի մէջ հմուտ անձինք ԺԹ. դարուն սկիզբներն պարսիկ, մարական եւ ասորեստանեայ - բաբելոնական արձանագրութիւնները սկզբնաւորեցին առեղծուլ, անոնց ընթերցումը տակաւ յառաջացուցին անհնարին տաժանօք եւ վերջապէս զայն ի կատար ածին: Լեզուագիտաց կաճառն նոյն արձանագրութեանց լեզուներն եւս ճշգրտելով, հասաւ յայն աստիճան կատարելագործութեան, որով հնագոյն ժամանակաց երեք լեզուն՝ բաղմադարեան լռութենէ վերջ, անյայտ վիճակէ յայտնի դրից բարձրացաւ, եւ յիշեալ արձանագրութեանց մէջ բովանդակեալ պատմական, աշխարհագրական, կրօնական եւ այլ կարգի իրաց նիւթերն լուսաւոր կերպով ծանօթացան հնակրկիտ գիտնական արանց եւ իմաստասէր համբակաց: Խաղաղ եւ գովասանաց արժանի յեղաշրջութիւն մըն էր այն ամենայն, որ մինչեւ այն ժամանակ ընդունուած գաղափարներն ընդարձակեց, ուղղեց եւ մաքրեալ յարդարեց: Արեւելից կարգ մ'ազգաց հին ժամանակներու պատմութիւնն լուսաւոր կերպիւ յերեւան եկաւ. եւ այն ազ-

Digitized by Google

գաց պատմութիւնն՝ որ կամաւոր կեղծեօք, կամ լոկ Հայրենասիրական փութով այլայլեալ էր, ուղղեցաւ, պակասաւորն լցաւ, իսկ անյայտն՝ զոր օրինակ Խատտեաց պատմութիւնն, յայտնուեցաւ ուսումնասէր աշխարհին։

Պատմութիւն մերոյ Հայրենեաց՝ որ Ասորեստանի եւ Պարսկաստանի դրացի էր, մեծապէս պէտք էր որ օգտուէր այս երկու երկրաց մէջ գտնուած արձանագրութիւններէն։ Իրօք ալ ասորեստանեան արձանագրութիւններէն ցարդ ի յայտ եկածներն մեզի կը ցուցընեն թէ տասնեւինն ասորեստանեայ թագաւորք, հնագոյն Հայաստանի ժողովրդոց հետ ինչպիսի՛ քաղաքական աղերս ունէին։ Այս թագաւորներէն ոմանք իրենց արձանագրութեանց մէջ՝ իրենց երկու նախնեաց Հայաստանի մէջ գործածները կամ ամբողջովին եւ կամ մասամբ մեզի կ'աւանդեն. այնպէս որ այս վերջնոց գործերն իրենց յաջորդներուն միջոցաւ մեզի կը յայտնուին։ Իսկ Անուանակիր կոչուած տարիներու ցանկն մեզի ուրիշ երեք թագաւորաց անունները կը յայտնէ, որոնցմէ, թէեւ տակաւին արձանագիր մը մեզի հասած չէ, սակայն նոյն ցանկէն կ'իմանանք թէ որպիսի՛ էր անոնց աղերսն մեր նախնեաց հետ։ Այս երեք թագաւորներն են Սաղմանասար Գ. (Ք. ա. 783—771), Ասորդան Գ. (Ք. ա. 771—753) եւ Սաղմանասար Դ. (Ք. ա. 727—722։) Պարսկաստանի եւ կամ պարսիկ արձանագրութիւններն՝ որոնք թուով քան զառաջինսն խիստ նուազ են, այնու մանաւանդ նշանաւոր կը

հանդիսանան՝ որ անոնցմէ մին եւ գլխաւորն՝ այս է Դարեհի Ա. պիսիտունեան արձանագիրն՝ հնագոյն Հայաստանի ժողովրդոց վրայ տիրող հարստութեան՝ նոյն թագաւորին ձեռքով կործանուած ըլլալը մեզի կ՚աւանդէ։

Մինչդեռ մենք մեր ազգային արձանագրութեանց ուսման կը պարապէինք, բնականապէս չէինք կրնար անտես առնել յիշեալ երկու ազգաց արձանագրութիւնները։ Թէ առաջնոց եւ թէ այս վերջնոց միաւորութենէն պիտի յառաջ գար մեր ազգին հնագոյն ժամանակաց պատմութիւնն։ Եւ որովհետեւ եւրոպացի գիտնականք ասորեստանեայ եւ պարսիկ արձանագրութիւնները կատարեալ ձեռնհասութեամբ թարգմանած էին, մեզի կը մնար անոնց շաւղին հետեւիլ, անոնց թարգմանութիւններէն օգտիլ, եւ յորում անոնք իրենց լեզուաւ ըրած թարգմանութեանց մէջ ի հարկէ պակասաւոր կը գտնուէին, մենք զգուշանայինք նոյն պակասութեանց մէջ չիյնալ։ Ցայսմ կարծենք թէ յաջողած ենք մանաւանդ այն նկատմամբ՝ որ բնագրաց տողերուն ամբողջութիւնը պահելու ջանացինք յաշխարհիկ բարբառ թարգմանութեամբ, եւ ուր որ հարկ էր դիմել գրաբառ լեզուին՝ մեր այն նպատակին հասնելու համար, թարգմանեցինք ի գրաբառ լեզու։ Եւրոպական լեզուներով եղած թարգմանութիւններն՝ այս նկատմամբ հայերէն թարգմանութենէն նուազ յաջող վիճակի մէջ կը գտնուին։

Digitized by Google

Թէպէտ ասորեստանեայ արձանագրութիւնքն բազմաթիւ հմուտ ասուրագէտներէն թարգմանուած են, սակայն միայն Եբերհարտ Շրատէր ուսուցչապետն եղաւ որ 1889 եւ 1890 տարիներուն մէջ անոնց ընթերցումներուն հետ թարգմանութիւնները հրատարակել ձեռնարկեց ի Պերլին։ Իրեն գործակից առաւ հինգ քաջ ասուրագէտ ուսուցիչներ, որոնց անուններն են Լ. Ապէլ, Կ. Պեցոլտ, Պ. Ենսէն, Փ. Է. Բայսէր եւ Հ. Վինքլէր։ Իւր ասորեստանեան արձանագրութեանց հաւաքածոյն երկու հատորի մէջ ամփոփելով, զայն Սեպագրական Մատենադարան (Keilinschriftliche Bibliothek) կոչեց։ Շրատէրեան հաւաքածոյն վստահութիւն կ'ընծայէ թէ՛ ասուրագիտաց եւ թէ՛ պատմագրաց՝ այնու որ նոյն ինքն ուսուցչապետն յասուրագիտութեան հուչակաւորագունից մէջ երեւելի դիրք մը գրաւած, եւ իւր գործակիցներն ընտրանոք իւր բոլորտիքը կոչած է։ Այսպիսի պայմաններով հրատարակուած հաւաքածոյ մը՝ մեր կատարեալ վստահութիւնը գրաւած ըլլալով, աներկիւղ հետեւեցանք այն համբաւաւոր անձանց թարգմանութեանց, միշտ մեր աչաց առջեւ ունենալով բնագրաց ընթերցմունքը, որոնց աջակողման էջերը կը գրաւեն թարգմանութիւնքն։ Այս ընթերցմունքն եւ անոնց թարգմանութիւնքն իրերաց հետ միշտ բաղդատելով է որ մեր իսկ թարգմանութիւնները կատարեցինք։ Եւ որովհետեւ յիշեալ հաւաքածոյին այլեւայլ անձինք գործակցած են, անհրաժեշտ

էր որ ոճերու եւ նոյն իսկ բառերու թարգմանութեանց մէջ միօրինակութիւն չտիրեր միշտ։ Այս անպատեհութեան դարման տանել ջանացինք մենք՝ որչափ մարթ էր։ Միւս կողմանէ՝ Շրատէրեան հաւաքածոյն չունէր քանի մ՚արձանագրութիւններ, որոնք մեր ազգային պատմութեան կատարեալ յօրինման անհրաժեշտ հարկաւոր էին։ Մենք զասոնք ժողվելով կարգեցինք իրենց պատշաճ տեղերը, նշանակելով անդէն թէ բնագրաց տեղերը, եւ թէ թարգմանչաց անունները՝ այս վերջնոց երկասիրութեամբքն հանդերձ։

Ասորեստանեայ արձանագրութիւնք հնագոյն Հայաստանի աշխարհագրական անուններով խիստ ճոխ են։ Մինչդեռ ազգային արձանագրութիւնք չունին ընդհանուր անուն մը, որով այս ժամանակաց ժողովրդոց բնակած երկիրները միահաղոյն բովանդակէ, ասորեստանեայ արձանագրութեանց մէջ երկու անուն մեր աչաց առջեւ կ՚ելլեն։ Եւ նախ՝ սեմական լեզուաց հաւասարնորը "գետ" բառէն՝ Նիրի, Նաիրի, Նա'իրի, Նահրի, Նա'րի "Գետք" այս է "Գետոց Երկիր" անուամբ կոչած են Մեծ Հայոց գրեթէ բովանդակ տարածութիւնը։ Նախ Սաղմանասար Ա. (Ք. ա. իբր 1330—1310) Նիրի անունը գործածած է իւր ուխտական Աֆսէի արձանագրութեան մէջ։ Նիրի՝ հաւանականագոյնս միւս ձեւերուն սղեալն եւ այլափոխն է, եւ յատկապէս Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն աղբերականց մօտաւոր տեղուանքը կը ցուցընէ։ Սակայն Թագ-

ղաթփաղասարաւ Ա. (Ք. ա. 1108 իբր 1080) Նաիրի անունը կը սկսի “երկիրք„ (մատաղէ) բառին հետ ստէպ միանալ, որով “Նաիրեայ երկիրք„ լայնածաւալ տարածութիւն մը մեզի կը հանդիսացընեն: Այսպէս նոյն թագաւորին Հաստուածակողմանց արձանագրութեան մէջ (սիւն Դ. տողք 83, 96—97) կը տեսնենք թէ բազմաթիւ երկիրներ նոյն անուան տակ կը բովանդակին, եւ բազմաթիւ վիճակաց արքայիկներն Նաիրեայ երկրաց կը պատկանէին: Այս երկրաց մէջէն Դաիաինի կոչուածն՝ որ ազգային արձանագրութեանց Դիաուխինի երկիրն է, կարնոյ գաւառին հարաւոյ արեւմտակողմն էր: Դարձեալ՝ նոյն թագաւորն Սուբնատ գետոյ ակրին արձանագրութեան մէջ (տ. 9) “Նաիրիի ծով„ մը կը յիշէ, որ անտարակոյս Բզնունեաց ծովն էր, որուն հիւսիսակողմն ի կօճանլըու գըտնուած է յիշեալ թագաւորին մէկ արձանագրութիւնն, յորում (տ. 4) իրեն համար կ՚ըսէ թէ “Նաիրիի երկիրներուն տիրեց„: Ասուրնածիրաբաղայ (Ք. ա. 885—860) Տարեգրութեանց մէջ (Ա. 103—113, Բ. 1—3) կը տեսնենք թէ այս թագաւորն Մեծ Ծոփաց հիւսիսոյ մասին եւ յետոյ Աղձնեաց արեւմտեան կողմերն արշաւեր է: Այս կողմերն Ասուրնածիրաբաղ (անդ, Բ. 6) “Նաիրիի երկիրներ„ կը կոչէ: Միւս կողմանէ Սաղմանասարայ Բ. (Ք. ա. 860—825) առ Լէյարտայ 12 արձանագրութեան մէջ (Ա. 14—15) կը կարդանք որ նոյն թագաւորն “Նաիրեայ երկրին վերին եւ ստորին

ծովերէն„ մինչեւ Ասորիք տիրեր է։ Ասոնց առաջինն Թզնունեաց՝ եւ երկրորդն Կապուտան ծովերն են։ Նաիրի անունն Սարգոնի (Ք. ա. 722—705) ժամանակ՝ ամփոփուած կը տեսնենք Վասպուրականի Հարաւոյ արեւելակողմը գտնուող Գուկան գաւառին վրայ,[1] որուն գլխաւոր քաղաքն նոյն Թագաւորին Տարեգրութեանց (տողք 78—112) եւ Խորսապատայ պալատին մեծ Արձանագրին (տող 54) համեմատ՝ Խուբուսկիա էր։ Սակայն այս անունն Ադադնիրարեայ Գ. ժամանակ՝ Անուանակիր տարիներու ցանկին 784 տարւոյ ծանօթութեան մէջ նոյն իսկ այն քաղաքին վիճակին անունն էր։ Ըստ այսմ՝ Մեծ Հայոց մեծագոյն մասն Նաիրի կը կոչուէր։ Որովհետեւ Ասորեստանի Թագաւորք Երասխ ու Կուր գետոց մէջ եղած երկիրներուն վրայ արշաւանք մը գործած չեն, չենք կարող որոշակի ըսել թէ զասոնք ալ Նաիրեայ երկրաց կարգը կը դասէին թէ ոչ։ Սակայն կարի հաւանական է որ այս երկիրներն եւս այն ընդհանուր անուամբ կը յիշուէին։ Նաիրի անունն աշխարհագրական ըլլալէն զատ՝ ազգագրական ձեւ մ'ալ կ'առնու ըստ իմիք երբ մէկն կը խորհի թէ բովանդակ ծանօթ Նաիրեան երկրաց եւ քաղաքաց անուններն առանձինն տիպար մ'ունին, եւ շատ մ'անուններ յունական եւ կամ տեղական լեզուի բառերով յօրինեալ են։ Սոյնպիսի անուններ կը գտնուին միջին Երասխայ ձախա-

---

[1] Գուկան — Խուբուսկիա. տես ի մատենաւորի Սարգոնայ Տարեգր. 78, 121–122։

կողմը, Գեղամայ ծովուն բոլորտիքն եւ Կուր գետոյ աջակողմը։ Կարի հաւանական է որ Նաիրի, Նահրի՝ այլովքն հանդերձ, անունն նախ քանի մը սեմական ազգաց մէջ գործածուած ըլլալով, Ասորեստանի թագաւորներն յատկապէս նոյն անունը կու տային հնագոյն Հայաստանի։ Այսչափ համառօտիւ Նաիրի անուան վրայ ասորեստանեայ արձանագրութիւններէն։ Իսկ մեր ազգային արձանագրութեանց մէջ կը տեսնենք թէ Շարիդուր Ա. (Ք. ա. իբր 835—820) իւր միակ արձանագրութեան մէջ (մեր թիւ 1) կ'ըսէ. "1 Տախտակ Շարիդուրայ՝ ... 2 Նաիրեայ արքայի, .... 4 արքայ արքայից, այն ամէն թագաւորներէն 5 հարկեր առի ...„։ Թէպէտ այս խօսքերն կը ցուցընեն թէ Շարիդուր Ա. ընդարձակ երկրի մը վրայ կը տիրէր, սակայն իրմէ գործածուած նոյն անուան զօրութեան վրայ որոշ գաղափար մը չենք կրնար գոյացընել, մանաւանդ որ իւր ժամանակը Նաիրեայ բովանդակ հարաւային մասն Ասորեստանեայց իշխանութեան տակն էր։ Մինուաս Ա., որ իւր հօրն Իսպուինեայ գահակիցն էր (Ք. ա. իբր 805—800), զԻսպուինիս "Նաիրայի թագաւոր„ կը կոչէ[1] առանց այս երկրին դրից վրայ բառ մ'ըսելու։

Սարգոնէն վերջ Նաիրի անունն կարծես կ'անյայտանայ. վասն զի ուրիշ անուն մը՝ որ կանխաւ ծանօթ էր, գամ քան զգամ կը զօրանար, կը տարածուէր եւ առաջնոյն տեղը կը գրաւէր։ Այս անունն էր Ուրարտու, որ յու-

---

[1] Տես մեր թիւ 2. տողք 18/19։

նարէն οὖρ(η) (= ուր-է "լերինք" եւ ʾαρτὰ (= ուրտու) "բարձունք որ. բարձրացեալք" բառերէն բաղդեալ է։[1] Այս անունն՝ որ բուն տեղական ժողովրդոց լեզուէն յառաջ եկած է, նախապէս կարնոյ գաւառին կը տրուէր։ Ասուրնածիրաբաղ (Ք. ա. 885—860) առաջինն է որ իր Առաջնակերպ (Stendard) արձանագրութեան մէջ Ուրարտու անունը կը յիշէ. իսկ իւր որդին Սաղմանասար Բ. (Ք. ա. 860—825) անոր դիրքը կը յայտնէ՝ երբ իւր Մենաքարի արձանագրութեան մէջ (սիւն Բ. տող 45—48) կ'ըսէ. "Ինզիտիէն[2] ելայ, Արձանիային[3] վրայէն անցայ, Սուխմի երկրին մօտեցայ.... Սուխմիէն ելայ, Դաիաինի երկրին վրայ իջայ.... Դաիաինիէն ելայ, Ուրարտացի Արրամին թագաւորական քաղաքն Արզասկուին[4] մօտեցայ։" Ապա ուրեմն՝ Ուրարտու յառաջագոյն Հասարակ փոքր

---

[1] Այս ստուգաբանութիւնը նախ մենք յօրինած ենք։ Ասուրագէտք ոմանք կ'ըսեն թէ Ուրարտու անունն երկու բառէ բաղդեալ է, ուր եւ ուրտու, որոնց առաջինն "լեռ" եւ երկրորդն "բարձունք էյ., բարձր-երկիր, լերինք" կը նշանակէ։ Անյարիր բառեր են ասոնք։ Թողլով ոմանց անհաւաստի մեկնութիւնները, ըսենք թէ այսօր հասարակաց տեսութիւնն է թէ Ասորեստանեայք նախապէս Ուր-Ուրտու եւ յետոյ պիտակաբար Ուր-ուրտու կոչած են հնագոյն ժամանակաց Հայոց երկիրները։ Տես Հենրիկոս Ռաւլինսընի մեկնութիւնն ի G. Ronbinson, Herodotus, t. IV, essay III. Eb. Schrader, Die Keilinschriften und Geschichtsforschung, 1878, էջ 30. Fr. Lenormant, Les origines de l'histoire, 1882, 2e édit., t. II, 1re partie, էջք 38–40.

[2] Ծոփաց Հանձիթ գաւառն։

[3] Արածանի, արդի Մուրատ-չայ։

[4] Այլուր՝ Արզասկուն, Արզասկունու։

վիճակ մը, Արածանւոյ կամ արեւելեան Եփրատայ աջակողմը կը գտնուէր, եւ իւր գլխաւոր քաղաքն Արզասկու Դախախնի երկրէն անդին էր։ Յիշեալ երկիրներուն յաջորդութեանց կցյգ ընթացընելով մեր հետազօտութիւնը՝ կը հասնինք Կարնոյ գաւառին Հարաւոյ արեւելակողմը, ուր կը գտնենք Արծն քաղաքը, որ անտարակոյս Նոյն իսկ Արզասկու կամ Արզասկունու քաղաքն էր։ Ըստ Հետեւորդի՝ Ք. ա. Թ. դարուն առաջին կիսոյն մէջ Ուրարտու նոյն իսկ Կարնոյ գաւառին դիրքը կը գրաւէր, հաւանականօրէն քիչ մ'աւելի տարածութեամբ։ Սաղմանասարայ Բ. Նիմրուտայ Կոթողին Տարեգրութեանց համեմատ՝ այս թագաւորն 857 տարին կ'արշաւէ յՈւրարտու, որուն թագաւորն էր Արամիս։[1] Դարձեալ՝ յիշեալ Տարեգրութեանց (տող 141—144) համեմատ՝ Սաղմանասար Բ. 833 տարին իւր բանակին սպարապետն այս Ուրարտուին վրայ կը ղրկէ, ուր կը թագաւորէր Շարիդուրիս[2] Ա.։ Նոյն Սաղմանասար՝ ըստ նոյն Տարեգրութեանց (տող 174—176, 179—180) 829 տարին՝ կրկին անգամ իւր բանակը հանդերձ իւր սպարապետաւն Ուրարտուին վրայ կը խաւրէ։ Թուի ստոյգ թէ ուրարտացին Աստ-

---

1 Ասորեստանեայք օտարազգի յատուկ անուանց վերջի ս տառը գրեթէ միշտ կը կրճատեն։ Ըստ այսմ՝ փոխանակ “Արամի„ ձեւոյն՝ ինչպէս ունին Սաղմանասարայ Բ. արձանագրութիւնքն, ուրարտեան ձեւն պէտք էր որ ըլլար “Արամիս„։ Արամէական լեզուաւ րոմ կը նշանակէ “բարձր„։

2 Շիդուրի՝ ըստ ասորեստանեայն։

Digitized by Google

ընտանեայց սպարապետին վրայ նշանաւոր յաղթութիւն մը տարած է. որովհետեւ այս ժամանակէն վերջն է անտարակոյս որ Շարիդուրիս Ա. իջած է Թղնունեաց ծովուն արեւելակողմն եւ Տուսպաս (Վան) քաղաքն ընտրած է յիւր նոր մայրաքաղաք, ուր մեր ազգային Թագաւորաց մէջէն առաջինն եղած է (ասորեստանեան լեզուաւ) սեպագիր արձանագրութիւն մը կանգնելու։ Այս փոխադրութիւնը կրնանք 828 տարին դնել։ Այսպէս՝ զՈւրարտու երկայնեալ տարածեալ կը գտնենք Բարձր Հայոցմէ դէպ ի Հարաւ արեւելից՝ Թղնունեաց ծովուն արեւելեան եզերքը։

Այս ժամանակէն վերջ մինչեւ Սաղմանասար Գ. (Ք. ա. 783—771) ասորեստանեայ արձանագրութիւնք Ուրարտու անունը չեն յիշեր։ Այս Թագաւորին ժամանակ՝ Անուանակիր տարիներու ցանկին մէջ Ուրարտու անունը վեց անգամ յիշուած կը գտնենք. յորմէ դժբախտաբար կարող չենք ըլլար իմանալ յատկապէս Նաիրեայ որ կողմանց կ'ակնարկուի։ Թագղաթփաղասարայ Գ. (Ք. ա. 745 - 727) Նիմրուտայ Տախտակի արձանագրութեան մէջ (տող 20, 24) կը տեսնենք թէ մերս Շարիդուրիս Բ. (Ք. ա. իբր 755—730) [“ուրար]տացի,, եւ իւր երկիրն “լայնատարած Ուրարտի,, կը կոչուին. զՏուսպաս՝ Շարիդուրեայ Բ. արքայանիստ քաղաքը, Տուրուսպա կը կոչէ Ասորեստանեայն, եւ մեզի իմանալ կու տայ որ այն քաղաքն Ուրարտուայ մէջ էր։ Դարձեալ՝ Ուլլուբա վիճակն՝

Digitized by Google

(տե՛ս տղք 28—29) որ Ծոփաց աշխարհին արեւելակողմն էր, Ուրարտիայ պատկանելը կը ճանչցուի։ Այս Շարիդուրիս Թագաւորին ժամանակէն Ուրարտու անունն Նաիրի անուան հետ մրցիլ կը սկսի։ Սարգոնի Խորսապատայ պալատին Մեծ Արձանագրէն (տ. 43) կ'իմանանք թէ Ուրարտացի Ուրշա, ըստ մեր տոհմային արձանագրութեանց Ռուշաս Ա. (Ք. ա. իբր 730—714) ութ երկիր ունէր, որոնց մէջ 55 ամուր եւ պարսպապատ քաղաք, եւ 11 բերդաքաղաք կային։ Ասոնք արդարեւ ընդարձակ երկրի մը մէջ պէտք էր որ ըլլային։ Դժբախտաբար անհնարին է յականէ յանուանէ որոշել այն երկիրները, որոնք անտարակոյս Ուրարտու անուան տակ կը բովանդակուէին, եւ հաւանականագոյնս անոր մէկ մասը կը կազմէին։ Յառաջ ժամանակաւ՝ Մինուաս Ա. (Ք. ա. իբր 805, 800—780) որուն աքքայանիստ քաղաքն Տուսպաս էր, իւր բանակներովն Վասպուրականի մէջ Մանաս Թագաւորութեան վրայ, եւ դէպ յարեւելս Հարաւոյ՝ մինչեւ Կապուտան ծով Հասած եւ Ուշնի քաղաքին մօտ արձանագրութիւն մը կանգներ էր[1]։ Անոր որդին՝ Արգիստիս Ա. (Ք. ա. իբր 780—755) աւելի եւս յառաջելով՝ Պարսուա կամ Բարսուա[2] երկրին եւս տիրած էր։ Մինուաս Ա. դարձեալ՝ իւր իշխանութիւնը զինու զօրու-

---

1 Մեր Հաւաքածոյին մէջ Թիւ 2*։

2 Պարսկահայք Նահանգին անունն անտարակոյս այս երկրէն յառաջ եկած է։

թեամբ դէպ յարեւմուտս մինչեւ Ալզինի[1] երկիրն, Զուպաս[2], Խուզանա[3] եւ անդր եւս քան զԵփրատ տարածած էր։ Շարիդուրիս Բ. (Ք. ա. իբր 755—730) իւր իշխանութիւնը մինչեւ Երասխ ու Կուր գետոց ստորին կողմանքը տարածեց[4], եւ Ռուշաս Ա. (Ք. ա. իբր 730—714) մինչեւ Ալզիրա[5] վիճակը՝ յարեւելեան եզերս Եւքսինեան Պոնտոսի՝ տիրած էր[6]։ Կարի հաւանական է որ Երասխ ու Կուր գետոց մէջ գըտնուած երկիրներն եւս Ուրարտու անուան մէջ կը փակուէին՝ այնու որ ի Տուսպաս նստող թագաւորներն Ուրարտուի թագաւորք կը ճանչցուէին եւ այն երկրաց վրայ կ'իշխէին։ Ասոր դրական մէկ օրինակն ունինք արեւմտակողման մէկ մասին համար։ Սարգոնի Տարեգրութեանց մէջ կը կարդանք որ այս թագաւորն Ք. ա. 712 տարին Մելիդ[7] քաղաքին վրայ գործած արշաւանէն վերջ, անոր մօտաւոր Տուլգարիմմի քաղաքը նորէն շինել տուաւ։ Զայս յիշելով՝ կը յաւելու (անդ, տղք 191—193). "Լուխսու, Բուրդիր, Անմուրրու, Կի...*, Անդուարսալիա քաղաքները Ուրարտիայ դէմ ամրացուցի, պահակներ ըրի։

---

1 Ըստ ասորեստանեայ արձանագրութեանց Ալզի, Եկեղեաց գաւառ։

2 Մեծ Ծոփք, սակայն նուազագոյն տարածութեամբ։

3 Ծոփաց Խողնոյ գաւառն։

4 Տես մեր Հաւաքածոյին մէջ արձգր. թիւ 28։

5 Աճարա գաւառ Կողքիսի։

6 Նոյն Հաւաքածոյին մէջ արձգր. թիւ 35։

7 Մելիտինէ, որ արդի Մալաթիա քաղքէն քիչ մը հեռու՝ դէպ յարեւելս շինուած էր։



Digitized by Google

Ուսի, Ուսիլու (՞), Ուարգին քաղաքները Մոսոքի երկրին սահմաններուն վրայ շինեցի։„ Միլիդ, Տուլգարիմմի եւ Մոսոքայ երկիրն Եփրատայ արեւմտակողմն էին։ Եթէ Նինուէացին Կապպադովկիոյ մէջ քաղաք մը նորէն շինել կու տայ, եւ Ուրարտիայ դէմ չորս քաղաք ամրացուցած ըլլալը կը յիշէ, յայտ է թէ այս ամենայն շինութիւնք եւ կարգաւորութիւնք Ուրարտուայ մէջ չէին. այլ անոնց մեծ մասն Ուրարտուայ մօտ՝ եւ ապահովապէս անկէ գալիք ապագայ հնարաւոր յարձակմանց դէմ զգուշանալու համար շինել տուած է Ասորեստանեայն։ Ուստի կրնանք ստուգութեամբ ըսել թէ Սարգոն՝ Հայոց Մեծաց արեւմտակողման ծագաց գոնեայ վերին կէսը՝ Ուրարտուայ եւ ասոր սահմանագլխոց երկիրներ կը ճանչնար։ Այս սահմանագլուխք կից էին սահմանագլխոց Մոսոքայ երկրին, որ դարերով յետոյ Փոքր-Հայք կոչուեցաւ։ Թէ վերոյիշեալ սահմանագլխոց երկիրներն Ուրարտուայ կը պատկանէին՝ կը հաստատուի նաեւ Ս. Գրքէն, որ Սենեքերիմայ հայրասպան որդւոց համար կ՚ըսէ թէ “զերծան յերկիրն Արարատայ„ (Դ. Թագ. ԺԹ. 37)։ Այս բառերուն բացատրութիւնը կը գտնենք Աբիւդենեայ քով, որ հայրասպան եղբարց զօրաց համար կ՚ըսէ թէ Բիւզանդացւոց քաղաքը մղուեցան[1]. յորմէ եւ կ՚իմանանք թէ այս քաղաքն արեւմտեան Եփրատայ ստորին կողմը՝ Եկեղեաց գաւառին Վժան քաղաքն էր։ Արա-

1 Առ Եւսեբեայ, Քրոն., Հրատ. Աւգերեան, Մասն Ա. էջ 53։

րատ անունն ստէն եւ այլուր՝ Ուրարտու անուան հետ նոյն է, առաջինն երկրորդին եբրայական ձեւն միայն ըլլալով։

Այս ժամանակներէն վերջ՝ Ուրարտու անունն Պահիր-Բէլայ առ Թագաւորն Սենեքերիմ (Ք. ա. 705—682) նամակին մէջ (տղ. 6) եւ Ասուրբանիբաղայ (Ք. ա. 668—իբր 638) Ռասսամայ Գլանին Տարեգրութեանց մէջ (սիւն Ժ. տղ. 40) գործածուած է. սակայն երկրին տարածութիւնը ցուցընելու որոշ նկարագիր մը չունի։

Դարեհի Ա. (Ք. ա. 521—485) Պիսիդունի երեքլեզուեան արձանագրութեան բաբելոնական խմբագրութեան մէջ (տղք 49, 53) Ուրարտու անուան տեղ Ուրաստու գործածուած է։ Նոյն բաբելոնական ձեւը կը գտնենք Նագըշ-ի-Ռուստամայ NR a) արձանագրութեան բաբելոնական խմբագրութեան 16րդ տողին մէջ։ Ուրարտու եւ Ուրաստու անուններն Պիսիդունի արձանագրութեան պարսկական խմբագրութեան մէջ տեսնուած (Ա, 15. Բ, 32—34, 39, 44, 50,52, 59, 63) Արմ՚ինա եւ Արմանիյա անուանց համազօր են ըստ ամենայնի։ Արդ՝ Արմ՛ինա աշխարհին տարածութիւնն էր այնպիսի՝ որ Քսենոփոն Ք. ա. 401 տարին՝ արեւելեան եւ արեւմտեան մասերու բաժնուած գտաւ զայն[1], որոց առաջնոյն կուսակալն էր Որոնտաս, եւ երկրորդին՝ Տիրիբազ։ Այս դրութիւնն ինք-

---

1 Քսեն., Արշաւան Կիւրոսի, Դ. 3, 4։

նին բաւական է մեզի իմացընելու թէ Արմ՛ինա կրնար ունենալ եւ պէտք էր որ ունենար այն տարածութիւնը, զոր Ուրարտուի Թագաւորն Մէնուաս Ա. Ք. ա. իններորդ դարուն վերջերն եւ Ութերորդին սկիզբներն իւր Հայրեննեաց տալու ձեռնարկեց, եւ զոր Տրդատ Գ՝. Ք. ե. Երրորդ դարուն վերջին քառորդին մէջ նորէն ստանալ յաջողեցաւ. այս է տարածութիւն մը՝ որ կը սկսէր Կապուտան ծովուն արեւելեան կողմերէն, եւ կը ձգէր մինչեւ Եփրատայ ազեզը։ Այս դրութեան հակառակ որ եւ իցէ խորհրդածութիւն թէ պատմական փաստերէ զուրկ կը մնայ, եւ թէ իրաց բնական վիճակին անհամաձայն կը գտնուի։

Նման մեր ազգային արձանագրութեանց՝ ասորեստանեայ արձանագրութիւնք Նաիրի-Ուրարտու աշխարհին վրայ բաւական գոհացուցիչ աշխարհագրական տեսութիւններ մեզի կ'ընծայեն. այնպէս որ երկրաց եւ քաղաքաց անուններուն նկատմամբ՝ Ք. ե. Հինգերորդ դարուն աշխարհագրական վիճակն շատ եւ շատ աւելի նմանութիւններ ունի ուրարտեան-ասորեստանեայ ժամանակաց աշխարհագրական վիճակին հետ, քան զոր չունի յիշեալ Հինգերորդ դարու տախտակն մեր ժամանակաց աշխարհացոյց տախտակին հետ։ Կարի բազմաթիւ աշխարհագրական անուանց մէջ՝ մեծ վիճակաց անուններն թուով սակաւաթիւ են քան զանուանս փոքր եւ փոքրագոյն վիճակաց, որոնց մեծ մասն քաղաքի կամ աւանի մ'անմիջապէս բոլորտիքն

Digitized by Google

եղած երկիրներէ կը բաղկանար։ Ընդհանրապէս խօսելով՝ Ասորեստանեան արձանագրութիւնք թէ՛ վիճակաց եւ թէ՛ քաղաքաց անունները բաւական ճոխութեամբ մեզի կ՚աւանդեն. այսու հանդերձ սակաւ ինչ անճշդութիւնք անտարակոյս պիտի դիպէին, ինչպէս արդեամբք դիպած են։

Աշխարհագրական դրից վրայ այսչափս աստէն բաւական համարելով, կ՚անցնինք պատմական մասին, զոր համառօտիւ կը դնենք՝ քաղելով գլխաւորապէս Ասորեստանեայ, Ուրարտեան եւ պարսիկ արձանագրութիւններէն։

Նախաւոր ժամանակաց մէջ Նաիրի աշխարհին բնակիչներն գրեթէ ամբողջապէս մէկ ազգի բազմաթիւ ցեղերէն կը բաղկանային։ Այս ցեղերն կամ ժողովուրդք Ս. Գրոց մէջ (Ծննդ. ԺԱ. 28, 31, եւն) Կասդիք կը կոչուին. այս անունն "Լուսատու-տարածոյն-երկրպագու" կը նշանակէ, եւ մեր ազգային արձանագրութեանց Խալդէ "Քաղդիք" անուան հետ նոյն է։ Յիշեալ ցեղերուն նոյնպէս բազմաթիւ արքայիկներ կը տիրէին։ Ցեղք եւ արքայիկք արիական եւ կամ հնդիկ-եւրոպական ազգաց կարգէն էին, եւ ի մասնաւորի՝ յունաբարբառ ժողովրդոց երկուորեակք եղբարքն էին։ Նաիրեայ արքայիկներու մէկ մասն մերթ ընդ մերթ հասարակաց եւ աշխարհակալ թշնամւոյն դէմ դաշնակցութեամբ կը միանար. սակայն յանօգուտս. վասն զի օտարն երթալով կը տարածուէր ի Նաիրի։

Այս թշնամին էր Ասորեստանեայց ազգն, որ իւր ծագմամբն ու լեզուաւը սեմական

ցեղերուն մէկ ճիւղն էր։ Ք. ա. Ժ. դարու մէջ նոյն ազգն Բաբելաստանէն ելլելով՝ Տիգրիսի միջին կողմանքն եկած, եւ այս գետոյն աջ ու ձախ կողմերը հաստատուած էր։ Դար մ'ամբողջ Եգիպտացիք այս երկրին տիրելէն վերջ՝ երբ իբր 1440 տարին անկէ քաշուեցան, Ասորեստանեայք իրենց դրացեաց երկիրներումն տակաւ մեծնալ սկսան։ Ասուրուբալլիտ՝ որ Ք. ա. իբր 1410—1390 թագաւորած է, առաջինն եղած կ'երեւի որ տիրած է Նաիրեան երկրաց մէկ մասին, այսինքն հարաւոյ արեւմտից կողմանց եւ "լայնածաւալ Սուբարի երկրին„[1] որ այն ժամանակներն Ծուփաց աշխարհին միջին մասը կը կացուցանէր։

Սաղմանասար Ա. (Ք. ա. իբր 1330—1310) Նիրի (= Նաիրի) եւ Մուսրի երկրաց տիրեց. որոնց առաջնոյն անուամբ հաւանականօրէն Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն վերնագոյն կողմանքը կ'իմացուէր. իսկ երկրորդն Թուրի Թէ խորձեան գաւառին արեւմտակողմը փոքր վիճակ մըն էր[2]։ Սաղմանասար Ա. Հիւսիսային Կասիարի (Անտիտաւրոս) լերան հարաւակողմն, եւ արեւմտեան Տիգրիսի ձախակողմը՝ Կիրխու երկրին Իրի քաղաքն առաւ[3]. Խալզիդիպխա[4] վիճակին եւ

1 Տես Ադադնիրարեայ Ա.ոյ Վիմատախտակը, տա- [illegible] կողմը, տող 28–34։

2 Թուրի Թէ Մալաթիոյ հիւսիսակողմն եւ Եփրատայ ձախոյ եզերաց վրայ արդի Մուշէր լերան դիրքն՝ նոյն իսկ Մուսրի վիճակն էր։ Տես Hommel, Geschichte Babyloniens und Assyriens, 1885, էջ 530։

3 Ասուրնածիրաբաղայ բեկեալ Կոթողի արձանագրութիւն Գ.։

4 Մեծ Ծոփաց մէջ Հաշտեանք գաւառ։

Digitized by Google

ասոր մօտերը գտնուող Սինաբու եւ Տիդու բերդաքաղաքներուն մէջ Ասորեստանեայ գաղթականներ հաստատեց[1]:

Ըստ այսմ՝ հնագոյն Հայաստանի հարաւոյ արեւմտակողմն նախ յառաջագոյն ինկաւ Ասորեստանեայց իշխանութեան տակ: Իսկ հարաւոյ արեւելակողման մէկ մասին՝ Սաղմանասարայ Ա. որդին եւ յաջորդն Թագղաթադար Ա. (Ք. ա. իբր 1310—1270) է որ նախ տիրեց: Այս թագաւորը Կարդու[2] երկրին տիրելով, հնագոյն Հայաստանի մէջ իւր նախորդաց ըրած աշխարհակալութիւններն աճեցուց:

Կրնանք ապահովապէս ըսել թէ ԺԲ. դարուն առաջին քառորդին մէջ՝ հնագոյն Հայաստանի հիւսիսոյ արեւմտակողմն Ասորեստանեայց իշխանութեան տակ ինկաւ: Թերեւս Նինիպբաղասար (Ք. ա. իբր 1190—1170) էր որ Ալզի[3] եւ Պուրուկուզզի[4] վիճակաց տիրած էր: Այս վիճակներն մինչեւ 1158 տարին Ասորեստանի հարկատու էին՝ երբ նոյն տարին Մոսքի ազգն եւ թագաւորներն անոնց տիրեցին:[5]

1 Ասուրն. Յարեգրութիւնք, Ա, 102–103, եւ այլափոխ ընթերցուածն, տող 43–44:

2 Կորդուաց աշխարհ կամ Կորճեայք, ըստ ազգային սեպագիր արձանագրութեանց՝ Գուրուխու:

3 Ըստ ազգային արձանագրութեանց՝ Ալզինի, ըստ արեւմտեան մատենագրաց՝ Ակիլիսենէ, եւ ըստ մերայնոց՝ Եկեղեաց գաւառ:

4 Կամ Բուրուկուզզի, Եկեղեաց գաւառին հարաւակողմը՝ Բալահովիտ գաւառն:

5 Տես Թագղփ. Անոյ Հատուածակողման արձանագր., սիւն Ա. 62–66, եւ 1158 տարին համեմատէ այս թագաւորին գահակալութեան տարւոյն հետ:

Digitized by Google

Աշորդանայ Ա. (Ք. ա. իբր 1170—1150) եւ անոր անընդմիջական յաջորդներուն ժամանակ՝ Ասորեստանեայց զօրութիւնն տկարանալ սկսած էր. որով Մոսքի արքայիկներն այն վիճակները յիսուն տարի իրենց իշխանութեան տակ պահեցին։ Միւս կողմանէ՝ Խատտացիք, Ուրումացիք եւ Կասկայք Սուբարտի (Սուբարի) երկրէն քաղաքներ գրաւած էին։

Այսու հանդերձ՝ Ասուրրիսիսի (իբր 1130—1108) Ասորեստանի արքայն՝ կարող եղաւ Կորդուաց աշխարհին մէջ Ադա՛ուս վիճակը նուաճել։ Տեսանք վերագոյն որ Թագղաթադար Ա. կանխաւ Կորդուաց տիրած էր։

Նաիրեայ երկրաց ժողովուրդներուն եւ արքայիկներուն մէկ մեծ մասն՝ Ասորեստանեայց պետութեան տկարանալէն օգուտ քաղել ուզելով, օտարին ծանր լուծը թօթափելու նպատակաւ նիզակակցութիւն մ՚ըրած էին՝ երբ Ասուրրիսիսեայ որդին Թագղաթփաղսար Ա. (Ք. ա. 1108 — իբր 1080) իւր հօրը յաջորդեց։ Այս հզօր իշխանն երեք անգամ Նաիրեայ երկրաց վրայ արշաւան ըրաւ։ Առաջնոյն մէջ՝[1] իւր թագաւորութեան սկիզբն, ոչ միայն Սուբարտի, Ալզի եւ Պուրուկուզզի վիճակները դարձեալ Ասորեստանի իշխանութեան տակ առաւ, այլ եւ արեւմտեան եւ արեւելեան Կուրխեաց[2] վրայ արշաւեց եւ զանոնք նուաճեց։

1 Հատուածակողմանց արձանագր., սիւն Ա. 62–94, սիւն Բ. 1–102, սիւն Գ. 1–95։

2 Արեւմտեան Կուրխի կամ Կիրխի կամ Կիրխու՝ Մեծ Ծոփաց արեւելեան կողմերէն կը ձգէր դէպ յարեւե-

Երկրորդ արշաւանն[1] քան զառաջինն աւելի դժուարին էր։ Կարծես բովանդակ Նաիրեայ ժողովուրդներն Ասորեստանեայց ատելի տիրապետութենէ լծընկէց ըլլալ կը դիտէին։ Ասորեստանւոյն դէմ նախ նիզակակցեալ էին քսան եւ երեք Նաիրեան թագաւորք. ասոնց թիւն աճեցաւ մինչեւ վաթսուն, որոնց եւ ուրիշ օգնականներ հասան։ Թագղաթփաղասար Ա. նախ Կիրխի երկիրը մտնելով՝ Խիրիխա (Քարքէ) լերան վրայ այն երկրին զօրաց յաղթեց։ Ցետոյ Արածանի գետն անցնելով՝ դաշնակից թագաւորաց վրայ քալեց, յաղթեց անոնց եւ մինչեւ Բզնունեաց ծովը հալածական տարաւ։ Նիզակակից արքայիկներն գերի ինկան. սակայն երդմամբ մշտնջենաւոր հպատակութեան՝ ազատութիւն ստացան։ Թագղաթփաղասար Ա. իւր երրորդ արշաւանը[2] Մուսրի երկրին վրայ ըրաւ, ուր թէ այս երկրին եւ թէ անոր դրացի Քումանացւոց ժողովրդեան զօրաց վրայ յաղթութիւն տարաւ։ Այս թագաւորն՝ իւր յաջորդաց նախատիպ օրինակ եղած ըլլալով, բովանդակ իւր արշաւանաց մէջ հրայրեացք, կործանմունք, աւեր եւ աւարառութիւն կը գործէր ուր որ կը

---

լակողմն, Բզնունեաց ծովուն մօտերը. իսկ արեւելեան Կուրխի՝ մեր ազգային արձանագրութեանց Գուրուխու երկիրն, Կորդուաց աշխարհն էր։ Ասորեստանեայք Կուրխի անուամբ հասարակօրէն արեւմտեան կ'իմանային։

1 Հատուածակողմանց արձանագր., սիւն Գ. 7–101, սիւն Ե. 1–32։

2 Հատուածակողմանց արձանագր., սիւն Ե. 67–100, սիւն Զ. 1–38։

Digitized by Google

հանէր. եւ յետոյ հարկեր ու տուրքեր կը դնէր յաղթուած ժողովրդոց վրայ։

Տարակոյս չկայ որ Թագղաթփաղասարայ Ա. Նաիրեայ ժողովրդոց տուած հարուածներն զանոնք մեծապէս տկարացուցին։ Անկէ երկու դար եւ աւելի եւս՝ որչափ կ'երեւի, հանդարտութեամբ անցնելէ վերջ՝ Թուի թէ Թագղաթադարայ Բ. (Ք. ա. 889—885) ատեն Նաիրեայ արեւմտակողմը խլրտումներ սկսած էին, որոնց համար այս թագաւորն մինչեւ Սուբնատ գետը գալով, անոր այրին մէջ իւր արձանագրութիւնը կանգնած է։

Ասոր որդւոյն եւ յաջորդին՝ Ասուրնածիրաբալայ (Ք. ա. 885—860) ժամանակ մեծամեծ շարժումներ կը սկսին։ Բովանդակ համազգի ժողովուրդք անհանգիստ վիճակի մը մէջ են. ասոնց արքայիկներու վրայ գերագոյն արքայի եւ վեհապետի մը հարկաւորութիւնն կը զգացուի։ Առաջին անգամ Ուրարտու փոքր երկրի կամ վիճակի մը անունն կը յիշուի. վիճակ մը, որուն արքայիկներն օտարին դէմ յաջողութեամբ պատերազմելու համար փառաւոր աստիճանի մը կոչուած են։ Այս պատճառներուս համար է որ Ասուրնածիրաբալ չորս անգամ Նաիրեայ գրեթէ ամբողջ տարածութեան վրայ արշաւեց, անհնարին վնասներ եւ աղէտներ գործելով անդէն։ Եւ նախ 884 տարին՝ վերին Արածանւոյ աջակողմը Նումմի կամ Նիմմի երկրին վրայ արշաւեց. անկէ դէպ ի Կապուտան ծովն իջնալով, այս ծովուն արեւմտեան կող-

Digitized by Google

մերն եղող Վիրբուրի եւ Խուբուսկիա[1] եւ այլ երկրաց, եւ նոյն ծովուն հիւսիսակողմը՝ Վիրզանի վիճակին հարկերն առաւ եւ անոնց վրայ կողմնակալներ դրաւ։ Աստէն ստիպուեցաւ իւր զէնքը Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն կողմերը՝ Վիրխի երկրին քաղաքաց դէմ դարձընել։ Նիստուն քաղաքին բնակիչներն իրենց ընդդիմադրութեամբն երեւելի հանդիսացան. սակայն ամէն քաղաք ստիպուեցաւ յաղթողին առջեւ խոնարհիլ, որոց եւ հարկերու տակ զինքը դնել եւ վերակացուներ ընդունիլ յաղթողէն։ Նոյն տարին Օգոստոս ամսոյն մէջ Ասուրնաձիրաբալ զօրօք արշաւեց Կորճէից հարաւակողմն Ատկուն եւ այլ վիճակներուն մէջ երեւցած խռովութիւնները զսպելու համար։ Իսկ 883 տարին՝ Ասուրնաձիրաբալ Ծոփաց արեւելակողմը հաստատուած Ասորեստանեայց ապստամբութիւնը նուաճելէն վերջ, Մարիրու քաղաքին, Նիրբու վիճակին եւ Տիլա ամրոցին տիրեց։ Իջաւ Աղձնեաց արեւմտակողմը, գրաւեց Տուսխա քաղաքը, եւ հոն իրեն բնակութեան համար պալատ մը շինեց, եւ Նաիրեայ արեւմտակողմն ի Սուպրի (Ծոփք) գտնուած չքաւոր Ասորեստանցիները Տուսխային մէջ հաստատեց։ Մէկ կողմանէ ամբողջ Նաիրեայ երկրաց թագաւորներուն հարկերը կ'առնուր, միւս կողմանէ այն երկրաց վրայ կողմնակալներ կը կարգէր։ Նինուէ դառնալու ժամանակ Վիրխիի մէջ ապստամբած քաղաքները նուաճեց։

1 Ըստ ազգային արձանագրութեանց՝ Հուգիստիս, որ է Գուկան գաւառ Վասպուրականի։

Յամին 880 կը տեսնենք թէ Ասուրնաձիրաբալ Աղձնեաց արեւմտից հարաւակողմը Մատիատի, Իրսիա եւ ուրիշ քաղաքներու վրայ կ'արշաւէ, անոնց կը տիրէ, կ'աւերէ եւ կ'այրէ զանոնք։ Ոչ միայն այս կողմանք, այլ եւ Ծոփաց մէջ ապստամբութիւնք Ասորեստանւոյն զէնքերը հոն կը հրաւիրեն։ Տիգրիսի վրայէն անցաւ լաստերով, Դիրրա վիճակին Պիտուրա ամրոցին, Մասնի լերան կրծին բերանը գտնուող Կուկունու քաղաքին տիրեց, եւ անհնարին անգթութեամբ վարուեցաւ թշուառ բնակչաց հետ։ Անկէ իջաւ ի Կիլխի՝ ուր ապստամբական յուզմունք կային։ Արբակի քաղաքին բնակիչներն եւ զօրքն սարսափած՝ Մասնի լերան վրայ ելան. հոն զօրքէն հազար հոգի սպաննելէն վերջ՝ Ասուրնաձիրաբալ երկու հազար հոգի գերի բռնեց, եւ Արբակի քաղաքին, Իյայա եւ Սալանիբա ամրոցներուն տիրեց։ Արումացիք (կամ Արիմացիք) որոնց վիճակն Ծոփաց արեւմտակողմը կը գտնուէր, Սինաբու (կամ Կինաբու) եւ Տիդու ամրոցներուն տիրած, եւ Սաղմանասար Ա. է հոն հաստատուած Ասորեստանեայքն իրենց վիճակը գերի տարած էին։ Ասուրնաձիրաբալ տիրեց այն ամրոցներուն, եւ գերի տարուած Ասորեստանեայքն իրենց նախկին տեղերը նորէն հաստատեց։ Նաիրեայ արեւմտից հարաւակողմը տիրած տեղեաց շատերուն վրայ իւրոյ իսկ անձին փոխանորդ, կամ կողմնակալ եւ կամ ..—..ի կոչուած պաշտօնեայ մը կը կարգէր[1]։

---

1 Տարեգրութեանց այլափոխ ընթերց., տող 43–50։

Յամին 867 տարին՝ Ասուրնածիրաբալ իւր չորրորդ արշաւանը գործեց Նաիրեայ երկրաց վրայ։ Գրեթէ բովանդակ Աղձնիք եւ անոր հիւսիսակողմը Կիրխի երկիրն Ասորեստանեայց իշխանութեան դէմ ապստամբած էին։ Ասուրնածիրաբալ՝ նախ Աղձնեաց արեւելակողմն Ասսա վիճակին (Ագնուաց Ձոր), յետոյ Կիրխիայ Ումալիա եւ Խիրանու ամուր քաղաքաց տիրեց՝ ոչ առանց սաստիկ ընդդիմադրութիւն կրելու։ Անկէ դէպ ի հիւսիս յառաջացաւ, եւ Դիլլիա դարձեալ Ասորեստանեայ բանակները տեսաւ։ Ամադանի եւ Արքանիա լերանց մէջ եղած քաղաքներն՝ Զամբա վիճակին քաղաքներովն ի հուր մատնեցան։ Ասուրնածիրաբալ ամբողջ Կիրխուէն պատանդներ առնելով իջաւ յարեւմուտս հարաւոյ. Բիտ-Զամանի վիճակին Դամդամուսա ամրոցը յարձակմամբ առաւ, եւ երեք հազար հոգի անկէ գերի տարաւ։ Ամիդի[1] քաղաքն՝ որ Բիտ-Զամանի վիճակին արքայիկն Իլանիի գլխաւոր քաղաքն էր, զարհուրելի տեսարաններու թատրոն եղաւ։ Ասուրնածիրաբալ անկէ Նինուէ դառնալու ճամբուն վրայ՝ Լապտուրի արքայիկին ամրոցն զՈւդա յարձակմամբ առաւ, եւ անկէ եւս երեք հազար հոգի գերի տարաւ։ Այս վերջին արշաւանն քան զառաջինսն աւելի արիւնահեղ եւ անագորոյն եղաւ։

Արիւնռուշտ Ասորեստանեայն անկէ երկու տարի վերջը մեռնելով՝ անոր յաջորդեց իւր որդին Սաղմանասար Բ. (Ք. ա. 860—825)։ Ասոր նա-

[1] Ամիդ, արդի Տիարպէքիր քաղաքն։

Digitized by Google

խորդէն Նաիրեայ մէջ բնակող համազգի ցեղերուն կրած անհնարին վիշտերն անտարակոյս մեծ տպաւորութիւն ըրած էին այն ցեղերուն արքայիկներուն վրայ։ Ասկէ շարժեալ էր անշուշտ Ուրարտու վիճակին արքայիկն Արամիս (Ք. ա. իբր 860—843), որ իւր ազգայնոց թշուառութիւնն եւ հայրենական աշխարհին օտարի ոտից կոխան ըլլալը տեսնելով՝ ուզած է բովանդակ Նաիրեան ցեղերու իշխանաց գլուխ ըլլալ, զանոնք իւր իշխանութեանն ներքեւ առնուլ, յանչափս ցրուեալ զօրութիւններն ի մի գումարել, որպէս զի ազգային թէ քաղաքական եւ թէ բարոյական միութիւն մը կազմէ Ուրարտուայ իշխանաց վեհապետութեան ներքեւ։ Արամիսի եւ իւր յաջորդաց բովանդակ ձեռնարկութիւններն մեզի յայտնապէս կը ցուցընեն թէ այս երկու բան Ուրարտուայ թագաւորաց միակ նպատակներն եղած են։ Արամիս սկզբնաւորեց այս հսկայական գործը. իւր յաջորդներն յառաջ մղեցին զայն՝ թէպէտ ոչ կատարեալ եւ մշտնջենաւոր յաջողութեամբ։ Այս հոյակապ թագաւորին անուամբն՝ իւր յաջորդաց շարքը “Արամեան հարստութիւն„ կը կոչենք մենք. եւ է այս՝ առաջին ազգային հարստութիւն, միակ ճշմարիտ պատմական։ — Անտարակոյս Արամիս իւր նպատակներուն հասնելու համար գործոյ ձեռք զարկած էր, եւ իւր երկրորդ յաջորդն գործն առաջ կը տանէր՝ որ Սաղմանասար Բ. կամ անձամբ եւ կամ իւր բանակին սպարապետին միջոցաւ՝ վեց անգամ Ուրարտուայ վրայ արշաւեց։ Սաղմանա-

Digitized by Google

սար Բ. Նախ յամին 860, իւր գահակալութեան առաջին տարին՝ Նաիրեայ մէջ արեւելից հարաւէն մտնելով, Արիդի բերդաքաղաքին տիրեց։ Նաիրեայ արքայիկներէն ոմանք՝ Սաղմանասարայ արշաւանաց լուրն առնելով, փութացին իրենց հարկերն Արիդիի մէջ անոր հասցընել։ Երկիւղն էր որ անոնց այսպիսի ընթացք բռնել կու տար։ Խուբուսկիայ վիճակն Ասորեստանւոյն ընդդիմացած ըլլալով, այս վիճակին նոյն անուն գլխաւոր քաղաքն՝ ուրիշ հարիւր քաղաքներով ի հուր դատեցաւ։ Խուբուսկիայէն Սաղմանասար Բ. ուղղակի դէպ յարեւմուտս հիւսիսոյ՝ Արամիսի վիճակին վրայ արշաւելով, Սուգունիա բերդաքաղաքին տիրեց, եւ տասնուչորս քաղաք կրակի տալէն վերջ՝ իջաւ Բզնունեաց ծովուն եզերքը։ Մեծի հաւանութեան է թէ այս առաջին արշաւանի մէջ Ասորեստանեայն ոչ միայն Ուրարտացւոյն վրայ յաղթութիւն մը տարած չէ, այլ անկէ ծանր պարտութիւն մը կրած է։ Ասկէ ետքը՝ մինչդեռ Սաղմանասար Բ. Միջագետաց եւ Ասորւոց վրայ կ'արշաւէր պատերազմաւ, Արամիս իւր իշխանութիւնը դէպ յարեւելս հարաւոյ կը տարածէր ըստ կատարեալ հաւանականութեան[1]։ Այսպիսի պայման իրաց հաճոյ չէր կրնար ըլլալ

1 Իւր երկրորդ յաջորդը՝ զՇարիդուր Ա. իբր 828 տարին Բզնունեաց ծովուն արեւելակողմը Ցուսպաս քաղաքը փոխադրուած կը գտնենք, ուր պատմական արձանագրութիւն մը կանգնած է ասորեստանեան լեզուաւ։ Տես մեր Les Inscriptions cunéiformes urartiques, թիւ 1։ Որպէս զի այս թագաւորն յիշեալ տարին Ցուսպաս կարենար իջնալ, Ուրարտուայ վիճակն տակաւ մեծցած տարա-

Ասորեստանւոյն. արդարեւ կը տեսնենք թէ 857 տարին Սաղմանասար Բ. անձամբ երկրորդ անգամ Նաիրեայ երկրաց վրայ կ'արշաւէ: Կը մտնէ Աղձնեաց արեւմտակողմը Բիտ-Զամանի վիճակին մէջ, որուն գլխաւոր քաղաքն էր Ամիդի. ասկէ կը մտնէ յԻնզիտի (Հանձիթ) վիճակն, անոր կը տիրէ, քաղաքներ կ'աւերէ, կը քանդէ կամ կ'այրէ: Յետոյ Արածանի գետոյն վրայէն անցնելով՝ կ'արշաւէ դէպ ի յարեւելս Հիւսիսոյ: Սուխմի եւ Դախանի (ըստ ազգային արձանագրութեանց Դիա'ուխինի) վիճակներն նոյնպիսի աղէտից կը մատնուին: Երբ Ուրարտուայ գլխաւոր քաղաքն Արզասկուին կը մօտենար, Արամիս իւր զօրքովն Ադդուրի երկրին լերանց վրայ քաշուեցաւ, եւ իւր բանակն՝ որ 3400 զինուորէ կը բաղկանար, նոյն լերանց մէջ Սաղմանասարայ զօրքէն յաղթուեցաւ: Ասորեստանեայն հիւսիսէն դէպ ի Բզնունեաց ծովն իջնալուն՝ այլեւայլ քաղաքաց տիրեց, անոնցմէ մէկ մասն ալ աւերեց կամ այրեց: Զանզուինա քաղաքին արքայիկն Սաղմանասարայ հպատակութիւն ցուցընելով՝ երբ անոր պարգեւներ ընծայեց, սա անոր հաշտ աչքով նայեցաւ: Նոյն կերպով վարուեցաւ Կիրզանի[1] երկրին իշխանն Ասաւայ հետ. սակայն՝ որովհետեւ Խուբուսկիայ արքայիկն թշնամու-

---

ծուած պէտք էր որ ըլլար. եւ այս տարածումն Արամիսի ժամանակէն սկսած ըլլալու էր:

1 Կապուտան ծովուն հիւսիսոյ եզերաց վրայ վիճակ մը: Հեր եւ Զարաւանդ գաւառին անունն մասամբ այս երկրին անունէն առաջ եկած կ'երեւի:

Digitized by Google

թիւն ցուցըրցած էր, անոր արքայանիստ քաղաքին տիրեց, մեծաւ աւարաւ՝ անկէ երեք հազար հոգի Ասուր քաղաքը գերի տարաւ։ Հետեւեալ տարին՝ այս է 856ին, երբ Կապուտան ծովուն հարաւոյ արեւմտակողմը Մազամուա կամ Զամուա (Տամբեր գաւառ) վիճակին քանի մը քաղաքներուն վրայ արշաւեց, Մազամուայի զօրքն ու ժողովուրդն նաւերու վրայ ելլելով՝ ծովուն մէջ տեղը քաշուեցան։ Հոն անոնց սաստիկ պատերազմ մը տուաւ Սաղմանասար, որ կը պարծենայ ըսելով՝ թէ "ծովն անոնց արեամբն սարի պէս ներկեցի։"

Արամիս եւ իւր յաջորդն Լուտիպրիս[1] (Ք. ա. իբր 843—835) մեռած էին երբ 833 տարին Սաղմանասար Բ. իւր բանակին սպարապետն ասորեստանեայ բանակաւ մը խրկեց Ուրարտուի վրան, ուր կը թագաւորէր Շարիդուր Ա.[2] (Ք. ա. իբր 835—820)։ Թէպէտ Սաղմանասար Բ. հակիրճ ոճով մը կ'ըսէ "անոր յաղթեցի", սա-

[1] Ուրարտեան լեզուաւ կը նշանակէ "Լծոյ-արհամարհող, — Հերոսդ"։

[2] Այս թագաւորն Սաղմանասարայ Բ. Նիմրուտայ կոթողին Տարեգրութեանց մէջ (տող 144) Շիդուրի կը կոչուի։ Շարիդուր Ա. իւր արձանագրութեան մէջ (տողք 1/1, 4/5, 5/6) զինքն Լուտիպրիսի որդի կը կոչէ։ Միւս կողմանէ՝ մտադրութեան արժանի է սա կէտն՝ թէ Շարիդուր Ա. (= Շիդուրի) Արածանի գետոյն հիւսիսակողմն էր երբ Սաղմանասարայ սպարապետն անոր վրայ քալեց (տես յիշեալ Տարեգր. տողք 142—144)։ Յայտ է ապա թէ Շարիդուր Ա. Արամիսի եւ Լուտիպրեայ յաջորդն էր, եւ 833 տարին Կարնոյ գաւառին մէջ կը բնակէր։ — Ուրարտեան լեզուաւ Շարիդուր անունն "Սատղկատուր" կը նշանակէ։



Digitized by Google

կայն այնպիսի ոճով խոկ կը յայտնէ թէ Ուրարտացին "իւր զօրաց մեծաթիւ բազմութեամբն" յաղթած է Ասորեստանեայ սպարապետին: Սաղմանասար 831 տարին Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն ձախակողմն՝ ի Կիրխի բանակ մը խաւրեց, որ Կիրխիայ "քաղաքները տապալեց, աւերեց, հրով այրեց, մրրկեալ կոհակաց նման անոնց երկրին վրայէն անցաւ": Այսպիսի վայրենական ընթացից պատճառն անտարակոյս ըծընկէցութեան գործ մըն էր: 830 տարին ուրիշ արշաւանաւ մը Սաղմանասարայ Բ. սպարապետն մտաւ իւր բանակաւն ի Խուբուսկիա եւ ի Մադախիրու, որոնց առաջինն Վասպուրականի Գուկան՝ եւ երկրորդն Մահկերտան գաւառներն էին: Երբ անկէ Մաննային[1] վրայ արշաւեց, աստ Թագաւորն Ուդակի՝ Զիրտու կամ Իզիրտու[2] մայրաքաղաքը թողուց ու փախաւ: Ասորեստանեայն անկէ մեծաւ աւարաւ անցաւ Խարրունա[3], որուն արքայիկն Սուլուսունու գերի ինկաւ: Անկէ Կապուտան ծովուն հարաւակողմանքն ի Պարսուա իջնալով՝ տիրեց այլեւայլ քաղաքաց: Երբ սպարապետն իւր բըռնած գերիները Սաղմանասարին բերաւ, սա զՍուլուսունու իւր գահը դարձուց: — Ուրարտուի

1 Մաննա ըստ Ասորեստանեայց, եւ Մանաս ըստ մեր ազգային արձանագրութեանց՝ առաջին անգամ 830 տարին կը յիշուի: Ընդարձակ երկիր մըն էր այն, որ Երասխայ աջակողմն եւ անոր վերին կողմանքէն սկսելով՝ Մասիս լեառ, Կոգովիտ, Վարաժնունիք եւ Արտազ գաւառներն իւր մէջ կը բովանդակէր:

2 Սարթափ քաղաք Վարաժնունեաց:

3 Բզնունեաց ծովուն արեւմտից հիւսիսոյ ծովեզերաց վրայ Խոռխոռունիք գաւառն:

Digitized by Google

թագաւորն Շարիդուր Ա. շատ մ՚որքայիկներ իւր գերիշխանութեան տակ առած ըլլալով, զանոնք իրեն հարկատու ըրած էր։ Այս դրութիւնն՝ Նաիրեայ երկրաց մէջ Ասորեստանի թագաւորաց իշխանութեան եւ ազդեցութեան համար թէ վնասակար էր եւ թէ սպառնալեօք լի ապագայ մը կը յայտնէր։ Իրաց այս վիճակին դարման մ՚ընելու նպատակաւ՝ Սաղմանասար Բ. այս երրորդ անգամ ըլլալով՝ 829 տարին իւր սպարապետը բանակաւ մը Նաիրեան երկրաց վրայ խրկեց։ Մտաւ նա խաղաղութեամբ ի Խուբուշկիա, եւ անկէ Մուձաձիրայ վիճակն[1] անցնելով՝ տիրեց քառասունուվեց քաղաքաց, որոնց մէկ մասն անտարակոյս աւաններ եւ գիւղեր էին։ Անկէ անմիջապէս Ուրարտուայ վրայ քալեց, քաղաքներ աւերելով եւ ի հուր դատելով։ Յետոյ ի Պարսուա իջնալով՝ իւր անցած տեղեաց մէկ քանիին տիրեց, եւ բռնած գերիներով Ասորեստան դարձաւ։ Սաղմանասարայ Բ. Արձանագրութիւնքն՝ իւր գործել տուած այս արշաւանքին առթիւ զՇարիդուր Ա. չեն յիշեր, եւ ոչ իսկ կ՚աւանդեն թէ ասորեստանեայ սպարապետն Ուրարտացւոյն հետ ճակատ մը տուած է։ Յայտ է ապա թէ ասորեստանեայց բանակն աւերմանէ եւ հրկիզութենէ զատ Ուրարտուի մէջ նշանաւոր գործ մ՚ըրած չէր։ Ստոյգ եւս կ՚երեւի որ Շարիդուր Ա. այս երկրորդ անգամ Ասորեստանեայց վրայ յաղթութիւն կատարած է։ Այսու օրինա-

1 Մոկաց աշխարհ։

կաւ Շարիդուր կարող եղած է իջնալ դէպ ի յարեւելս Հարաւոյ եւ իւր արքայանիստ քաղաքն ընել զՏուսպաս, որուն պատերուն մէջ երբեք Ասորեստանի զօրքն չկարողացաւ մտնել։ Այս փոխադրութիւնը կրնանք 828 տարին եղած դնել։ Շարիդուր Ա. զինքն Նաիրի երկրին թագաւոր, “արքայից արքայ„ կը կոչէ, եւ կը յաւելու. ‘‘ամէն թագաւորներէն հարկ առի,,։ Ասացուած մըն է այս, որ եթէ ոչ ըստ ամենայնի՝ գոնէ մեծաւ մասամբ ճշմարիտ է։ Երբ նոյն թագաւորն կ'ըսէ, “ես աստէն բերդ շինեցի„, կ'աւանդէ մեզի որ Վանայ հուշակաւոր քարաբերդն ինքն շինած է։ Շարիդուր Ա. Ք. ա. իբր 835—820 թագաւորած է։ — Այս թագաւորն, Հիւսիսոյ արեւմտակողմէն Հարաւոյ արեւելակողմն իջնալով, ինքն զինքն Ուրարտուայ թագաւոր կոչելէ դադրած պէտք էր որ ըլլար։ Եւ սակայն Ուրարտու անունն բնիկ տեղական եւ ազգային էր։ Այս դադարման պատճառքն՝ անտարակոյս տեղեաց եւ հանգամանաց փոփոխութիւնն եւ տիրող սովորութիւնն էին։ Անոր յաջորդներն՝ որչափ եւ իրենց իշխանութեան երկիրներն կ'ընդարձակուէին, իրենց բնակած փոքր վիճակին անունէն՝ Բիանայի կամ Բիաինայի թագաւոր զիրենք կը կոչէին։ Սակայն Ասորեստանեայք զանոնք միշտ Ուրարտուայ թագաւոր ճանչցան եւ այնպէս կոչեցին։ — Ազգային քաղաքական միաւորութեան նշանաւոր գործն երեսուն ու մէկ (860—829) տարի Ասորեստանեայց կողմանէ ընդդիմութիւն գտնելէն, եւ Ու-

Digitized by Google

րարտուայ փոքր վիճակն 860, 857, 833 եւ 829 տարիներու մէջ չորս անգամ արշաւան կրելէն վերջ, հուսկ ուրեմն յաջողել սկսաւ ապահովութեամբ Շարիդուրայ Ա. քաջութեամբն ու քաղաքական ճարտարմտութեամբն։ Հայակապ թագաւորս ոչ միայն այս նկատմամբ, այլ եւ սեպագիր արձանագրութեանց յօրինուածութիւնն Ասորեստանէն փոխ առնելով՝ իւր հայրենաց եւ յետնոց անմահական անուն թողուց։ Ինքն առաջինն եղաւ որ պատմական սեպագիր արձանագրութիւն մը մեզի թողուց։ Ինչպէս գրութիւնն, նոյնպէս եւ լեզուն ասորեստանեան էր։ Անոր օրինակին հետեւեցան իւր յաջորդներէն շատերն, որոնք իրենց արձանագրութեանց լեզուին համար յամենայն դէպս՝ միով պակաս, հայրենականը գործածեցին։ Այսու օրինակաւ՝ կարող ենք այսօր Հայաստանի հնագոյն ժամանակաց վեհապետներուն գործերը գրեթէ լիովին ճանչնալ։ Աւելցընենք աստէն ըսել թէ բուն արձանագրութիւն մը յօրինել եւ կանգնել տալու իրաւունքն Ուրարտուայ վեհապետներուն վերապահեալ էր։

Շարիդուրայ Ա. յաջորդեց իւր որդին Իսպուինիս[1] (Ք. ա. իբր 820—800։) Ասոր ժամանակ՝ Նաիրեայ ամէն կողմն Ասորեստանի դէմ եղած ատելութիւնն նորէն բորբոքեցաւ եւ ապըստամբութիւնք ի վեր երեւեցան. յորմէ Ասորեստանի թագաւորն Շամսիրամման Գ. (Ք. ա. 825—812) ստիպուեցաւ երեք արշաւան գոր-

[1] Այս անունն "յարձակող" կը նշանակէ։

ծել ի Նաիրի։ Առաջնոյն համար այս Թագաւորն կ'ըսէ. "զՆա՛րի՝ իւր բովանդակ տարածութեամբն ցանցի մը պէս գետինը զարկի"։ Երկրորդ արշաւանը յանձնեց իւր զօրավարներէն միոյն, այն որ Ուսպինայի[1] (Իսպուինեայ) երկրէն երկու հարիւր քաղաքի տիրեց, եւ ճակատամարտի մը մէջ անոր յաղթեց։ Նաիրեայ երկու արքայիկներ եւս այս արշաւանէն վնասուեցան։ Երրորդ արշաւանին՝ Շամսիռամմանն Գ. անձամբ Նաիրեայ վրայ քալելով՝ արեւելեան մասին գրեթէ բոլոր վիճակներէն հարկ առաւ։ Ասոնց մէջ էին Պարսուա, Խուբուսկիա եւ մեծ վիճակն Մաննա (Մանաս)։ Միսացիք՝ որոնք ըստ երեւութին Մասեաց ստորոտը բնակող ժողովուրդն էին, մեծ տառապանք կրեցին. հինգ հարիւր քաղաք, աւան եւ գիւղ աւերեցան, քանդեցան, ի հուր դատեցան։ Անկէ Գիզիլբունդա[2] անցնելով՝ Ուրաս[2] բերդաքաղաքին տիրեց։ Այս վիճակին արքայիկն էր Պիրիսատի, որուն զօրքէն վեց հազար հոգի պատերազմին մէջ ինկան, ինքն իսկ հազար երկու հարիւր զօրքով գերի բռնուեցաւ, եւ երկիրն աւարի մատնուեցաւ։ Նոյն ժամանակներն Նաիրեայ բազմաթիւ արքայիկներ իրենց հարկն Ասորեստանւոյն վճարել փութացին։ — Ասորեստանեայց Անուանակիր տարինե-

---

1 Ուսպինա՝ ըստ ասորեստ. արձանագրութեան։

2 Կարի հաւանականօրէն՝ Գողթան գաւառն։ Գիզիլբունդա մեծ վիճակ մըն էր, որուն մէջն էր Ուրացւոց երկիրն, որ Ուրաս բերդաքաղաքին շրջակայքէն կը բաղկանար։ Այս Ուրացւոց երկիրը մեր մատենագրաց Արեւիք գաւառին հետ նոյն կը համարիմ։

Digitized by Google

բուն ցանկին համեմատ՝ Շամսիռամմանի Գ. ի յաջորդն Ադադնիրարի Գ. (Ք. Ա. 812—783) 808 եւ 807 տարիներու մէջ արշաւանք գործած է ի Մաննա. սակայն այս արշաւանաց ելքն մեզի անծանօթ կը մնան։ — Թէպէտ Իսպուինիս վերոյիշեալ մանր թագաւորաց պէս Շամսիռամմանին հարկ տուած չէ, եւ անոր դէմ անկախ վիճակի մը մէջ զինքն կը տեսնենք, սակայն իւր թագաւորութեան Ասորեստանեայց արշաւանէն կրած ծանր վնասուց դարման մ'ընելու նպատակաւ՝ ինչպէս կ'երեւի՝ իւր ծերութեան ժամանակ հարկ համարեցաւ զիւր որդին զՄինուաս[1] Ա. իրեն գահակից ընել (Ք. Ա. իբր 805—800)։ Արքայորդին իւր հօրը վստահութիւնը չափէն աւելի արդարացուց. իրմով Արամիսի մեծ գաղափարն երեւելապէս յարդիւնս ածաւ։ Մինուաս՝ Մուծածիր եւ Գուրուխու[2] (Կորդուք) երկիրներուն իւր հօրն անուամբը տիրելով, անկէ յառաջացեալ դէպ ի Կապուտան ծովուն արեւմտեան եզերքը, հոն Արեւ-դից Նուիրեալ Արդինեայ[3] քաղաքին եւ Ուսինեայ[4] եւ ասոնց շրջակայից եւս տիրեց, եւ երկու կապոյտ սեանց վրայ ուրարտեան լեզուաւ պատմական արձանագրութիւն մը քանդակել տալով, զմին Գուրուխուայ Ինուասիս վիճակին մէջ[5] եւ միւսն Ուսինիս քաղաքին մօ-

1 Այս անուանն կը նշանակէ "լուսին"։

2 Գուրուխինի յոգ. սեռ. կը թարգմանի "գայլորդեքն"։

3 Արդի Արտիշա աւանն։

4 Արդի Ուշնի քաղաքն։

5 Կորդուաց հարաւոյ արեւելակողմը Սիտեք կամ Սի-

տերը կանգնեց[1]։ Իսպուինեայ կենդանութեան ատեն՝ Մինուաս Ա. Գեղամայ ծովուն արեւմտակողմանքն եւս արշաւեց, ուրանոր Ուտարուսայ որդւոյն ամրոցներուն, Ետիուսայ որդւոյն եւ Լուսասեանց եւ Կատարզասեանց վիճակներուն տիրեց, եւ աւարաւ Տուսպաս դարձաւ։ Այսու եղանակաւ Ուրարտուայ թագաւորութեան սահմաններն դէպ յարեւելս հիւսիսոյ եւս ընդարձակեցան։ Իսպուինիս իւր կրօնասիրութեամբն այլեւայլ մեհեաններ կանգնեց։ Նշանաւոր է Ցաշտից կարգաւորութիւնն[2] զոր իբր քրմապետք՝ ինքն եւ իւր գահակիցն Մինուաս Ա. յօրինեցին, եւ որով ուրարտեան ամենադից կաճառը մեծաւ մասամբ մեզ յայտնեցաւ։ Իսպուինիս կրնար այլ եւս յուսով մեռնիլ թէ Արամեան հարստութիւնն ունի Մինուասով իւր ամենահզօր պաշտպանը։

Մինուաս Ա. իւր միակ առանձինն թագաւորութեան ժամանակ (Ք. ա. իբր 800—780) գործած երեւելի գործերովն իւր նախորդներէն եւ յաջորդներէն շքեղագոյն հանդիսացաւ։ Նախ՝ որպէս հաւանական թուի, Բիանայի

---

տաքա կամ Սիտէքան աւանին մօտ։ Այս արձանագրութիւնն մեր հաւաքածոյին մէջ ունի Թիւ 2։ Կապոյտ սեանս մէկ երեսն ասորեստանեայ լեզուաւ արձանագրութիւն մ'ալ կայ (մեր 45դ թիւ) որ լոկ կրօնական-ընծայական նիւթերու վրայ կը խօսի։ Թուի թէ՝ այս վերջին արձանագրութիւնն՝ նորոգ տիրեալ երկրաց Իսպուինեայ այցելութեան առթիւ յետոյ քանդակուած է։

1 Մեր հաւաքածոյին մէջ Թիւ 2*։

2 Տես մեր հաւաքածոյին մէջ՝ արձանագր. Թիւք 42—42*։

Digitized by Google

արեւելակողմն Երինուիս (Երուանդունիք) վիճակը Նուաճելէն վերջ, Բզնունեաց ծովուն արեւմտակողմն եւս արշաւան մը գործեց եւ բազմաթիւ քաղաքաց տիրեց[1]: Ասկէ միջին Արածանւոյն աջակողմը՝ Գիաուսայ-որդւոյն (Գիա՛ուխինի) մանր Հարստութեան վիճակին վրայ քալեց: Այս գերդաստանն Նաիրեայ Հնագոյններէն եւ քաջագոյններէն էր. անոր Ուղուբուրսիս Թագաւորին. Թէ Սասիլուս գլխաւոր քաղաքին եւ Թէ վիճակին տիրեց. եւ որպէս զի պարտելոյն Հպատակութեան վրայ ապահով ըլլայ, անկէ պատանդներ առաւ: Ուրիշ երկու մանր Թագաւորաց վիճակներն ալ իւր պետութեան երկրաց միացուց: Երիդուասայ-որդւոյն (Երիդուախի) վիճակն եւ անոր արքայանիստ քաղաքն Լուխիունիս՝ նոյնպէս Մինուայ Ա. զինուց առջեւ խոնարհեցան: Ասոնք վերին Երասխայ ձախակողմն եւ Քասաղ գետոյն վրայ ըլլալու էին: Թուի թէ Ադադնիրարի Ա. Ասորեստանեայց Թագաւորն Մանասայ տիրած էր. ուստի իւր ազգայնոց երկիրն օտարին լուծէն ազատելու Նպատակաւ՝ ամարան մը սկիզբը Մինուասայ բանակներն մտան ի Մանաս: Ուրարտացին այն երկիրն եւ անոր զօրքն իւր իսկ անձին սեպհականեց: Նոյն տարին՝ աշխարհակալ Թագաւորն Նաիրեայ արեւմտակողմանքն արշաւելով, կ՛անցնի Եփրատ գետը, եւ Մոսոքի[2] մէջ Սադ՛ալխի-որդւոյն վիճակին եւ

1 Տես մեր Հաւաքածոյից մէջ Թիւ. 9դ արձանագիրը:

2 Այս երկիրն կրտսեր ժամանակաց մէջ Փոքր Հայք կոչուեցաւ:

Digitized by Google

ասոր սահմանակից քաղաքի մը կը տիրէ։ Ալզինի կամ Ալզիացւոց[1] վիճակին եւս տիրելով՝ երկու հազարէն աւելի մարդիկ այն կողմերէն գերի Բիանա տարաւ։ Ալզինի եւ ասոր հարաւակողմանքն ու հարաւոյ արեւելակողմանքն Ասորեստանեայց իշխանութեան տակ էին։ Մինուաս Ա. դէպ յարեւմուտս կրկին արշաւանաւ մը Խուզանա վիճակին եւ անոր համանուն գլխաւոր քաղաքին[2], Ձուպաս երկրին[3] եւ Պուտերիա[4] քաղաքին տիրեց։ Անցաւ Եփրատ գետը, եւ Մելիտա[5] քաղաքին տիրելով, անոր Հուլիխաուալիս անուն Թագաւորը բռնեց եւ Բիանա փոխադրեց։ — Ասորեստանեայց Անուանակիր տարիներուցանկին համեմատ՝ Ադադնիրարի Գ. 802, 795, 792 եւ 785 տարիներու մէջ՝ մեծ Զաւ (Գայլ) գետոյն վերնակողմը Խուբուսկիա վիճակին վրայ անձամբ քալած է։ Նոյն Թագաւորին Քաղանայ Վիմատախտակի արձանագրութիւնն (տող 7—9) կ'աւանդէ որ Ադադնիրարի Գ. Պարսուա, Անդիու (Անձեւացիք), Աբդադանա, Ալլաբրիա (Առբերանիք), Մաննա եւ Գիզիլբունդա վիճակաց եւ Նա'րիայ՝ իւր բովանդակ տարածութեամբը տիրեց։ Սակայն մարթ է ի միտ առնուլ

---

1 Ըստ ասորեստ. արձանագրութեանց՝ Ալզի։

2 Մեր մատենագրաց Խոզեայ գաւառն եւ Խոզան քաղաքն։

3 Ըստ ասորեստ. արձանագրութեանց՝ Սուբարի, Սուբարտի։

4 Հաւանականօրէն՝ արդի Բալու քաղաքն։

5 Մելիտինէ, որ արդի Մալաթիա քաղաքէն քիչ մը հեռու՝ անոր արեւելակողմն էր։

Digitized by Google

թէ Մինուաս Ա. Ասորեստանւոյն դէմ յաջողութեամբ մղած է, եւ Ադադնիրարեայ արշաւանքն ծանր ու տեւական հետեւութիւն մը չէ ունեցած գոնեա Բիանա վիճակին համար: — Մինուաս Ա. քաղաքային եւ կրօնական բազմաթիւ շինութիւններ եւս ըրած է[1]: Ցարդ մեզի ծանօթ արձանագրութեանց մէջ՝ համեմատութեամբ մեծագոյն մասն իրմէ է:

Հնագոյն Հայաստանի վեհապետաց մէջ նշանաւորագոյնին մահուանէ ետքը՝ անոր յաջորդեց իր որդին Արգիշտիս[2] Ա. (Ք. ա. իբր 780—755): Ասոր թագաւորութեան սկիզբները՝ հպատակ արքայիկներէն շատերն ապըստամբեցան, սակայն Արգիշտիս Ա. շուտով անոնց ցուցուց որ իր հօրմէն վեհապետութեան հետ անոր քաջութիւնն եւս ժառանգած էր:[3] Կանխաւ իր հօրմէն նուաճեալ Դիաուսայ-որդւոց վիճակին Ուդուբուրսիս թագաւորին եւ ուրիշ երկու մանր թագաւորաց յաղթեց: Սերիազիս վիճակը[4] նուաճեց եւ անոր քաղաքներն այրեց:

---

1 Տես մեր Հաւաքածոյին մէջ 10—18 եւ 58—65 թիւ արձանագրութիւնները:

2 Կը նշանակէ "սպիտակ, սպիտակափայլ":

3 Չենք կրնար ստուգութեամբ գիտնալ թէ Արգիշտիս Ա. քանի՛ անգամ մարտի արշաւան գործած է. Սակայն եթէ իր Ղ.քեղ Արձանագրութեան Ա, 16. Բ, 24. Գ, 19. Դ, 13, 41, 66. Ե, 11. Է, 10, 32, 69 տողերն նկատի առնուին՝ որոնց մէջ նուաճած երկիրներն եւն մէկ "տարուան մէջ ստացայ„ կ'ըսէ, պէտք է ըսել թէ տասն արշաւան գործած է տասն այլեւայլ տարուան մէջ:

4 Հաւանականօրէն՝ Տուրուբերանի մէջ Աղիովիտ գաւառին Զարիշատ քաղաքին վիճակն:

Digitized by Google

Կուր գետոյն վերնագոյն կողմանքն եւս արշաւելով՝ Զաբախաստայց վիճակը (Ջաւախք գաւառ) եւ ուրիշ տեղերը նուաճեց. Իջաւ Երասխայ ստորին կողմանքը, եւ Բաբանիս վիճակը (Սիւնեաց Հաբանդ) հնազանդեցոյց։ Գեղամայ ծովուն արեւմտակողմը՝ Ետիունիս եւ Երիասայ-որդւոց երկրաց վրայ. ասկէ եւ դէպ յարեւմուտս՝ արեւմտեան Եփրատայ եւ Երասխայ աղբերականց կողմանքն Աբուսացւոց երկրին վրայ քալելով, զանոնք նուաճեց, եւ վերջնոյս արքայանիստ Ուրիէուս քաղաքն առաւ։ Միջին Երասխայ ձախակողմը գտնուող այլեւայլ վիճակներ՝ Արգիստեայ Ա. հպատակեցան։ Ասոնց մէջ երեւելին էր Ուրացւոց վիճակն[1] (Արեւիք գաւառ)։ — Արգիստիս Ա. Եփրատայ աղեղան արեւմտակողմը գտնուող օտարազգի ժողովրդոց վրայ՝ իւր հօրը գործած իշխանութիւնը չկորսնցընելու համար, իւր յաղթող զէնքը Խատացւոց մէկ Թագաւորին Խիտերուադայի վրայ դարձուց։ Այն կողմանքը Նիրիբա վիճակն եւ ուրիշ վիճակներ ու քաղաքներ նուաճեց. Մելիտաս քաղաքը մտնելով՝ անոր մէջ գտնուած աղջկունքը Տուալասու-որդւոյն երկրին պատանեաց հետ Բիանա գաղթեցուց։ Ասկէ դէպ յարեւմուտս յառաջ խաղալով, Մելիաս[2] գե-

1 Այս վիճակն ունէր ամուր քաղաք մը՝ Ուրաս, որուն անունէն վիճակն կոչուած էր։ Այս քաղաքն Շամսիռամման Գ. (Ք. ա. 825–812) Ասորեստանեայց Թագաւորին Հարթ-կոթողին մէջ (սիւն Գ. 10) յիշուած է։

2 Մելաս գետ, արդի Թօխմա-Սու։

տոյն երկու եզերաց վրայ գտնուած վիճակաց ու քաղաքաց տիրեց: Կապպադովկիոյ արեւմտեան սահմանաց վրայ եղած Մարմուանիս (Մերիմենէ) եւ Քա[ման]անիս (Քամանենէ) վիճակներն[1] եւս ինկան իւր իշխանութեան ներքեւ: Այս կողմերէն 22,274 արք եւ կանայք եւ տղայք գերի տարուեցան ի Բիանա, եւ բազմաթիւ ձիեր, եզինք եւ ոչխարք յաղթողին ձեռքն ինկան: — Գեղամայ ծովուն մօտաւոր քանի մը վիճակներ կրկին անգամ կը խլրտէին: Արգիստիս իւր յաղթող բանակաւն Երասխն անցաւ, զարկաւ Ետիուսեանց երկրին Թագաւորները. Հուբուրդա (Խոսրովակերտ) վիճակը նուաճեց եւ Ուխսուսինիս վիճակը ոչնչացուց. Խախիացւոց վիճակին[2] քաղաքներն այրեց, եւ խռովարարներն ի գետս եւ ի հուր մատնեց: — Ուրարտացւոյն զօրութիւնն իւր ծագը հասած էր. որոշեց ապա Արգիստիս Ա. իւր ազգային երկիրներէն վռնտել Ասորեստանցիները, որոնք Ադադնիրարեայ Ա. ժամանակէն հոն հաստատեալ էին: “Գնդով ոտանաւոր զօրաց չուեցի„ կ’ըսէ արի Թագաւորն. եւ նախ Վասպուրականի հարաւակողմն արշաւելով, Կուլասիս (Կուղանովիտ), Բաբանիս (Պասպարունիք) եւ Բուստաւս (Բուժունիք) երկիրներն առաւ: Այս կողմերէն դէպ ի Կապուտան ծովն յառաջ խաղալով, նոյն ծովուն արեւմտից հիւսիսակողմը՝ Բարուատա (Ջարեհաւան)

---

1 Տես Պտղոմեայ աշխարհագրութիւն՝ Ե. 6, 12.

2 Թուի թէ այս վիճակին անունն Ս. տի նահանգին Խաղխաղ քաղաքէն այնպէս կոչուած է:

եւ Հարաւոյ արեւելակողմը Բարմուա վիճակներուն տիրեց։ Թուի թէ Արգիստիս Ա. քանի մ'անգամ Ասորեստանեայց հետ պատերազմած է։ Զանոնք ուրարտեան երկիրներէն արտաքսել չշատանալով, բուն Ասորեստանի շինից վրայ արշաւեց Արգիստիս, եւ զանոնք ազգային մէկ երկրին միացուց։ Արգիստեայ ժամանակակից էր Ասորեստանի թագաւորն Սաղմանասար Գ. (Ք. ա. 783—771), որուն համար Անուանակիր տարիներու ցանկն կ'աւանդէ որ 781, 780, 779, 778, 776 եւ 774 տարիներու մէջ "յերկիրն Ուրարտու" արշաւանք գործած է։ Անտարակոյս՝ Սաղմանասար Գ. Արգիստեայ աշխարհակալութիւններն արգիլելու նպատակաւ այլեւայլ տարիներու մէջ Ուրարտուայ վրայ քալած է, սակայն յանօգուտս։ Նոյն թագաւորն արդէն 782 եւ 777 տարիները, եւ անոր յաջորդն Ասորդան Գ. (Ք. ա. 771—753) 769 տարին Իդու'[1] երկրին վրայ արշաւան գործած են։ Այսպիսի լոկ յիշատակութիւններէն իրաւամբ գուշակել մարթ է՝ որ Արգիստիս Ա. Ասորեստանեայց իւր ազգային երկրաց մէջ ունեցած զօրութիւնը խորտակած է։ — Յաղթող թագաւորն ստիպուեցաւ իւր զէնքերը նոյն իսկ իւր համազգի մանր թագաւորաց վրայ գործածել։ Արխաուս[2] երկրին գլխաւոր քաղաքովն՝ ուրիշ վաթսուն քաղաքաց, եւ Իյանիս[3] վիճա-

1 Ըստ երեւութին՝ այս երկիրն Կորդուաց Հարաւակողմը կը գտնուէր։

2 Հաւանականօրէն՝ Մոկաց Արգաստովիտ գաւառն։

3 Վասպուրականի Հարաւակողմն Աղաւիս գաւառն։

Digitized by Google

կին եւս տիրելով, Մանաս ընդարձակ երկրին վիճակներն եւս նուաճեց։ Իւր հայրն Մինուաս Ա. կանխաւ Մանասայ թագաւորութեան տիրած, թէ երկիրն եւ թէ զօրքն իւր անձին սեպհականած էր. սակայն Մանացւոց թագաւորութիւնն զօրաւորագոյն էր քան զայլ մանր իշխանութիւնս, եւ այս երկրին արքայիկներն կարծես միշտ աւելի յԱսորեստանեայս կը միտէին՝ քան թէ յՈւրարտացին։ Նոյն ժամանակներն՝ Մանասայ վրայ կը թագաւորէր Ազա Ա.։ Արգիստիս՝ կապուտան ծովուն եզերքն Ուրմիսացւոց վիճակին եւ ուրիշ վիճակաց եւ քաղաքաց վրայ իւր իշխանութիւնը հաստատելով՝ մեծաւ աւարաւ ետ դարձաւ։ Ցարիունիս (Ցարօն) վիճակն, Տուարացւոց[1] երկրին իշխանքն եւ Գուրքու[2] երկիրն եւս անոր յաղթող զինուց առջեւ խոնարհեցան։ Թագաւորն այս երեք վիճակներէն առած գերիներուն եւ ռազմամթերից վեցերորդ մասը Խալդիսի՝ բարձրագոյն դից, ընծայեց։ Մանացւոց թագաւորն կրկին անգամ ապստամբութեան դրօշը բացած ըլլալով, Արգիստիս Ա. քալեց անոր վրայ. անոր Սիմերիխադիրիս մէկ արքայանիստ քաղաքն առաւ։ Անկէ Երասխն անցնելով՝ Գուլուտայորդւոյն-ցեղին երկիրը (Գողթն գաւառ) եւ

---

1 Հաւանականօրէն՝ արեւելեան Եփրատայ վերին կողմանց աջակողմը՝ Տուարածատափ գաւառն։

2 Ըստ ասորեստ. արձանագրութեանց Կիրխու, Կուրխի կամ Կիրխի, որ Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն եզերքէն կը տարածուէր դէպ յարեւելս եւ ի հիւսիս արեւելից։

Digitized by Google

Երիասայ-որդւոյն վիճակը[1] հնազանդեցոյց, Ետիուսեանց երկրին այլեւայլ կողմանքն եւ Արդինիս (Այրարատայ Արդեանք) քաղաքը նուաճեց: Գեղամայ ծովակին հիւսիսոյ արեւմտակողմանքն եւս տեսան Բիանացւոյն անպարտելի բանակները. ուրանօր Արգիստիս Ա. Իրդանիունիս (Արտահան) քաղաքին եւ Իսքիգուլուս վիճակին տիրեց: Աշխարհակալ Թագաւորս տիրեց նաեւ Իբիրանիս[2] երկրին, այս է Վրաց աշխարհին: Ախուրեան գետոյն կողմանքը գըտնուող քանի մը վիճակներն եւս նուաճեց: — Այս՝ յաղթող արքայն Արգիստիս Ա. ոչ միայն իւր հօրմէ ժառանգած երկիրները պահեց կամ նորէն ստացաւ զինուք, այլ անոնց վրայ Փոքր Ասիոյ եւ կովկասային կողմերէն երկիրներ եւս աւելցուց: Գրեթէ ամէն արշաւանէն՝ բազմաթիւ արս, կանայս եւ տղայս, ձիեր, եզեր, ոչխարներ եւ ուղտեր Բիանա կը փոխադրէր: Այսու օրինակաւ՝ մինչդեռ զԲիանա մէկ կողմանէ պաճարաւ կը հարստանացընէր, միւս կողմանէ պատերազմներով նուազեալ Բիանայի զինուորական ժողովրդեան պարապքը կը լեցընէր:

Շարիդուրիս Բ. (Ք. ա. իբր 755—730) իւր հօրը յաջորդելով՝ նոյն դժուարութիւնները կրեց, զորս իւր հօրը թագաւորութեան սկիզբները՝ Ուրարտուայ համացեղ եւ հպատակ մանր արքայիկներն անոր դէմ յարուցեր էին: Ուրարտուայ գրեթէ բովանդակ արեւելեան

1 Հաւանականօրէն Երեւան քաղաքին վիճակն:

2 Կը նշանակէ "վերին, վերնակողման":

մասն, եւ արեւմտեան ծայրի երկիրներն եւ օտարազգի իշխանք Արգիշտեայ Ա. մահուանէ վերջ ապստամբեցան։ Մանաս եւ Վասպուրականի մէջ Բաբիլու (Պալունիք) երկիրներն, Կապուտան ծովուն արեւմտակողմը՝ Ուրմիասցիք եւ Բարուատացիք նշկահեցին զՈւրարտացին։ Շարիդուրիս Բ. քալեց անոնց վրայ, յաղթեց անոնց, վաթսուն օրուան մէջ քսանուիրեք քաղաք գրաւեց, շատ քաղաք եւս այրեց եւ այն երկիրներն իւր անձին սեպհականեց։ Ի դարձին ի Բիանա՝ պաճարաց մեծ աւարաւ հանդերձ՝ 8000 ազնուատոհմ անձինք եւ կանանց ու տղայոց մեծ բազմութիւն մ'իւր հետը բերաւ։ Յետոյ անցաւ Երասխ գետը, եւ Գեղամայ ծովակին արեւմտակողմը՝ Էտիուսեանց, Աքիուսեայց եւ Էտիանիս երկիրները նուաճեց։ Աբիանիս անուն արքայիկ մը՝ իւր զօրքովն ու ցեղովը նուաճեցաւ։ Նոյն բախտն ունեցան Իրկուաինիս արքայիկն, իւր բանակն ու ցեղն. եւ Շարիդուրիս՝ Իրկուաինեայ արքայանիստ Իրուիանիս[1] քաղաքին տիրեց։ Նոյնն պատահեցաւ Ուեձնիդաս արքայիկին, որուն Իրդուանիս արքայական քաղաքն առաւ։ Պուինիս (Դուին) քաղաքին արքայիկն հպատակեցաւ Շարիդուրեայ Բ., որ եզանց ու ոչխարաց աւարօք՝ 4000 ազնուականս եւ ռամկէն բազմաթիւ արս ու կանայս եւ տղայս այս կողմերէն ի Բիանա փոխադրեց։ Ասկէ Կուր գետոյն ստորնագոյն կողմանքն արշաւելով, Արքուքիս ար-

---

1 Հաւանականօրէն՝ Երեւան քաղաքն.



Digitized by Google

քայիկին երկիրը (Գարգարացւոց գաւառը) նուաճեց, իսկ Ուրտասու-որդւոյն վիճակը (Վարդանակերտ գաւառն) յատակեց: Նոյն գետոյն միջին կողմը՝ Լուրիսի-որդւոյն[1] Չինալիթիս արքայիկին քաղաքը՝ զՏուլխունիս, եւ անոր ցեղը նուաճեց: Շարիդուրիս Բ. արեւելեան կողմանց խռովութիւնները խաղաղացընելէն վերջ՝ իւր զէնքերն Ուրարտուայ արեւմտակողմերը դարձուց. եւ Արածանւոյ ստորնագոյն կողմանքը Տումիսկիս (Չմշկածագք) քաղաքին տիրելով, երկրին պատանիները կախաղան հանեց: Դարանաղեաց 'Անի քաղաքն եւ Եկեղեաց վիճակին Արուսիս (Երզա) եւ ուրիշ քաղաքներ խոնարհեցան Բիանացւոյն առջեւ: Շարիդուրիս Բ. անցաւ բուն Ուրարտուայ սահմանները, եւ Մուսաս երկրին եւ Ջապսաս քաղաքին վիճակին տիրեց: Քաղաքաց մէկ մասը գրաւեց եւ մէկ մասն այրեց. եւ ապագային ապահովութեան համար՝ այս երկրաց իշխանութիւններէն յիսուն բարետոհմիկ պատանդ առաւ: Մելիտաս քաղաքին թագաւորը՝ զԽիտերուադա եւ իւր ազգը մարտիւ պատերազմաւ նուաճելով, զանի բռնեց, անոր երկրաց ու քաղաքաց տիրեց. ոսկի, արծաթ, մեծագին բաժակներ եւ պատանդներ առաւ: Իսկ Խիտերուադայի անունը փոխելով, զանի Բիանա փոխադրեց: — Շարիդուրիս Բ. իւր հօրը՝ Կապպադովկիոյ արեւմտեան սահմա-

[1] Թուի թէ Գուգարաց արեւելակողմը՝ Տաշիր գաւառին Լոռէ քաղաքն այս Լուրիս կոչուած արքայիկէն առած է իւր անունը:

Նագլուխները տիրած երկու վիճակաց վրայ՝ անանց Հարաւակողմը Ցէանխիս[1] վիճակն եւս աւերուեցաւ։ Իջաւ զօրօք դէպ յԱսորիս, եւ Արպադ քաղաքն Ուրարտեան յաղթող բանակները տեսաւ։ — Սակայն բախտն աստէն լքեալ թողուց զՇարիդուրիս՝ զյաղթողն այնքան պատերազմաց։ Ասորեստանի զօրութիւնն՝ վերջին թագաւորներու ժամանակ խիստ տկարացած էր։ Այլեւայլ ապստամբութիւններէ վերջ՝ Նախկին Հարստութիւնն իյնալով, Թագղաթփաղսար Գ. (Ք. ա. 745—727) գահն ելաւ։ Իւր առջեւն ունէր հզօր եւ յաղթող ոսոխ մը՝ զՇարիդուրիս Բ., որ ասորեստանեայ աշխարհակալ թագաւորաց ժառանգութիւնն իւր թագին կ՚ուզէր կապել։ Թագղաթփաղսար Գ. հասաւ անոր վրայ, եւ Արպադ քաղաքին առջեւ արիւնահեղ ճակատամարտիւ անոր յաղթեց։ Զայս կը ցուցընեն մեզի Անուանակիր տարիներու ցանկին 743 տարւոյն կցեալ "ի քաղաքն Արպադ Ուրարտիայ զօրաց ջարդ„ խօսքերն։ Աստէն պատմութիւնն կը լռէ մինչեւ 739 տարին, յորում՝ ըստ վերոյիշեալ ցանկին, Թագղաթփաղսար Գ. անձամբ Ուլլուբա երկիրն արշաւեց, որ թուի թէ Ծոփաց աշխարհին արեւելակողմն էր։ Նոյն ցանկին համեմատ՝ անկէ երեք տարի վերջ՝ արշաւանն մ՚ալ ըրաւ Նինուէացին "ի ստորոտ Նալ լերին,„ որ Ուլլուբա վիճակին հիւսիսակողմն պէտք էր ըլլար։ Եթէ այս շարժ-

---

[1] Ցիանխա, ի Կապպադովկիա՝ ըստ Պտղոմեայ, Ե. 6,18։

մանց սկզբնապատճառն չէր Ուրարտացին՝ ինչպէս հաւանական է թէ էր արդարեւ, այս ստոյգ է թէ Շարիդուրիս Բ. կարող եղաւ Միջագետաց եւ Փոքր Ասիոյ մէջտեղ գտնուող քանի մը թագաւորաց հետ դաշնակցութիւն մը կազմել, որպէս զի Ասորեստանի ատեցեալ պետութիւնն ընդ միշտ խոնարհեցընէ: Ուրարտացւոյն դաշնակցութեան մէջ մտան՝ Միլիդայի թագաւորն Սուլումալ, Կումմուխայ թագաւորն Կուշտասպի, Գամգումայ[1] թագաւորն Տարխուլար եւ Մատի-իլու անուն իշխան մը: 735 տարին՝[2] Շարիդուրիս Բ. անձամբ ներկայ կը գտնուէր իւր դաշնակցաց երկիրներուն մէջ, ուսկից անտարակոյս դէպ յԱսորիս եւ ի Պաղեստին հզօր արշաւան մը գործել կը խորհէին: Սակայն Թագղաթփաղասար Ա. անոնց ժամանակ չթողլով՝ Կումմուխայ մէջ երկու ճակատամարտով դաշնակցաց զօրութիւնը խորտակեց: Նախ նոյն երկրին Կիստան՝ եւ յետոյ Խալպի վիճակաց մէջ յաղթուեցան դաշնակիցք: Շարիդուրիս Բ. ստիպուեցաւ մտնել իւր երկրաց մէջ. եւ Նինուէացին անոր ետեւէն մտնելով յՈւրարտու, բովանդակ հարաւակողմը մինչեւ ցգետն Արածանի[3] գրաւեց եւ թագաւորը Տուսպասի

---

1 Գամգում Եփրատայ միջին կողմանց արեւմտակողմը վիճակ մըն էր:

2 Անուանակիր տարիներու ցանկին մէջ այս տարւոյն համար յիշուած “յերկիրն Ուրարտու„ բառերն Թագղաթփաղասարայ Գ.ի՝ Շարիդուրայ Բ.ի վրայ կատարած յաղթութիւնն եւ Ուրարտուայ վրայ գործած արշաւանը կ'ակնարկեն անտարակոյս:

3 Նիմրուտայ Ցախտակին արձանագրութեան 32դ տո-

մէջ պաշարեց. սակայն չկրցաւ քաղաքն առնուլ. այլ հոն արձանագրութիւն մը կանգնելով՝ քալեց դէպ ի հարաւ արեւելից, եւ Բուստուս, Բաբիլու, Ինու վիճակաց, Պարսուայի եւ Կապուտան ծովուն բոլորտիքը գտնուող միւս վիճակաց տիրեց։ — Ինչպէս յայտնի է, Շարիդուրիս Բ. չյաջողեցաւ Ասորեստանեայց պետութեան ժառանգութիւնն ինքեան կորզել։ Ոչ միայն Եփրատայ աղեղան արեւմտակողմանքն եղող օտարազգեաց երկիրներն, այլ Ուրարտուայ հարաւակողմանքն ամբողջապէս կորան։ Շարիդուրեայ Բ. կը մնայրն յարեւմտից՝ Մուսքի արեւելեան սահմաններէն մինչեւ Կասպից ծովն եղած երկիրներն եւ Վասպուրականի արեւմտեան կողմանքն։ — Ս. Գրոց մէջ կը կարդանք (Բ. Թագ. ԺԶ, 9) որ Թագղաթփաղասար Գ. “Ասորեստանեայց արքայն Դամասկոսի վրայ քալեց, զայն առաւ եւ ժողովուրդն ի Կիր գերի տարաւ։„ Այս դէպքս 731 տարին պատահած է։ Գիտնականք ոմանք կ'ըսեն թէ այս Կիրն Հայաստանի Կուր գետն է, որուն քով բնակեցան այն Ասորիք։ Հաւանութեան թուի թէ Թագղաթփաղասար Գ. Գաղաադէ եւ Նեփթաղիմայ երկրէն Ասորեստան գերի տարած Հրեայները (Բ. Թագ. ԺԵ, 29) վերյիշեալ Ասորւոց քով՝ Կուր գետոյն մօտ Սպեր գաւառին մէջ հաստատած է։[1]

ղին Նարսու Բոսրափփոս [?] բառերն՝ Արածանի համ արդի Մուրատ-Սու գետը կը նշանակեն։

1 Տես Fr. Lenormant, Lettres assyriologiques, 1871, t. I, 162–163։

— Այս թագաւորն ասորեստանեայ պետութեան հարկատու ըրաւ զՔաղդեայս (Խաղդիւք, Խաղտիք), որոնք ուրարտեան ժողովրդոց հետ անձուկ եղանակաւ ազգակից էին։

Ռուշաս Ա. (Ք. ա. իբր 730—714) յաջորդեց իր հօրը Շարիդուրեայ Բ.։ Թագաւորութիւնն աղէտաւոր պատերազմէ մը վերջ հանգիստ առնելու պէտք ունէր՝ երբ կուր գետոյն հարաւակողման եւ Երասխայ միջին կողմանց երկիրներն ապստամբեցան։ Քալեց անոնց վրայ Ռուշաս Ա., քսանուերեք մանր թագաւորաց յաղթեց, եւ անոնց երկիրները գրաւեց։ Անոնց մէջ էին գլխաւորապէս՝ Ալզերա,[1] Արքուքինիս,[2] Սանասաուացիք,[3] Ուսեդուք,[4] Բարսասեանք կամ Բաբանիս,[5] Մելացիք[6] եւ ուրիշ երկիրներ կամ վիճակք։ — Ռուշաս Ա. ապըստամբ աքքայիկները նուաճելէն վերջ, բնականապէս իր հօրը կորմնցուցած երկիրները կրկին ձեռք բերելու եւ Ասորեստանեայց ազդեցութիւնն Ուրարտուէն բոլորովին ջնջելու ձեռնարկէր։ Դժուարին գործոյն մէջ յաջողելու համար պէտք էր Ասորեստանեայց հպատակ եւ կամ կողմնակից թագաւորները յինքն յանկուցանէր։ Նոյն առենները Մանասայ վրայ կը թագաւորէր Իրանզու, որ Ասորեստանեայց թագաւոր

1 Աճարա գաւառ Կողքիսացւոց։
2 Փայտակարանի մէջ Գարգարացիք։
3 Սիւնեաց Սանահին աւանի վիճակին։
4 Արցախի Սօթք գաւառն։
5 Անգ, Միւս Հարանդ։
6 Սիւնեաց հարաւակողմը Մեղրի քաղաքին վիճակն։

Digitized by Google

Սարգոնի (Ք. ա. 722—705) հպատակ ըլլալը լաւագոյն կը սեպէր, քան թէ իր ցեղակից Ռուշասայ Ա.։ Անոր կողմնակից էին քանի մը քաղաքներ եւ Զիկկիրտա վիճակին արքայիկն Միտատտի. այս իշխանն Իրանզուէն ապստամբեալ Սուանդախուլ ու Դուրդուկկա ամուր քաղաքաց՝ իր բանակն օգնութեան խաւրեց։ Յամին 719 Սարգոն բանակաւ մ'եկաւ ի Մանաս, երկիրը խաղաղցուց եւ ապստամբեալ քաղաքներէն՝ բնակչաց մէկ մասն Ասորեստան գերի տարաւ եւ մէկ մասն ալ ստորին Ասորիք փոխադրեց։ Իրանզուին յաջորդեց իր որդին Ազա, որ իր հօրը քաղաքականութեան կը հետեւէր։ Անոր համար Ռուշաս Ա. վերոյիշեալ Միտատտին, Ումիլդիս վիճակին արքայիկը զԲագդատտի եւ Մանասայ կողմնակալներն իր կողմը վաստըկեցաւ։ Ասոնք զԱզա սպաննեցին։ 716 տարին եկաւ Սարգոն անոնց վրայ, արքայասպանները պատժեց, եւ Ազայի եղբայրը՝ զՈւլլուսուն, Մանասայ վրայ թագաւորեցուց։ Սակայն Ռուշաս Ա. զՈւլլուսուն իր խորհրդոց հաղորդ ընելու յաջողեցաւ։ Կարալլա վիճակին արքայիկն Ասուրլի, Ալլաբիրայի[1] արքայիկն Իտտի եւս Ուլլուսունի նման՝ Ռուշասայ Ա. հպատակեցան։ Առանց յապաղելու՝ Սարգոն այս միաբանութիւնը խորտակեց, զԻզիրտու Մանասայ արքայանիստ քաղաքը կրակի տուաւ։ Ասուրլի եւ Իտտի արքայիկներն պատժուեցան. սակայն Ուլլուսուն եւ բովանդակ Մանաս երկիրն Սարգոնի գթու-

1 Վասպուրականի Աղբերանի գաւառն։

թիւնը խնդրած ըլլալնուն համար, Նինուէացին անոնց ներեց, եւ զՈւլլուսուն նորէն արքունական գահը նստեցուց։ Հազիւ թէ Սարգոն հեռացաւ, Ռուշաս Ա. Մանասայ մէկ կուսակալն Դախուկ-կուի միջոցաւ զՈւլլուսուն դարձեալ իրեն վաստըկեցաւ. սակայն որպէս զի Մանացին իրեն հաւատարիմ մնար, անոր որդին անկէ պատանդ առնելէն զատ, քսանուերկու բերդաքաղաքներ եւս իբր պարգեւ առաւ։ Սարգոն այս բաներս լսելով՝ 715 տարին երրորդ անգամ քալեց Մանասայ վրայ. եւ այս անգամ Ռուշասայ Ա. զօրաց հետ կռուելով՝ նոյն բերդաքաղաքներուն տիրեց։ Ուլլուսուն սարսափած՝ թողուց իւր արքայանիստ քաղաքն եւ դժուարին լերանց մէջ փախաւ։ Սարգոն նոյն բերդաքաղաքներն եւ ուրիշ քաղաքներ ու վիճակներ առաւ։ Ուլլուսուն “Թռչնոյ մը նման թռաւ եկաւ„ եւ Սարգոնի ոտից փարուեցաւ. եւ սա դարձեալ զՄանացին իւր արքայական աթոռը դրաւ։ — Սարգոն գիտնալով թէ այս ամէն շարժմանց սկզբնապատճառն Ուրարտացին էր, չհամարձակեցաւ ուղղակի անոր հետ ի վէգ գալ։ Իսկ հայրենասէրն Ռուշաս Ա. քանոյ եւ իցէ իւր դիտման հասնելու համար՝ Մուծածիր[1] երկրին արքայիկը՝ զՈւրզանա, իւր կողմը վաստըկելէն զատ, Եփրատայ աղեղան արեւմտակողմը Թոբէլի թագաւորն Ամբարիսի եւ Մոսոքի թագաւորն Միտայի դեսպաններ խաւրելով, Ասորեստանի դէմ անոնց հետ նիզակակցութիւն

1 Մոկաց աշխարհ։

Digitized by Google

հաստատեց։ Մեծ էր վտանգն. ուստի եւ Սարգոն 714 տարին հզօր բանակաւ մը քալեց Ուրարտուի վրայ. Ռուշասայ Ա. զօրքը՝ "Թուով անհամար„, արիւնահեղ ճակատի մը մէջ խորտակեց եւ արքայական սերունդէն 260 հոգի գերի բռնեց։ Թագաւորն "առ ի փրկել զանձն՝ մատակ ձիոյ մը վրայ նստաւ՝, իւր լերանց վրայ փախաւ։„ Երբ Սարգոն Մուձաձիր երկիրը մտաւ, Ուրզանա միակ միայնակ իւր լերանց վրայ փախչել աճապարեց։ Սարգոն մտաւ Մուձաձիր քաղաքը, Ուրզանայի կինը, ուստերքն ու դստերքը եւ 20,170 ռամիկ ժողովրդէն գերի բռնեց։ Նոյն քաղաքին մէկ մեհենին մէջ՝ Ուրարտուի բարձրագոյն դիքն Խաղդիսի անդրին կը գըտնուէր. զայս՝ եւ Բագբարտում[1] դից անդրին եւ անոնց ճոխ ինչքը յաւարի առաւ եւ զՄուձաձիր կործանեց։ Երբ Ռուշաս Ա. "Մուձաձիր քաղաքին կործանիլը, իւր Խաղդիա[2] աստուածոյն աւարի առնուիլը լսեց, իւր իսկ ձեռքովն՝ իւր գօտւոյն երկաթի դաշունիւն ինքն զինքն ի կենաց զրաւեց։„ Սարգոն պարծանօք կ՚ըսէ. "Ուրարտուի վրայ՝ իւր բովանդակ տարածութեամբը՝ թշուառութիւն հասուցի, հոն բնակող մարդիկը կոծ ու ողբի մէջ նետեցի։„ Այսպիսի դժբախտ վախճան ունեցաւ հայրենասէրն Ռու-

1 Թուի թէ այս դիքն նոյն իսկ Խաղդիսի երկրորդական մէկ ձեւն էր։ Իսպուինեայ եւ Մինուայ Ա. յօրինած Ցաշտից Կարգաւորութեան արձանագրութեան մէջ Բագբարտում անուն դիք չյիշուիր։

2 Այսպէս՝ ըստ ասորեստանեան արձանագրութեանց։

Digitized by Google

շաս Ա.։ Ուլլուսուն՝ որ Սարգոնին շնորհքը կը վայելէր, իւր կորսնցուցած երկիրները յաղթողին ձեռքէն դարձեալ ստացաւ։ Այլեւայլ տեղուանք՝ Սարգոն բազմաթիւ քաղաքաց տիրեց, բազմաթիւ քաղաքներ եւս հրով դատեց։ Ի միջի այլոց երկրաց՝ Կիրխի եւս անագորոյն յաղթողին բանակները տեսաւ։ Հետեւեալ տարին Սարգոն Թոբէլայ եւ Մոսաքի վրայ արշաւեց Ռուշասայ Ա. հետ Ամբարիսի եւ Միտայի ըրած նիզակակցութեան վրէժը հանելու համար։ ԶԱմբարիս յԱսորեստան գերի տարաւ. իսկ թէ ինչպիսի բախտ ունեցաւ Մոսաքացի Միտան՝ չէ յայտ. այս ստոյգ է թէ Սարգոն ինչպէս կասկուի կամ կասկայց (Խաղիւբք, Խաղտիք), այսպէս անոր երկրին տիրեց, եւ "Մոսաքի երկրին սահմաններուն վրայ"[1] այլեւայլ քաղաք "Ուրարտիայ դէմ" ամրացուց։ Այս վկայութիւնն մեզի համար այնու նշանաւոր է՝ որ կը ցուցընէ թէ Ռուշասայ Ա. յաջորդին ժամանակ Ուրարտուայ արեւմտեան սահմաններն կից էին Մոսաքի սահմանագլխոց. ուստի եւ այն սահմանք Եկեղեաց գաւառէն կը ձգէին կ՚իջնային մինչեւ Խոզնայ գաւառին հարաւային ծագը։

Ռուշասայ Ա. յաջորդեց Արգիստիս Բ. Ք. ա. 714— իբր 685) որուն ժամանակ՝ ինչպէս իւր նախորդին ատեն, բնական էր որ արեւելից հիւսիսոյ կողմանց մէջ նորէն ապստամ-

---

1 Տես Սարգոնի Տարեգրութեանց արձանագրութիւնը, տող 191–193։

բութեան հոգին կենդանանար[1]։ Արգիշտիս Բ. Գեղամայ ծովակին մօտ կամ կից՝ Քիէլտունիա. եւ Խտտիկունիս քաղաքներուն վիճակաց մէջ ծագած աստուածութիւններ Նուաճելէն վերջ, Քուլխանիս արքայիկին երկիրն եւ անոր Դուրուբանիս քաղաքն[2] եւս Նուաճեց։ — 710դ տարին՝ Սարգոն Բաբելաստանի եւ Քաղդէաստանի մէջ ծանր պատերազմաւ կը զբաղէր։ Առկէ առիթ առնելով՝ Արգիշտիս Բ. դրդեց Հրապուրեց Կումմուխի Թագաւորը զՄուտալլու յապստամբութիւն՝ զլանալով Սարգոնի իւր ընծայն եւ թողլով որ իւր Հարկին ու տրոց պայմանաժամն անցնի։ Մուտալլու "Ուրարտուի Թագաւորին Արգիշտեայ վստահացեալ էր, օգնականի մը՝ որ զանի չէր կրնար ազատել„ կ'ըսէ Սարգոն։ Իրօք ալ՝ երբ 708 տարին Սարգոն Մուտալլուի վրայ քալեց, սա "Թողուց իւր քաղաքը, եւ անկէ ետքը չտեսնուեցաւ„։ Ուստի կ'երեւի թէ Ուրարտացին կամ իւր Նիզակակցին ազդու կերպով չէր օգնած, եւ կամ իւր երկրին պայմանքն եւ Սարգոնի զօրութիւնն արգելած էին զինքն՝ իւր ազգին վրայ նորանոր աղէտներ հրաւիրելու։ — Սենեքերիմ (Ք. ա. 705—682) որ իւր հօրը Սարգոնի յաջորդեց, կը պարծի ըսելով թէ "Ասուր . . . վերին ծովէն[3] դէպ ի մուտս արեւու՝

---

1 Գեղամայ ծովակին մօտ Որտաքլուի եւ Արագած լերան հիւսիսոյ արեւմտից ուսոյ վրայ գտնուած երկու արձանագրութիւնք՝ հաւանականօրէն այս Արգիշտեայ են։

2 Թուի թէ սոյնք Արագածի վրայ էին։

3 Բզնունեաց ծովէն։

մինչեւ ցստորին ծովն դէպ յարեւելս, բոլոր բովանդակ մնապարծները ոտից տակ հպատակեցուց,,: Թուի թէ Սենեքերիմայ ատեն՝ Կորդուաց հարաւակողմն ապստամբութիւններ պատահած են. զորոնք նուաճելու համար Սենեքերիմ անձամբ Տու-մու°-րի, Սարում եւ այլ քաղաքաց վրայ քալած է, որոնք Նիբուր դժուարին լերան վրայ կը գտնուէին: Այն քաղաքներուն տիրելով, աւարած եւ աւերած է զանոնք: Դաի երկրին մէջ Ուկկի քաղաքին արքայիկն Մանիաի՝ Սենեքերիմայ առջեւ փախստեայ գնաց, Ասորեստանեայն բարկութեան զոհ թողլով իւր վիճակը, որուն մէջ երեսուներեք քաղաք (աւան, գիւղ) կային: — Թուի թէ Արգիստիս Բ. Սենեքերիմայ հետ կեղծօրէն հաշտութեամբ եւ յարգութեամբ կը վարուէր: Քաղաքական հորիզոնն յառաջակողման Ասիոյ հիւսիսակողմանքը փոթորիկներ կը սպառնար. Ուրարտուայ կէսն՝ այսինքն բովանդակ հարաւակողմանքն Ասորեստանեայք գրաւած էին, եւ Ուրարտացին՝ Մելիդասայ վիճակին, Մոսոքայ եւ Թոբէլի թագաւորներուն նիզակակցութեան վրայ չէր կրնար իւր յոյսը դնել: Ըստ այսմ՝ կը տեսնենք որ մինչդեռ Արգիստիս Բ. մէկ կողմանէ դեսպանի ձեռքով Սենեքերիմայ ձիեր կը խաւրէր, միւս կողմանէ Ասորեստանցիք մինչեւ Տուսպաս քաղաքին մօտերն արթնութեամբ պահպանութիւն կ՚ընէին[1]: — Ութերորդ դարուն կէսէն առաջ Կիմմերա-

---

1 Տես Պահիր Բէլայ առ Սենեքերիմ նամակը:

ցիք Խրիմէն գալով՝ Սինոպայ շրջակայքը գրաւած էին. այս բարբարոսք տակաւ Փոքր Ասիոյ արեւմտակողմանքն արշաւելով՝ այլեւայլ կողմանց տիրելէն վերջ, 695ին Փռիւգիոյ վրայ տիրած էին։ Կիմմերեանց արշաւանքէն էր որ Թոբէլայ եւ Մոսոքի բնակիչք իրենց երկիրները թողլով՝ Պոնտոսի արեւմտակողմը փախան. եւ Մոսոքացւոց մէկ մասն մինչեւ Ճորոխայ ստորին մասին աջակողմը հաստատուեցաւ, ուրանօր մաս մը Պարխար լերանց՝ Մոսքական լերինք կոչուեցաւ։ Անտարակոյս այս ժամանակէն շատ վերջն չէր որ Ուրարտուայ արեւմտեան մասին ժողովուրդքն Մոսոքի ամայացեալ երկրին մէջ տակաւ հաստատուեցան, յորմէ քանի մը դար վերջ՝ հնոյն Մոսոքի երկիրն Փոքր Հայք կոչուեցաւ։

Արգիստեայ Բ.ի յաջորդեց իւր որդին Ռուշաս Բ. (Ք. ա. իբր 685—675), որուն ժամանակ միջին Եփրատայ ձախակողմը Քուիրդա[1] երկրին մէջ խռովութիւնք ծագած ըլլալով, թագաւորն անձամբ հոն գնաց եւ երկիրը խաղաղցուց եւ շինութիւններ եւս գործեց։ — Թուի թէ Ռուշասայ Բ.ի ժամանակն էր որ Սենեքերիմայ մահն պատահեցաւ։ Անոր սպանուիլն Ուրարտուայ նկատմամբ ծանրակշիռ հետեւութիւններ ունեցաւ։ Իւր երեք՝ Ասորդան (Ասուրախիդդինա Ա.), Սարասար[2] եւ Ադրամե-

1 Հաւանօրէն Կոտայք գաւառն, որ ի սկզբան փոքր վիճակ մըն էր։

2 Անունս համառօտութիւն մըն է Նէրգալ-շար-ու--

լէք[1] որդւոց առաջինն Թէպէտ իւր եղբարց ան-
գրանիկն էր, սակայն անանց հետ "միահայր եւ ոչ
համամայր"[2] էր։ Ցարակոյս չկայ որ Սենեքերիմ
զԱսորդան իբր իւր յաջորդը կը նկատէր. ուստի
Թագաժառանգութեան իրաւունքն խորթ եղ-
բայրութեան զգացմանց հետ զարնուելով՝ զՍա-
րասար եւ զԱդրամելէք հայրասպանութեան
մղեցին։ Այս անհեթեթ եղեռն 682 տարւոյն
աշնան վերջերն պատահած է։ Ոճիրն ի նպաստ
Սարասարայ էր, ինչպէս կը տեսնուի Աբիւդե-
նեայ վկայութենէն, որ կ՚ըսէ թէ "ըստ կարգի
եւ անկէ ետքը Ներգիղոս Թագաւորեց"[3]։ Սա-
կայն Սարասարայ հակառքայութիւնն հազիւ
երեք կամ չորս ամիս տեւեց։ Սենեքերիմայ
սպանման ժամանակ՝ Ասորդան փոքր Ասիոյ մէջ
էր, ուսկից բանակաւ յառաջ խաղալով՝ Մելի-
տինէ քաղաքի վիճակին Խանի-րաբբատ հասաւ,
ուրանօր հայրասպանքն իրենց զօրքովն անոր
պատահեցան։ Սոքա ի պարտութիւն մատնեցան
եւ իրենց զօրաց մէկ մասն Ասորդանի կողմն ան-

---

տուր անուան, որ "Ներգալ-թագաւորը-պաշտպանէ" կը նշանակէ։ Ներգաղ՝ ըստ մեր թարգմանչաց Անգեղ (Դ. Թագ. ԺԷ, 30) պատերազմաց դիքն էր։ Մեր Խորենացի այս ասորեստանեայ իշխանը Սանասար կ՚անուանէ։

1 Ասորեստանեայց լեզուաւ Ադար-մալիք, որ կը թարգմանի "Ադար-իշխան է"։ Անունս նախնապէս Աքադացիներէն Ա-տար հնչուելով՝ "հայր վճռոյ, ճակատագրի" կը նշանակէր։ Ադար՝ Ասորեստանեայց եւ Բաբելացւոց Հերակղէսն էր։

2 Այսպէս Աբիւդենոս՝ յԵւսեբի Քրոն., Հրատ. Աւգերեան, մասն Ա, էջ 53։

3 Անդ։

Digitized by Google

ցաւ։ Սարասար եւ Ադրամելէք՝ իրենց հաւա-
տարիմ մնացած զօրքովը Ուրարտուայ երկրին
վրայ անցան։ Աբիւդենոս կ՚աւանդէ որ «Աքսեր-
դիս[1] ... զօրքը հալածելով Բիւզանդացւոց քա-
ղաքին մէջ նետեց»[2], որ Եկեղեաց գաւառին
արեւելակողմը Վժան քաղաքն էր։ Թուի թէ
Ասորդան ակնածելով Ուրարտուայ Թագաւորէն,
չհամարձակեցաւ գործը յառաջ մղելու եւ գնաց
ի Նինուէ։ Ըստ Խորենացւոյն՝ մեր Թագաւորն
Սկայորդի զՍարասար Հայաստանի հարաւոյ ա-
րեւմտակողմերը, իսկ զԱդրամելէք հարաւոյ ա-
րեւելից մէկ տեղը բնակեցուց[3]։ Թուի ստոյգ թէ
երկու եղբարց Ճակատամարտն եւ հայրասպան-
նեկրուն յՈւրարտու փախուստն Ք. ա. 681 փե-
տրուար ամսոյն վերջին օրերը պատահած են։ —
Կիմմերացիք Ուրարտուայ մէջ ոտք չէին կոխած՝
երբ իրենց ազգակից բայց թշնամի մէկ ցեղն
Կովկաս լեռներն անցնելով՝ Կուր գետոյն աջա-
կողմը գրաւեց։ Սոքա էին Շակք կամ Շակացիք,
որոնք իրենց Գագու անուն իշխանին առաջնոր-
դութեամբն իջան Ուրարտուայ Թագաւորաց
երկրին վրայ։ Իրենց գրաւած երկրին մէկ մասն
յետոյ Գուգարք (= Գուգայ-արք) եւ միւս
մասն Շակաշէն կոչուեցան։ Թուի թէ այս վեր-
ջինս յառաջագոյն Գուգարաց նահանգին կից եւ
անոր արեւելակողմը կը տարածուէր, եւ մինչեւ

---

1 Այս է Ասորդան (Ասսուրախիդդինա Ա)։

2 Աբիւդ. առ Եւսեբեայ, Քրոն. Հրատ. Աւգերեան, մասն Ա, էջ 53։

3 Մ. Խորեն. Ա. իգ։

Digitized by Google

Արշակունեաց ժամանակ ամփոփուած եւ փոքրկացած է։ Ստրաբոն (ԺԱ. ը. 4) այս Շակաց համար կ'ըսէ թէ “. . . Հայաստանի ամէնէն պտղաբեր երկրին տիրեցին, որ նոյն իսկ անոնցմէ գրաւեալ ըլլալնուն իբր յիշատակ՝ Շակաշէն անունը պահեց„ ։ Գագու շակացւոյն այս ժողովուրդն Եզեկիէլի ԼԸ եւ ԼԹ գլխոց մէջ յիշուած Գոգն է, ուրանօր բոլոր բովանդակ այն ժողովուրդը ձիաւորաց բանակ մը կը նկարագրէ մարգարէն։ Որչափ կ'երեւի, Ուրարտուայ թագաւորն այս ասպատակողաց՝ իւր երկրաց մէջ հաստատուելուն չէ կրցեր ընդդիմանալ. կարի եւս հաւանական է որ Գագու նոյն երկրաց մէջ խաղաղ ու անվրդով մնալու համար՝ Ասորեստանի թագաւորին վեհապետութիւնը ճանչցած է[1]։

Ռուշասայ Բ. յաջորդած կ'երեւի Երիմենա (Ք. ա. իբր 675—670) որուն անունն “Թափուր-յերկրէ„ կը նշանակէ։ Սա՝ Ասորդանի ժամանակակից պէտք էր որ ըլլար իւր որդւոյն ու յաջորդաւ։ Արդարեւ՝ Ասուրբանիբաղ՝ Ասորդանի որդին ու յաջորդն, իւր Տարեգրութեանց մէջ (սիւն Ժ. 40—42) կ'ըսէ թէ “Շարդուրի՝ Ուրարտուի թագաւորն՝ որուն հարքն թագաւորք՝ իմ հօրս եղբայրութիւն յայտարարած էին . . .„ . եւ այս խօսքերն ու Ռուշասայ Գ.ի կրօնական արձանագրութիւնքն եւ վերոյիշեալ Տարեգրութեանց մէջ Շարիդուրեայ Գ.ի յիշատակու-

[1] Տես Ասուրբանիբաղայ Բ. Գլանը, սիւն Դ. տղք 1–2, աս. Գ. Սմիթայ՝ History of Assurbanipal, 1871, էջք 89 եւ հետ.։

թիւնն՝ կը ցուցնեն թէ այս վերջնէն առաջ գոնէ երկու թագաւոր պէտք էր որ Ուրարտուայ վրայ թագաւորած ըլլային։ Ռուսասայ Գ.ի կրօնական արձանագրութիւնքն՝ իւր եւ Հօրն Երիմենայ, անունը կը կրեն։ Կրնանք ապա ըսել թէ Ասորդանայ “եղբայրութիւն„ յայտարարողքն Երիմենա եւ Ռուսաս Գ. թագաւորներն էին։ Երիմենայէն թողեալ արձանագրութիւն մը տակաւին մեզի ծանօթ չէ որպէս զի իւր ժամանակն Ուրարտուայ վիճակին վրայ ծանօթութիւն մ'ունենանք։ Սակայն Ասուրբանիբաղայ վերոյիշեալ խօսքերէն կ'իմանանք՝ թէ մէկ կողմանէ Ը. դարուն երկրորդ կիսոյն պատահած անյաջող պատերազմունք ընդ Ասորեստանեայս, միւս կողմանէ Է. դարուն առաջին կիսոյն մէջ Կիմմերացւոց եւ Շակաց արշաւանքն ստիպած էին Ուրարտուայ թագաւորն Ասորեստանւոյն միտելու, եւ անոր “եղբայրութիւն„ յայտնելով՝ մօտալուտ չարեաց առջեւն առնելու։ Երիմենա էր անտարակոյս որ այն բռնազբօսեալ եղբայրութիւնն Ասորդանի նախ յայտնած էր։

Կանխաւ տեսանք թէ Սարգոնի ժամանակ Մանասայ թագաւորն Ուլլուսուն Ասորեստանի լուծն ընդունած էր։ Ասուրախիդդինայի Ա. (Ասորդան) ատեն Մանաս ապստամբիլ մտաբերեց։ Այս երկրին թագաւորին նիզակակից էր Ասգուզայի[1] թագաւորն՝ Իսպակայ։ Այս երկու թագաւորք մանունք կարող չէին Ասորեստանւոյն

[1] Ասգուզա՝ Վասպուրականի Անձախի-Ջոր գաւառն էր հաւանականօրէն։



Digitized by Google

*Հետ ի վեր գալ. ուստի եւ Ասորդան անոնց յաղթելով՝ կրկին զանոնք իւր լծոյն տակ դրաւ։*

*Երիմենայի որդին Ռուշաս Գ. (Ք. ա. իբր* 670—645) *կրօնական եւ քաղաքային շինութիւններ ըրաւ։ Իւր հօրն առ Ասորդան յայտնած հաշտութեան զգացմունքը՝ ինքն եւս յայտնեց. քաղաքականութիւն մը, որուն դառն հետեւանքն Ասորեստանեայց պետութեան կործանմանէն վերջն երեւան պիտի գան։ — Ասորդանայ որդւոյն Ասուրբանիբաղայ (Սարդանաբաղ) ժամանակ (Ք. ա.* 668—*իբր* 638) *Ախսիրի՝ Մանասայ թագաւորն, անկախութեան հոգւով տառապելով՝ Ասորեստանւոյն լուծը թօթուել ձեռնարկեց։ Այս ապստամբութիւնն չարաչար հետեւանք պիտի ունենար։ Ասուրբանիբաղ իւր զօրաց գլուխն անցած՝ խաղաց Մանասայ վրայ։ Մանացիք ճակատամարտի մը մէջ յաղթուեցան, եւ Ախսիրի իւր արքայանիստ քաղաքն Իզիրտուն թողլով փախաւ։ Արքունական տոհմէն բազմաթիւ անձինք յաղթողին սրոյն ճարակ եղան։ Ամէն կողմ՝ այրեացուերը, ապականութիւնք եւ աւարառութիւնք Մանասայ թագաւորութիւնը յետին թշուառութեան հասուցին։ Երբ Ասուրբանիբաղ դարձաւ ի Նինուէ, Ախսիրի իւր փախստավայրէն ետ դարձաւ. սակայն ժողովուրդն ոտք ելլելով՝ զանի սպաննեց։ Ախսիրիայ յաջորդեց իւր որդին Ուալլի, որ իւր հպատակութիւնն Ասուրբանիբաղայ յայտնել փութաց։*

Digitized by Google

Շարիդուրիս Գ. (Ք. ա. իբր 645—620) իւր հօրը Ռուշասայ Գ.ի յաջորդելով՝ Ասորեստանւոյն ինքնակալութեան նկատմամբ իւր հօրն եւ հաւուն քաղաքականութեան հետեւեցաւ։ Ասուրբանիբալ Մանասայ թագաւորութիւնը նուաճելէն վերջ՝ յԵլամ, ի Բաբելաստան, յԱրաբիա եւ այլ տեղիս նշանաւոր յաղթութեամբք ահարկու հանդիսացաւ։ Ուստի՝ ինչպէս վերագոյն ըսինք, Շարիդուրիս Գ. իւր յարգութիւնը նինուէացւոյն յայտնելու նպատակաւ՝ ծանրագին ընծայներ խաւրեց Ասուրբանիբալայ։ — Վերագոյն տեսանք թէ Գագու իւր Շակացիներովն Կուր գետոյն աջակողմը գրաւած էր։ Անոր որդիքն Սարատի եւ Պարիտիա իշխանաց ժամանակ՝ Շակացիք կարի բազմաթիւ ամրոցներու տէր էին։ Սոքա երկոքին եղբարք Ասորեստանեայց հպատակութիւնն արհամարհած ըլլանուն համար՝ Ասուրբանիբալ անոնց վրայ քալեց, անոնց ամրոցներէն եօթանասունուհինգն առաւ, զիրենք եւս բռնելով Նինուէ տարաւ։ Սակայն ասով Շակաց զօրութիւնն չնուաղեցաւ. Նա՛ մանաւանդ իրենց վայրագ բնաւորութիւնն ա՛լ աւելի ընդարձակ ասպարէզներու մէջ երեւելցընելու զանոնք մղեց։ — Ասորեստանի վերջին հզօր թագաւորն Ասուրբանիբալ մեռած էր, երբ քանի մը տարի վերջ՝ իբր 634ին, Գոգայ Շակացիքն յառաջակողման Ասիոյ մէջ՝ ասպատակութեամբք ահարկու հանդիսացան։ Երեմիա (Ք. ա. 629—586) իւր մարգարէութեանց մէջ (Գլ. Ա. 14—15, Գլ. Դ. 6—7,

28—29. Գլ. Ե. 15—17. Գլ. Զ. 1—4) կը քարոզէ թէ ըստ Եհովայի բանից՝ հիւսիսակողմէն հզօր ու հին ազգ մ'իւր ձիաւորներովն պիտի գայ՝ չարիս եւ մեծամեծ կործանմունս իւր հետը բերելով։ Եզեկիէլ (Ք. ա. 595—575) իւր քարոզութեանց մէջ (Գլ. ԼԸ. 1—6) նոյն ազգը կ'որոշէ յականէ յանուանէ՝ կոչելով զայն Գոգ, որ անտարակոյս Կուր գետոյն աջակողմէն շարժելով՝ Ռոշայ եւ Նախկին Մոսոք եւ Թոբէլ երկրաց տիրելէն վերջ, զԳամեր[1] եւ "զտունն Թորգոմայ՝ ի ծագս հիւսիսոյ եւ զամենայն գունդս նորա", իւր իշխանութեան տակ առած՝ դէպ ի հարաւ կ'իջնար։ Ապա Ուրարտուայ թագաւորն եւ թագաւորութիւնն՝ տունն Թորգոմայ, թերեւս յակամայ կամս գործակից եղած է Գոգայ արշաւանաց, յորմէ ամենայն երեսք երկրի զարհուրեցան[2]։ Այս արշաւանն մինչեւ Եգիպտոսի սահմանները հասած կ'երեւայ։

Գոգայ այս արշաւանաց սկիզբները՝ Ասորեստանի մէջ երեւելի դէպք մը կը պատահէր։ Կիաքսար Ա. 634 տարին հզօր բանակաւ մը Ասորեստանի վրայ կ'արշաւէր։ Իւր բանակն մարացի եւ վարձկան սկիւթացի (Գիմիրրացիք[3]) զօրացմէ կը կազմուէր. ասոնցմէ զատ՝ Մանասայ թագաւորութեան զօրքն Կիաքսարայ Ա. օգնու-

---

1 Կիմմերացիք — Գամիրք։

2 Եզեկ. ԼԸ. 20։

3 Թուի ստոյգ թէ այս անունն ընդհանրապէս սկիւթացի ազգաց կը տրուէր։

Digitized by Google

թեան եկած էին՝ անտարակոյս ի վրէժխնդրութիւն այն աղէտից, զորոնք Ասորեստանի թագաւորութենէն կրած էր այն ուրարտեան ժողովուրդն։ Նոյն ատեն Նինուէի մէջ կը թագաւորէր Ասուրախիդդինա Բ. (Ք. ա. իբր 635—626)։ Մարական-մանական զօրքն Ասորեստանի քանի մը քաղաքներուն տիրեց. սակայն՝ ինչպէս Հաւանութեան կ'երեւի, Շակաց կամ Սկիւթացւոց մէկ արշաւանքն արգելք եղաւ իրեն՝ պատերազմական գործը մինչեւ Նինուէ յառաջ մղելու։ — Շակաց բանակին կ'առաջնորդէր իրենց թագաւորն Մադիւէս՝ որդի Պրոտոթիւէսի կամ Պրոթիւէսի։ Այս վերջին անունն՝ զոր Հերոդոտոս կ'աւանդէ[1], նոյն է Պարիտիա անուան հետ, զոր Ասուրբանիբաղ Գագուայ երկրորդ որդւոյն կու տայ[2]։ Ապա ուրեմն բոլոր Շակացի ժողովուրդն՝ որ Կուր գետոյն աջակողմը գրաւած էր, իւր զօրքն երկուքի բաժնած ըլլալով, անոնց մէկ մասն դէպ յԵգիպտոս կ'իջնար. իսկ միւս մասն Մադիւէսի առաջնորդութեամբն իջաւ Մարաստանի վրայ։ Մարք եւ Մանացիք ստիպուեցան թողուլ զԱսորեստան. եւ Կիաքսար Ա. Մադիւէսէ յաղթուելով, Մարաստան յաղթողին աւարառութեանց նշաւակ եղաւ։ Գագուայ Շակացւոց այս արշաւաններն տեւական հետեւանք չունեցան. Հազիւ թէ ութը տարի տեւեցին, եւ յե-

1 Ա. 103։

2 Տես Ասուրբանիբաղայ Բ. Գլանն (Գ. Սմիթայ) սիւն Դ. տող. 1։ Տես եւ Fr. Lenormant, Les origines de l'histoire, 1882, Հատ. Բ, մասն Ա, էջ 465։

տոյ տափաստանեցան Շակայցիք դառնալ իրենց բնակավայրը, ուսկից նախապէս եկած էին։ Սակայն Կուր գետոյն քով Գուգարաց եւ Շակաշէն երկիրներն՝ այս Սկիւթացւոց մէկ մասը միշտ օթեւանած պէտք էր որ ըլլային։

Շարիդուրեայ Ա. մահուանէ վերջ՝ Ուրարտուայ վրայ կը թագաւորէր հաւանականապէս Իրկուաս (Ք. ա. իբր 620—600), երբ Կիաքսար Ա. Նիզակակից ունենալով զՆաբուբաղասար Բաբելոնացւոց թագաւորը՝ Նինուէի վրայ արշաւեց։ Այս արշաւանին մէջ Ուրարտեան թագաւորութեանց եւ ոչ մին մասն ունէր։ Սինսարիսկուն (Սարակոս) Ասորեստանի թագաւորն ի զուր կ'ընդդիմանար երկուց հզօր դաշնակցաց։ 607 տարին ինկաւ Նինուէ. դաշնակիցք զայն գետնոյ հաւասար ըրին, այնպէս որ երբ երկու դար վերջը Քսենոփոն անոր հողոյն վրայէն կ'անցնէր իւր յոյն զօրօքն, չէր կարող որոշել երբեմն ճոխ եւ ահաւոր մայրաքաղաքին տեղը։ Շարք մ'ահարկու եւ վայրենաբարոյ թագաւորաց պետութիւնն ինկաւ ընդ միշտ՝ անպատմելի անագորոյնութեանց վրէժը տուժելով։

Ցայսմ պայմանի իրաց, ինչպիսի՞ էր Ուրարտուայ թագաւորութեան վիճակն։ Տարակոյս չկայ որ մարացին եւ բաբելոնացին անկեալ պետութեան ժառանգորդքն էին։ Բնականապէս Թագղաթփաղասարայ Գ.ի ժամանակ Ուրարտուայ կորսնցուցած գրեթէ բովանդակ կէսն՝ այսինքն հարաւոյ կողմանքն, Կիաքսարայ Ա. մասին մէջ պէտք էր որ գտնուէր։ Ասով դիւրին

Digitized by Google

եղաւ Կիաքսարայ Ա. Փոքր Ասիոյ միջավայրը մխուելու: Երբ Լիւդացւոց հետ վեցամեայ պատերազմէ վերջ հաշտութիւն եղաւ, Կիաքսարայ Ա. եւ Ալիատտէսի պետութեանց սահմանն Ալիւս գետն եղաւ[1]: Որով կ'իմացուի թէ Մարաստանի սահմաններէն մինչեւ յիշեալ գետն Կիաքսարայ Ա. իշխանութիւնն անընդհատ էր. եւ այս դիւրաւ կը բացատրուի՝ երբ Նկատի առնուի որ Ասորեստանեայց Ուրարտուայ մէջ տիրած երկիրներն Մարացւոյն իշխանութեան տակ ինկած էին: — Թէպէտ չկայ պատմական վաւերագիր մը, որով կատարեալ ստուգութեամբ ըսել կարենանք թէ Ուրարտուայ Թագաւորն Կիաքսարայ Ա. հպատակութիւն յայտնեց, սակայն կան Նշաններ՝ որոնք Ուրարտուայ Թագաւորին վրայ Մարական վերին իշխանութիւնը կ'ակնարկեն: Կիւրոսի Խրատու Հեղինակն Քսենոփոն՝ Գ. գրոց Ա. գլխոյն մէջ Տիգրան արքայորդւոյն խօսել կուտայ այնպիսի ոճով մը, որով սա կը խոստովանի թէ Մարաց Թագաւորն իւր հայրը գահընկէց ընելու եւ արքունական իշխանութիւնն ուրիշ անձի մը տալու իրաւունքն ունի: Քսենոփոնեայ այս աւանդածն պատմական ամէն ճոխութենէ զուրկ չէ: Զայս եւս պէտք է Նկատի առնունք՝ թէ Արգիստեայ Բ. առ Սեննաքերիմ առաքած ձիերն ի սակ հարկի կրնան Նկատուիլ. հարկ մը՝ որ Ասորեստանւոյն վեհապետութիւնը կ'ենթադրէ, զոր պատերազմի իրաւամբք ժառանգած էր Կիաքսար Ա.: Թուի ստոյգ թէ Ուրարտուայ

[1] Հերոդոտոս, Ա. 72:

մանր թագաւորութիւնք՝ եւ ի մասնաւորի Մաննաս, մարական վերին իշխանութեան ենթարկեալ էին։

Մինուաս Բ. (Ք. ա. իբր 600—580) որդի Իրկուասու՝ քաղաքական պատճառաց համար Երասխայ հիւսիսակողմանքը գացած եւ Լուխիունիս քաղաքին երկրին վրայ թագաւորած է։ Այս թագաւորին միակ արձանագրութեամբն՝ ազգային սեպագիր վկայագրոց ցանկն կը վերջանայ ըստ յաջորդութեան թագաւորաց։

Ընդունինք ուրեմն Խորենացւոյն այս ժամանակաց համար մեզի ցուցըցած թագաւորը, զանուանեալն Երուանդ[1] (Ք. ա. իբր 580—535)։ Այս թագաւորին եւ անոր որդւոյն վրայ գրող՝ ժամանակաւ մօտ հեղինակն է Քսենոփոն (Ք. ա. 445—355), աշակերտն Սոկրատայ, որ Փոքր Կիւրոսի եւ պարսիկ իշխանաց հետ ունեցած անմիջական ու սերտ յարաբերութեանց առթիւ՝ անոնցմէ Ուրարտուայ[2] վրայ պատմական ծանօթութիւններ ստացած ըլլալով՝ զանոնք իւր Կիւրոսի Խրատ գործոյն մէջ մեզի կ'աւանդէ։ Թէպէտ գրութեան ոճն վիպասանական է, սակայն քննիչ միտքն դիւրաւ կրնայ պարզել որոշել պատմականը վիպասանական մա-

---

1 Այս անունն ուրարտական ձեւով պէտք էր որ ըլլար՝ Երիաս կամ Երիանիս։

2 Թուի թէ մարական պետութեան ժամանակ՝ Ուրարտու Մարաց մէջ Հարմինեայ կը կոչուէր, եւ այս անունն Մարացմէ Պարսից անցնելով՝ Դարեհ Ա. կոչած է զայն Արմ'ինա, որով անուամբ ծանօթացած է միւս օտար ազգաց։

Digitized by Google

սէն։ Ըստ այսմ՝ Երուանդայ[1] եւ Տիգրանայ Ա․ վրայ Քսենոփոնեայ աւանդած գործերը համառօտութեամբ կը կարգենք աստէն։

Կիաքսար Ա․ Ք․ ա․ 584 տարին մեռնելով, անոր յաջորդեց իւր որդին Աշդահակ (Ք․ ա․ 584—558)։ Սա նախ Քաղդէացւոց հետ պատերազմի բռնուելով, Խառան քաղաքն՝ իւր շրջակայ տեղերովը կորսնցուց։ Սակայն կադուսացւոց երկիրն արշաւանք մ՚ընելով՝ զանոնք նուաճեց, թէպէտ առոնց հպատակութիւնն քիչ ատեն տեւեց։ — Աշդահակ Հարմինիյապայ հետ ունեցած պատերազմին մէջ աւելի յաջողութիւն ունեցաւ։ Երուանդ՝ Աշդահակայ խաղաղասէր բնաւորութենէն եւ մանաւանդ Քաղդէացւոց հետ ըրած անյաջող պատերազմէն քաջալերեալ, ուզեց Մարական վերին իշխանութեան լուծը թօթափել իւր վրայէն։ Եկաւ Աշդահակ Երուանդայ վրայ. եւ սա չկարենալով անոր զօրութեան առջեւը դիմանալ, ամուր լերանց վրայ ապաւինեցաւ։ Հոն Աշդահակ զանի պաշարեց. եւ երբ հաշտութիւն խնդրեց Երուանդ, պայմաններն եղան՝ Նախ՝ որ Հարմինիյապայ թագաւորն միշտ հպատակ դաշնակից պիտի ըլլար Մարաց թագաւորին եւ անոր զօրքով պիտի օգնէր երբ հարկն պահանջէր. Երկրորդ՝ որ տարուէ տարի յիսուն տաղանդ[2]

---

1 Քսենոփոն այս թագաւորին անունը չյիշեր, հապա անոր տեղ միշտ "Հայազգի„ բառը կը գործածէ։

2 Հոս տաղանդ Բաբելոնականն ըլլալով, իւրաքանչիւրոյն արժէքն 4830 Ֆրանք էր. որով 50 տաղանդ՝

Digitized by Google

հարկ պիտի վճարէր. եւ Եբբօբբ՝ որ ամրոցներ չպիտի ունենար։[1] Կիաքսար Բ.[2] (Ք. ա. 558—536) իւր հօրն Աժդահակայ յաջորդած ըլլալով, Երուանդ անոր տկար բնաւորութիւնը յօգուտ անձին գործածել ուզեց։ Ուստի եւ բերդեր շինել տուաւ, եւ տեսնելով թէ մարական պետութեան դէմ Բաբելաստան, Եգիպտոս, Լիւդիա եւ Լակեդեմոն կը նիզակակցին, հարկը դադրեցուց եւ Մարացւոյն օգնական զօրք չէր տար։ Ահաւոր նիզակակցութեան վտանգէն ստիպեալ՝ Կիաքսար Բ. իւր քեռորդին զԿիւրոս Պարսկաստանէն յԵկբատան կանչելով՝ զանի իրեն գահակից ըրաւ, եւ բովանդակ զինուորական գործողութիւններն անոր յանձնեց։ Կիւրոս սպառնալեօք եւ կամ խոստմամբք յաջողեցաւ համոզել զԵրուանդ իւր պարտաւորութիւնները կատարելու։ Երբ Կիւրոս մարական բանակներով Լիւդիոյ վրայ արշաւեց, Երուանդայ որդին Տիգրան 20,000 ոտանաւոր զօրաց գլուխը՝ Կիւրոսին մարտակից էր։ Ոտանաւորաց հետ կային նաեւ 4000 հեծեալք, որոնց հրամանատար էր Հաբմինիյացի Եմբաս։ Դաշնակից բանակներն 546 տարին մտան Սարդք մայրաքաղաքը, Կրիսոս գերի ինկաւ եւ

241,500 Ֆր.ի կը հաւասարէր (— 10,626 օսմ. ոսկի)։ Այս հարկն՝ որ Կիաքսարայ Բ.ի կը վճարուէր, անտարակոյս Աժդահակայ ժամանակէն էր։

[1] Տես Քսենոփոն, Կիւրոսի խրատ, գիրք Բ. գլ. Դ. եւ գիրք Գ. գլ. Ա.։

[2] Դանիէլ մարգարէին գրքին մէջ՝ (գլ. Ե. 31 եւ գլ. ԺԱ. 1) Քսենոփոնին այս Կիաքսարն Դարեհ Մար կը կոչուի։

Digitized by Google

Լիւդացւոց պետութիւնն կործանեցաւ։ Այսու օրինակաւ՝ չորից պետութեանց դաշնակցութիւնն մահաբեր հարուած մը կրեց։ Կիւրոս կը պատրաստուէր Բաբելոնի վրայ արշաւել, ուր կը թագաւորէր Նաբունահիդ։ Եսայի (Ք. ա. 785—681) իբր երկու դար առաջ կ՚ըսէր. "Այսպէս ըսաւ Տէր Աստուած իւր օծելոյն Կիւրոսի, որուն աջ ձեռքէն ես բռնեցի՝ անոր առջեւ ամէն ազգերը հնազանդեցընելու եւ թագաւորաց գօտիները լուծանելու համար"։[1] Երեմիա՝ Երուսաղէմի կործանման ողբերգակ տեսողն (Ք. ա. 629—586), ամբարիշտ Բաբելոնի վրայ արեւելեան եւ հիւսիսային ազգերուն յարձակումը կանուխ ժամանակաւ նախատեսած էր, երբ կը գոչէր. "Դրօշ կանգնեցէք երկրի վրայ, ամէն ազգաց մէջ փող զարկէք. ազգերն անոր դէմ պատրաստեցէք. գումարեցէք անոր դէմ Արարատայ, Մինեայ[2] եւ Աշքենազայ[3] թագաւորութիւնները։[4] Մարական եւ պարսկական բանակաց հետ՝ ազգային այս երեք թագաւորութիւններուն զօրքն խաղացին գնացին Եհովայէն դատապարտեալ քաղաքին վրայ։ Տիգրան արքայորդին եւ Եմքաս

---

1 Եսայի, ԽԵ. 1։

2 Մանաա երկրին թագաւորութիւնն։

3 Կապուտան ծովուն հիւսիսակողմը՝ Վասպուրականի Անձախի-Ձոր գաւառին նախաւոր մանր թագաւորութիւնն։

4 Երեմիա, ԾԱ. 27. Մերս եօթանասնից թարգմանութիւնն ունի միայն "...այրարատեան թագաւորութիւններն եւ աշքանազեան գունդը"։

միշտ Հարմինիյապ-Արարատ երկրին զօրաց կը հրամայէին։ Ք. ա. 538 տարւոյն Թամմուզ[1] ամսոյ սկիզբն Կիւրոս ամբողջ դաշնակցաց զօրաց հետ Տիգրիս գետն անցաւ։ Բաբելոնի Թագաւորը զՆաբունահիդ Հռուտում քաղաքին քով զարկաւ եւ անոր յաղթեց։ Նոյն ամսոյն 14ին Կիւրոսի եւ դաշնակցաց զօրքն մտաւ Սիպար քաղաքը, եւ երկու օր վերջ ի Բաբելոն՝ առանց իրիք դիմակալութեան։ Նաբունահիդ նոյն իսկ իւր մարդիկներէն Կիւրոսին ձեռքը մատնուեցաւ, ու քանի մ'օր վերջ մեռաւ։[2] Տիգրան Ա. Բաբելոնական արշաւանէն փառօք իւր երկիրը դառնալով, հաւանականօրէն քանի մը տարի վերջ իւր հօրը մահուամբն՝ անոր յաջորդեց (Ք. ա. իբր 535—525)։ Իբր Թագաւոր ինչ գործ ըրաւ Տիգրան Ա.՝ ոչինչ գիտենք, ոչ սեպագիր արձանագրութիւններէն եւ ոչ ժամանակակից կամ գոնեայ ժամանակաւ մօտ հեղինակներէն։ Այս միայնստոյգ կ'երեւի թէ Կիւրոսի եւ Կամբիւսեայ ժամանակակից էր։ Երբ Կիաքսար Բ. անորդի մեռաւ, Մարաց եւ Պարսից թագաւորութիւններն միացան ընդ ձեռամբ Կիւրոսի (Ք. ա. իբր 535—529)։ Անտարակոյս Հարմինիյապայ թագաւորն թէ՛ Կիւրոսի եւ թէ՛ Կամբիւսեայ (Ք. ա. 529—522) վերին իշխանութիւնը կը ճանչնար։

1 Յունիս-Յուլիս։

2 Pinches, On a cuneiform inscription relating to the capture of Babylon by Cyrus, Հրատարակեալ ի Transactions of the Society of Biblical Archeology, Հար. Է. էջք 139—167։

Digitized by Google

Չունինք արդարեւ վաւերագիր ստոյգ, յորմէ կարենանք ապահովապէս գիտնալ Տիգրանայ Ա. յաջորդն որով անուամբ կ'անուանուէր։ Ընդունելով ապա Մ. Խորենացւոյ ցուցըցած Վահագնը (Ք. ա. իբր 525—518), կը ստիպուինք ցաւօք ըսել՝ թէ սա Արամեան հարստութեան վերջինն եղաւ։ Երբ Դարեհ Ա. Կիւրոսի աթոռը նստաւ (Ք. ա. 521—485), իւր պետութեան նահանգներուն մէջ ապստամբութեան եւ անկախութեան ոգին կը սպրդէր։ Քիչ մը վերջ՝ Պարսկաստան, Մարաստան, Շօշաստան եւ Բաբելաստան ոտք ելան, անոնց նմանեցան եւ այլ երկիրներ։ Արմ՛ինա[1] եւս ընդհանուր ախտէն բռնուելով, հաւանականապէս 520 տարին՝ մինչդեռ Դարեհ Բաբելոնը կը պաշարէր, ապստամբութեան դրօշը բացաւ։ Ստոյգ է որ Դարեհ Ա.ի Բագիստանի (Պիսիդուն) արձանագրութեան՝ Արմ՛ինայի մէջ թագաւորի մը գոյութիւնն անգիտանալ կը ձեւացընէ։ Սակայն վերագոյն յիշուած Ս. Գրոց Արարատայ թագաւորութեան եւ Քսենոփոնեայ “Հայազգի„ թագաւորի մը եւ Տիգրան արքայորդւոյն գոյութիւնն եւ գործողութիւնքն ծանրակշիռ ապացոյցներ մեզի կը մատակարարեն, որով կրնանք յապահովի ըլլալ չսխալելու՝ երբ ըսենք թէ Դարեհի Ա. գահակալութեան ատեն Արարատ-Արմ՛ինա ունէր իւր ազգային թագաւորը։ — Արմ՛ինայի զօրքն յապստամբու-

1 Հնոյն Հայաստանի համար նախ Դարեհէն Ա. գործածուած անուն։

թեան անդ նախ պաշտպանողական դրութիւն մ'առաւ, եւ յետոյ յարձակողականին ձեռք զարկաւ: Դարեհ Ա. Արմ'ինայի վրայ՝ ծննդեամբ արմ'ինացի եւ Դադարշիշ անուն զօրավար մը պարսիկ բանակաւ խաւրեց: 519 տարւոյն Ապրիլի վերջերը՝ առաջին ճակատամարտն Արմ'ինայի մէջ Զուզա[1] աւանին քով տրուած ըլլալով, Արմ'ինացիք յաղթեցին Պարսից: Դադարշիշ ետ քաշուելու ստիպուելով, ազգային զօրքն քալեց անոր բանակին վրայ: Արմանիյայի[2] Տիգրա[3] ամրոցին քով՝ առաջին ճակատամարտէն տասն օր վերջը տրուեցաւ երկրորդ ճակատամարտն, յորում Արմ'ինայի զօրքն դարձեալ յաղթող հանդիսանալով՝ Պարսից բանակն դարձեալ նահանջ գործելու ստիպուեցաւ: Յիշեալ տարւոյն Մայիսի վերջերը՝ դարձեալ Արմանիյայի մէջ՝ Ուհեամա[4] կոչուած մէկ ամրոցին քով Արմ'ինացիք Դադարշեայ զօրաց վերջին նուագ յաղթելով, զանոնք ազգային հողէն դուրս մերժեցին: Ըստ այսմ՝ մէկ ամսոյ մէջ արմ'ինական զօրքն պարսիկ զօրաց վրայ երեք յաղթութիւն կատարեցին:[5] Այս երեք

1 Հաւանականօրէն՝ Բզնունեաց ծովուն հիւսիսակողմը՝ Զարիշատ Աղիովաի:

2 Արմանիյա, այլ ընթերցուած Արմ'ինա անուան:

3 Թուի թէ այս ամրոցն Տիգրիսի արեւելեան ճիւղոյն ստորին կողմանքը կը գտնուէր:

4 Հաւանականապէս՝ Աղձնեաց նահանգին արեւելից հարաւակողմը կը գտնուէր այս ամրոցն:

5 Դարեհ Ա. այս երեք յաղթութիւնն իւր զօրաց կ'ընծայէ. սակայն հետագայ գործքն կը յայտնեն թէ իրքն պարսիկ զօրաց նպաստաւոր չէին եղած:

Digitized by Google

նշանաւոր յաղթութիւններէն քաջալերեալ, Արմ՚ինայի բանակն անցաւ ազգային հողոյն սահմանները, եւ սկսաւ դէպ ի Բաբելոն՝ նոյն իսկ Դարեհի Ա. վրայ քալել։ Սակայն բովանդակ անցելոյն փայլն ու փառքն Ասորեստանի հողոյն վրայ նսեմանալու որոշեալ էին։ Աճապարեց Դարեհ յաղթող բանակին դէմ զՎաւմիսա պարսիկն խաւրել, որուն հրամանատարութեամբն՝ Պարսից զօրքն Ասորեստանի Իզզիտոյ կոչուած վիճակին մէջ Արմ՚ինացւոց բանակին յաղթեց։ Այս ճակատամարտն 518 տարւոյն Յունուարի դէպ ի 5դ օրն եղած կ՚երեւի։ Արմ՚ինացիք նահանջ գործելու ստիպուելով, թուի թէ կորդուաց լեռնային կողմանքն եկած են։ Վաւմիսա անյապաղ չպնդեցաւ անոնց ետեւէն։ Այսուհանդերձ՝ յիշեալ տարւոյն Մայիսի երկրորդ տասնեկին վերջերն Արմ՚ինայի Աւտիյարա[1] վիճակին մէջ վերջին ու մահաբեր ճակատամարտն տրուեցաւ երկուստեք։ Ի պարտութիւն մատնեցան Արմ՚ինացիք։ Եւ Դարեհ Ա. իւր պետութեան մէկ նահանգն ըրաւ զԱրմ՚ինա։ Այսուօրինակաւ՝ Ուրարտուայ թագաւորութիւնն եւ Արամեան հարստութիւնն երեք դարէն աւելի տեւելէն վերջ՝ ինկան կործանեցան։

Բովանդակ վերոյգրեալքն գրեթէ ամբողջ ինը դարու պատմութիւն մը կը բովանդակեն (Ք. ա. 1410—518). պատմութիւն մը՝ զոր արդի քննադատութիւնն կ՚ընդունի իբր հաւաս-

---

1 Մեծի հաւանութեան է. որ "Աւտիյարա երկիրն" կորդուաց Այտուանք գաւառն էր։

տի, որովհետեւ գրեթէ ամբողջովին իրական եւ դրական վկայագրաց վրայ հիմնեալ եւ հաստատեալ է։ Այս պատմութիւնն մեր հայրենեաց համար արդարեւ փառաւոր է, եւ փառաւորագոյն յոյժ քան զոր ոմանք ի մերոց պատմագրաց մեզի աւանդել կը կարծեն։ Հոս կը տեսնենք իրաց եւ դիպաց միօրինակութիւն եւ գրեթէ անընդհատ յարակցութիւն։ Ազգային կացութեան ոգին կը յարուցանէ զԱրամիս. թէ՛ սա եւ թէ՛ իւր յաջորդքն նոյն ոգւով անդադար պատերազմելով այլամիտ ազգայնոց եւ օտարաց հետ, հնագոյն ժամանակաց Հայաստանը կը կազմեն այնպէս, ինչպէս զայն կը գտնենք Ք. Ե. Չորրորդ դարուն սկիզբները։ Եթէ մէկ կողմանէ Արամեան թագաւորք հնագոյն Հայաստանի հարաւոյ արեւմտակողմանքը չկըրցան Ասորեստանեայց լուծէն ազատել, միւս կողմանէ ի միջի այլոց սա առաւելութիւնն եւս ունեցան՝ որ անոնցմէ երբեքն իրենց յաղթող զէնքերը մինչեւ Կապպադովկիոյ արեւմտեան սահմաններն եւ մինչեւ Ասորւոց մօտ տարան՝ մեծաւ փառաւորութեամբ։ Նինուէի վայրենաբարոյ թագաւորաց պետութիւնն ամօթով անկաւ՝ այլ եւս չկանգնուելու պայմանաւ. այս անկման հանդիսատես եղաւ Արամեան հզօր հարստութիւնն. եւ եթէ սա եւս դա՛ր մ'ետքը կործանեցաւ, Արամիսի ոգին կարծես միշտ կը շրջէր իւր հայրենեաց հողոյն վրայ, եւ շնչեալ կ'ազդէր յաջորդ դարուց ազգային իշխանապետները։

Digitized by Google

Հաճութեամբ ապա եւ մխիթարութեամբ կը հայթայթենք ազգայնոց այս մեր նախնեաց պատմութիւնը, որուն յօրինման կը նպաստեն մէկ կողմանէ մեր ազգային բեւեռագիր վկայագիրներն, եւ միւս կողմանէ ասորեստանեան եւ պարսիկ սեպագիր արձանագրութիւնքն՝ զորոնք կը հրատարակենք աստէն։



## *Ասուրուբալլիտայ (Ք. ա. իբր 1410—1390) աշխարհակալութեան վրայօք*

## *Ադադնիրարի՝¹ Ա. Թագաւորին (Ք. ա. իբր 1350—1330) Վիմատախտակին արձանագրութենէն² հանեալ մասն.*

### Յառաջոյ կողմ.

1. Ադադնիրարի՝ շքեղաշուք իշխանն . . . .[3]

. . . . . . . . . . . . . . . . . .

27. . . . . . . . . . . . . Թուռնորդի

---

[1] Ըստ ոմանց Ռամմաննիրարի, որ չհամարի ուղիղ։

[2] Այս արձանագրութիւնը՝ որ զարդիս Բրիտանական Թանգարանին մէջ կը պահուի, Մուսուլի հարաւակողմն ի Քալ՛աթ-Շէրքաթ՝ հին Ասուր քաղաքին աւերակներուն տակ անգղիացի Գէորգ Սմիթ գտաւ. որ եւ կ՚ըսէ (Assyrian Discoveries, London. 1875, էջ 242 եւ հետ.) թէ Ասուր դից նուիրեալ մեհենի մը փլատակներուն մէջէն հանուած է այն։ Հրատարակեցաւ ի Cuneiform Inscriptions of Western Asia, հտր. Դ. տախտկք 44, 45։ Յետ՝ ի միջի այլոց, եւ ի հաւաքածոյս Եբերհարդայ Շրատէր՝ Keilinschriftliche Bibliothek, հտր. Ա. էջք 4–8։ — Արձանագրութեանս մէջ Ադադնիրարի՝ 1 տողէն մինչեւ 13դ տողին վերջին իւր վրան կը խօսի, 14դ տողէն մինչեւ 22դ տողն իւր հօրը Պուդիլայ գործերը կը յիշէ, 23դ տողէն մինչեւ 27դ տողին կէսն իւր հաւուն Բէլնիրարիայ աշխարհակալութիւնները կը յայտնէ. ապկէ մինչեւ 34դ տողին վերջն իւր հաւուն հօրը՝ Ասուրուբալլիտայ գործերը կը յիշէ։

[3] Լոկ կէտերն կը ցուցընեն թէ հոն գտնուած օտար նիւթերն թողուած են. իսկ այլուր ո՛ր եւ իցէ տեղ՝ կէտերուն հետեւող աստղանիշն կը յայտնէ թէ հոն արձանա-



Digitized by Google

28. Հզօր արքային Ասուրուբալլիտայ,
29. որուն քրմութիւնն տաճարներու մէջ
30. կատարեալ, եւ որուն թագաւորական բար-
ձրութիւնն [էր.
31. երկայն ժամանակ լերան մը նման կանգնուած[
32. որ ցանեաց ցրուեաց զզօրութիւն
33. լայնածաւալ Սուբարի[1] երկրին,
34. երկիր ու սահմաններ ընդարձակեց։

## *Սալմանասարայ Ա. (Ք. ա. իբր 1330—1310)*

## *Ուխտական Ափսէին արձանագրութիւնն*[2].

“Սալմանասար՝ .... արքայ Ասորեստանի, որդի Ադադնիրարիայ, .... որ տիրեց (երկրաց) .... Նիրիի[3], Լուլումիի, .... եւ Մուսրիի[4] ....„։

---

գրութիւնն եղծեալ է։ Սորագծեալ աշխարհագրական անուններն օտար երկրաց են։

[1] Ազգային մատենագրաց Ծոփաց աշխարհն՝ նուազ տարածութեամբ։ Վերոյիշեալ արձանագրութեան Յառաջոյ կողման 5դ տողին մէջ Սուբարի երկիր մ'եւս կը յիշուի, որ 4դ տողին մէջ Կասսի, Քուտի եւ Լուլումի երկրաց հետ յիշուած ըլլալուն համար, Ասորեստանի եւ Բաբելաստանի արեւելակողմը պէտք էր որ գտնուէր։ Նոյնն ըսել հարկ է Բաբելոնացւոց եւ Ասորեստանեայց ժամանակակցութեանց Տախտակին Ա. սեան 21դ տողին մէջ յիշուած Սուբարի երկրին վրայօք, զոր Ասորեստանի թագաւորն Բէլնիրարի (Ք. ա. իբր 1390—1370) եւ Բաբելոնացւոց թագաւորն Կուրիգալզու-Փոքր իրերաց մէջ կիսեցին։ Կատարեալ հաւանութեան է թէ այս Սուբարի անունը՝ նոյն երկրին ժողովուրդն հնագոյն ժամանակաց մէջ Նաիրեայ Սուբարիէն գաղթելով՝ հոն բերած էր։

[2] Տես G. Smith, Assyrian Discoveries, էջ 248։ Տես եւ Cuneif. Inscr. of West. Asia, հտր. Գ. 3, թիւք 3–5։ Տես եւ Hommel, Geschichte Babyloniens und Assyriens, Berlin, 1885, էջ 504։

[3] Հաւանականագոյնս՝ Նաիրի անուան սղումն է։

[4] Խորձեան գաւառին արեւմտակողմը։

Digitized by Google

## Սաղմանասարայ Ա. աշխարհակալութեանց վրայօք՝ Ասուրնածիրաբաղայ (Ք. ա. 885—860) Բեկեալ կոթողին արձանագրութենէն հանեալ մասն[1]

Սի-ն Գ. . . . . "Նոյն տարին[2], Սիվան[3] ամսոյն մէջ՝ Մուսրի երկրին հետ (°) ի . . . .*տեաւ նա„:

. . . . . . . . . . . . . . . . . .

"Նոյն տարին, նոյն (Աբ[4]) ամսոյն մէջ՝ Խանիրաբբատ[5] երկրին Շանգէրա (°) քաղաքը կործանեց նա: Իգգիշխա քաղաքը՝ որ Կասիարի[6] լերան սառրոտն (°) է, Իրի քաղաքը՝ որ Կիրխուի[7] մարդկան երկրին վիճակին մէջն է, աւարեց (°) նա„:

. . . . . . . . . . . . . . . . . .

"Իլու-իդդինայի անուանակիր տարւոյն[2] Կիսլեվ[8] ամսոյն մէջ արշաւանք յերկիրն Արիմի. [Կասի°]արի երկրին Գալբուրիսի քաղաքին մէջ պատերազմեցաւ նա„:

. . . . . . . . . . . . . . . . . .

1 Տես Hommel, Geschichte Babyl. und Assyr., Berlin, 1885, էջք 505–507: Cuneif. Inscr. of West. Asia, III. 4, Nr. 1. Pinches, Guide to the Kuyandjik Gallery. London, 1884, էջ 122:

2 Չէ յայտ թէ որ տարին է:

3 Մայիս—Յունիս:

4 Յուլիս—Օգոստոս:

5 Այս է "Խանի-մեծ„: Կապպադովկիոյ արեւելակողմն երկիր մը, յորում էր Մելիտինէ:

6 Այս լեռն միջին Արածանւոյ ձախակողմն՝ Անտիտաւրոս լեռն է: Կասիարի կը կոչուէր նաեւ յոյն մատենագրաց Մասիոն լեռն, այսինքն է արդի Գարաճա լերան շղթայն, որ զհին Հայաստան կը բաժնէր Միջագետքէն:

7 Այլուր՝ Կուրխի, Կիրխի եւ Կիրխու երկիր. որ Աղձնեաց մէջ՝ Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն ձախակողմէն սկսեալ կը ձգէր մինչեւ Կորդուաց արեւելակողմը, եւ մասամբ եւս կը վերանար դէպ ի Տարօն գաւառն:

8 Նոյեմբեր—Դեկտեմբեր:

Digitized by Google

## Սաղմանասարայ Ա. գործոց վրայօք՝ Ասուրնածիրապալ թագաւորին (Ք. ա. 885—860) Տարեգրութիւններէն հանեալ մասն[1].

Սէ–ն Ա. . . . . . 101 . . . . Նոյն անուանակիր
տարին[2] եւ իմ Նինուէ եղած ատենս՝ բերին
102. լուր թէ արք Ասորեստանեայք ե– Խուլայի՝
անոնց քաղաքապետն, զորոնք Սաղմանասար
Ասորեստանի թագաւորն՝ ինձմէ առաջ թա-
գաւորող իշխան մը,
103. Խալզիդիպխայի[3] մէջ բնակեցուցած էր, ապըս-
տամբեցան, ե–ն:

## Սաղմանասարայ Ա. գործոց վրայօք՝ Ասուրնածիրապալ թագաւորին (Ք. ա. 885—860) Մենաքարէն հանեալ մասն.[4]

43. ...Սինաբու, Տիդու .....* բերդաքաղաք-
ները՝ որոնց մէջ
44. Ասորեստանի թագաւորն Սաղմանասար՝ իմ
պերճափայլ նախորդս, Նաիրիի դէմ բնակիչ-
ներ հաստատած էր ե– զորոնք Արումու երկրին
մարդիկն բռնութեամբ կորզած էին,
45. Իմ իշխանութեանս դարձուցի:

---

1 Տես Cuneif. Inscr. of West. Asia, Հտր. Ա 17–26, եւ աստէն ի վայր:

2 Իւր կառավարութեան երկրորդ տարին՝ այսինքն Ք. ա. 883: Ասորեստանի թագաւորաց գահակալութեան տարին իրենց "տէրութեան սկիզբն" կը կոչուէր. իսկ հետեւեալ տարին "կառավարութեան առաջին տարին" կ'անուանուէր:

3 Հաշտեանք գաւառ:

4 Տես Cuneif. Inscr. of West. Asia, Rawlinson. III. 6, եւ աստէն ի վայր:

Digitized by Google

## *Թագղաթադարայ Ա. (Ք. ա. իբր 1310—1270) Խեցեղէն Տախտակին արձանագրութիւնն*[1]

### Յառաջոյ կողմն

1. ....* Թագղաթադար՝ ժողովրդոց Թագաւոր, որդի Սաղմանասարայ, արքային Ասորեստանի,
2. որ Կարդու[2] երկրին (տիրեց°)։ Ով որ իմ գրութիւնս, իմ անունս կ'այլայլէ,
3. Ասուր Է-Ռամման անոր երկիրն ապականեն։...

## *Ասուրրիսիսիայ (Ք. ա. իբր 1130—1108) Խեցեղէն Տախտակին Տարեգրութիւնքն*[3]

### Յետոյ կողմն

. . . . . . . . . . . . . .

20. ....* զլայնածաւալն, եւ Ադա՛ուս[4] երկիրը
21. ....* նուաճեցի.
22. ......* անոնց վրայ դրի։ . . . . . .

---

1 Cuneif. Inscr. of West. Asia, III. 4, Nr. 2. — Eb. Schrader, Keilinschriftliche Bibliothek, Հատ. Ա, էջք 10–11։

2 Կորդուաց աշխարհ։

3 Այս Տախտակն՝ զոր Գ. Սմիթ գտած եւ իւր Assyrian Discoveries գրոց 232 էջին մէջ հրատարակած է, մեծապէս եղծեալ վիճակի մը մէջ ըլլալով՝ 31 գծով հատակոտոր մը կ'ընծայէ մեզի, սակէ մեր նիւթոյն վերաբերեալ վերագոյն յառաջ բերուած մասը կ'առնունք։ — Տես G. Smith, անդ. — Hommel, Geschichte Babyl. und Assyr., Berlin 1885, էջք 511–512։

4 Կորդուաց Այտուանք գաւառն։

## *Թագղաթփաղասար Ա (Ք. ա. 1108—իբր 1080) Հատուածակողման արձանագրութիւնն*[1]

Սիւն Ա. 1 Ասուր՝ տէրն մեծ, . . . .
2. Բէլ՝ տէրն, բոլոր Անունակիներու թագաւորն,
. . . . . . . . . . . . . . .
13. Խատար՝ սատուածոց մէջ վեհուհին, պատերազմի տիրուհին,
14. որ ճակատամարտերը կը յարդարէ,
. . . . . . . . . . . . . . .
28. Թագղաթփաղասար՝ հզօր թագաւոր,
29. ....աշխարհիս չորից կողմանց թագաւոր,
30. ....տէր տէրանց, թագաւոր թագաւորաց,
31. վեհագոյն քուրմ, . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . .
51.. . . . . . . . . երկիրներ, լեռներ,

---

[1] Արձանագրութեանս բնագիրն ութիչեան չորս հատ խեցեղէն հատուածակողմանց (գղ. prisme) վրայ փորագրուած է։ Այս հատուածակողմանք՝ Ասուր դից նուիրեալ մեծ տաճարի մը չորս անկիւններուն հիմանց մէջ գտնուեցան։ Տաճարն՝ Տիգրիսի աջակողման ափանց վրայ՝ Մուսուլի մօտ, դէպ ի հարաւ, մեր օրերը Քալէաթ-Շէրքաթ կոչուած տեղն գտնուող փլատակներուն վայրն կը գտնուէր։ Հատուածակողմանք զարդիս ի Լոնտոն Բրիտանական Թանգարանին մէջ կը պահուին։ Չորս հատուածակողմանց երկուքն ամբողջ եւ անթերի մնացած են։ — Բնագրոյն մէկ օրինակը 1861 տարին հրատարակեց Հ. Րաւլինսըն ի Cuneif. Inscr. of West. Asia, I. 9–16 Առաջին թարգմանութիւնն հրատարակեցաւ 1857 տարին ի Journal. of the Royal Asiatic Society, XVIII. pp. 150—219. յետոյ այլեւայլ թարգմանութիւնք ի լոյս ընծայեցան. լաւագոյններէն մին է այն՝ զոր Եբ. Շրատէրայ Keilinschriftliche Bibliothek, Berlin 1889, հտր. Ա. 15–47 էջերուն մէջ հրատարակած է ուսուցիչն Հուգոն Վինքլէր։ Այս էջերուն դիմացը տառադարձեալ բնագիրն դրուած է՝ ինչպէս այս՝ նոյնպէս միւս արձանագրութեանց.

Digitized by Google

52. *քաղաքներ եւ Ասուրայ թշնամի թագաւոր-*
53. *նուաճեցի, անոնց երկիրները* [*ներ*
54. *հպատակ կացուցի։ Վաթսուն թագաւորներու*[
55. *պատերազմեցայ* . . . . . . . . [*հետ*

. . . . . . . . . . . . . . . .

60. . . . . . . . *իմ երկրիս սահմանները*
61. *ընդարձակեցի, անոնց բոլոր երկիրներուն տի-րեցի։*
62. *Թագաւորութեանս սկիզբն՝* 20,000 *այր*
63. *Մու—ուշուցիք*[1] *եւ իրենց թագաւորներէն* 5*ն՝*
64. *որոնք* 50 *տարի տիրած էին Ալզիին*[2]
65. *եւ Պուրուկուզզիին,*[3] *որոնք հարկ*
66. *ու տուրք կը բերէին Ասուրայ՝ իմ տեառնս,*
67. *եւ զորոնք բնաւ թագաւոր մը ճակատամար-տի մէջ*
68. *նկուն չէր ըրած, իրենց զօրութեան*
69. *վստահացան, իջան վար եւ Քու—մմու—խի*[4]
70. *տիրեցին։* Ի *ծառայութեան Ասուրայ՝ իմ տեառնս,*
71. *պատերազմիկ կառքերս եւ զօրքս ժողվեցի,*
72. *ապագայ ժամանակին չսպասեցի* (°). Կասիարա[5] *երկիրը*
73. *դժուարագնաց տեղի մը՝ կտրեցի անցայ.*

---

1 Ս. Գրոց Մոսոքն եւ ազգային արձանագրութեանց Մուսասն, որոնց երկիրն յետոյ գրեթէ ամբողջովին Փոքր Հայք կոչուեցաւ։

2 Եկեղեաց գաւառ, Հայաստանի արեւմտեան սահմանագլուխը։

3 Բալահովիտ գաւառ, Հայաստանի արեւմտեան կողմը։

4 Կոմագենէ յոյն եւ լատ. մատենագրաց, որ Եփրատայ արեւմտեան եզերաց վրայ էր՝ Մելիտայ վիճակին կից եւ անոր հարաւակողմը։ Օտար երկրաց անունները նոտրագիր կը գրենք գրեթէ միշտ։

5 Յոյն մատենագրաց քով Մասիոն կոչուած լեռնաշղթայն, ի մասնաւորի՝ անոր արեւմտեան մասն։ Այս լեռնաշղթայն Նաիրեայ ժողովուրդները Միջագետքէն կը բաժնէր։

Digitized by Google

74. անոնց 20,000 զօրաց
75. եւ 5 թագաւորաց հետ Կու-մմու-խայ մէջ
76. պատերազմեցայ եւ անոնց յաղթեցի։
77. Իրենց զօրաց դիակները [կործանեցի,
78. փոթորիկի մը պէս ուժգին յարձակմամբ յերկիր[
79. արիւններն ի ծործորս
80. եւ ի բարձունս լերանց վազել տուի.
81. անոնց գլուխները կտրեցի,
82. Եւ զանոնք իրենց քաղաքներուն քովերը
ջարու-ի[1] պէս սփռեցի։
83. Անոնց աւարը, բոլոր ինչք ու ստացուածքնին
84. մեծաւ քանակութեամբ առի տարի. 6000
անձինք՝
85. անոնց զօրաց մնացորդները՝ որոնք յերեսաց
86. զինուցս փախած էին եւ ոտքերուս
87. փարուեցան, ինծի հետ մէկտեղ առի տարի,
88. Եւ զանոնք իմ երկրիս բնակչաց կարգը դա-
սեցի։
89. Նոյն ժամանակ անհնազանդ Կու-մմու-խայ վրայ՝
90. որ Աշուրայ իմ տեառնս տուրք եւ հարկ տալ
91. կը զլանար, քալեցի. Կու-մմու-խայ
92. իւր տարածութեամբը տիրեցի.
93. անոնց աւարը, անոնց ինչքը, անոնց դոյքը
94. Հանեալ տարի. անոնց քաղաքները կրակով
Սէ-Ն Բ, 1. այրեցի, աւերեցի, քանդեցի
Մնացորդք
2. Կու-մմու-խայ՝ որոնք զինուցս երեսէն
3. փախած էին, ի Սիրիսի[2]
4. որ Տիգրիսի անդիի եզերքն է,
5. անցած էին եւ քաղաքն իրենց ամրոց
6. ըրած էին։ Պատերազմիկ կառքերս եւ պա-
տերազմողներս [շաւիղս այնոցիկ
7. առի, ընդ դժուարին լերինս եւ ընդ նուրբ[

---

[1] Թերեւս գրաբարին "գարի" բառն։

[2] Հաւանականօրէն՝ Տիգրիսի արեւմտեան ճիւղին ձախակողմը։

Digitized by Google

8. առլեփս՝ պղնձի տապարներով (°) կտրեցի՝ ան-
9. դաշտը բռնեցի վասն խաղացից [ցայ.
10. պատերազմիկ կառացս եւ զօրացս։
11. Տիգրիս[1] գետն անցայ։ Սիրիսի՝
12. իրենց բերդաքաղաքին՝ տիրեցի.
13. անոնց պատերազմողներն անտառներու մէջ
14. շուշմայի պէս սփռեցի (°).
15. արիւննին Տիգրիսի մէջ եւ լերան բարձանց[
16. հոսեցուցի։ Նոյն ժամանակ՝ զզօրս [վրայ
17. Կուրխի երկրին՝ որոնք յաղատութիւն
18. եւ ի Թիկունս օգնականութեան Քումմուխայ
19. եկած էին, հանդերձ զօրօք
20. Քումմուխայ խոյ մեքենայի պէս առաթուր
կոխեցի։
21. Անոնց պատերազմողաց դիերը շեղջ շեղջ
22. լերանց թաւուտ տեղեաց մէջ դիզեցի.
23. անոնց պատերազմողաց դիակները Նամի գետէն
24. Տիգրիսի մէջ սահիլ երթալ տուի։
25. Զկիլիանտիրու՝ զորդի Կալիանտիրուայ,
26. որ Սարուպի կը կոչուէր,
27. անոնց թագաւորը՝ պատերազմի մէջ ձեռքովս
28. գերի բռնեցի. անոր կանայքը, անոր որդիքը,
29. անոր շառաւիղները, գոյքը, 180
30. կշիռ անագապղինձ, 5 պղնձի կոնք (°)
31. անոնց աստուածներովը հանդերձ, ոսկի եւ
արծաթ, [հանեցի.
32. իրենց ընչից լաւագոյն մասն անոնցմէ կորզեալ[
33. աւարնին, ստացուածքնին առեալ տարի։
34. Նոյն քաղաքն եւ անոր պալատը հրով
35. այրեցի, աւերեցի, քանդեցի։
36. ԶՈւրարտինաս՝ իրենց բերդաքաղաքը,
37. որ Պանարի լերան վրայ է,
38. երկիւղն՝ որ Աշուրայ իմ տեառնս սարսափելի
շողիւնէն կը զարհուրի,
39. նկուն ըրաւ. ազատելու համար

[1] Այսինքն Տիգրիսի արեւմտեան ճիւղը։

40. իրենց կեանքը՝ իրենց ստացուածներն առին,
41. բարձրաբերձ լերանց թաւուտտեղուանքը փախան
42. Նմանթուշնոց։ Անցուցի պատերազմիկ կառքերս
43. ու զօրքս Տիգրիսի վրայէն։
44. Սադիանտիրու՝ որդի Խատտուխեայ, արքայ
45. Ուրարտինայ, տակաւին ես չհասած
46. իւր երկիրը՝ ոտքերուս փարուեցաւ.
47. որդիքը, իւր շառաւիղներն եւ իւր գերդաստանը
48. պատանդ առի։
49. — 60 կշիռ անագապղնձ, մեծ կոնք (°) մը
50. եւ Նուիրման համար պղնձի մեծ տաշտ (°) մը,
51. այլ եւ 120 ստրուկ, եզ,
52. օդիք եւ այծիք իբր տուրք ու հարկ
53. բերաւ. զանոնք ընդունեցայ, անոր խնայեցի,
54. կեանքն անոր շնորհեցի։ Տիրապետութեանս ծանր լուծը
55. Մնացեալ աւուրց համար անոր վրան դրի։
56. Լայնատարած Քումմուխ երկրին՝ բոլոր ընդարձակութեամբը
57. տիրեցի, զայն նուաճեցի։

. . . . . . . . . . . . . . .

63. Հզօր զինուցս սաստկութեամբն՝ որովհետեւ Ասուր տէրն [հած էր,
64. (ինծի) ճոխութիւն ու մեծաշուք փառք շնոր-
65. — 30 պատերազմիկ կառքերովս՝ որք երթային առ
66. իմոյս ճոխութեան (°), առի զօրքս
67. որոնք պարտութեան կը տրիպեն ....*,
68. ապստամբ Միլդիս[1] երկրին վրայ քալեցի՝
69. ի վերայ անսաստին։ Անցայ ընդ լերինս
70. ահագինս եւ դժուարագնաց երկիրս

[1] Եբ. Շրատէր զՄիլդիս “Հայացի երկիր„ կ'անուանէ ի Keilinschriften und Geschichtsforschung, Giessen 1878, էջ 269. տեղն հաւանականօրէն Ծոփաց աշխարհին մէջ էր։

Digitized by Google

71. իմ մարտակառքիս մէջ՝ ցորքան ճամբայն անցանելի էր, եւ հետիոտս՝ դժուարին տեղուանքը։
72. Արումա[1] լերան վրայ՝
73. որ առլեփ տեղ մըն է, եւ իմ պատերազմի կառացս գնացքին [թողուցի.
74. անյարմար էր, պատերազմիկ կառքերս ետեւ[
75. զօրացս առջեւն անցայ, [լերինն
76. քաջասիրտ դիւցազնի (°) մը նման՝ ի թաւուտս[
77. սեպոյ յաղթանակաւ խաղացի գնացի։
78. Միլդիս երկիրն աւերակաց կոյտի մը նման կործանեցի.
79. անոր մարտիկները ճակատամարտին մէջ
80. խոյ մեքենայի պէս զարկի. անոնց աւարը,
81. բովանդակ ինչք ու ստացուածքնին կորզելով հանեցի.
82. անոնց ամէն քաղաքները հրով այրեցի.
83. պատանդներ, տուրքեր ու հարկեր
84. անոնց վրայ դրի։
85. Թագլաթփալասար՝ քաջ դիւցազնն,
86. որ լերանց արահետները կը բանայ,
87. հեստեայները կը նուաճէ, կը վանէ
88. ամէն ըմբոստները,
89. ապստամբ, հեստեալ Սուբարին
90. նուաճեցի. Ալզի [տուրքերն
91. եւ Պուրուկուզզի երկիրներն՝ որոնք իրենց[
92. ու հարկերը զլացած էին, [դրի։
93. իմ իշխանութեանս ծանր լուծն անոնց վրայ[
94. Իւրաքանչիւր տարի պարտաւոր էին տուրք ու հարկ
95. իմ Ասուր քաղաքս՝ իմ առջեւս [ձայն,
96. բերել։ Իմ դիւցազնական զօրութեանս համա-
97. սրովհետեւ Ասուր տէրն զօրաւոր զէնք մը՝ կարճող
98. անսաստից՝ տուած էր իմ ձեռքս,

[1] Այս լեռը Ծոփաց աշխարհին արեւմտակողմը պէտք է որոնել։

99. իւր երկրին սահմաններն ընդարձակել հրամա-
100. — 4000 կասկայք[1] [յեց:
101. եւ Ուրումայիք,[2] զինուորք Խատտացւոց[3]
102. անսաստից, որոնք իրենց ժպրհութեամբն
Սիւն Գ. 1. Սուբարտիէն[4] քաղաքներ՝ որոնք
2. Ասուրայ իմ տեառնս հպատակ էին՝ առած էին,
3. իմ դէպ ի Սուբարտի արշաւանացս լուրն առին.
4. իմ դիւցազնական զօրութեանս սարսափն զա-
նոնք յերկիր կործանեց.
5. պատերազմելէ վախցան, ոտքերուս
6. փարուեցան:
7. Իրենց ինչքերովն եւ 120 [րովն
8. մարտակառքերովն, իրենց ձիերուն հարկիքնե-
9. զանոնք առի տարի, ի կարգ արանց
10. իմոյ աշխարհիս դասեցի:
11. Դիւցազնական զօրութեանս սաստկութեամբն՝
երկրորդ անգամ
12. Քումմուխայ վրայ արշաւեցի. ամէն
13. անոր քաղաքներուն տիրեցի . . . .

. . . . . . . . . . . . . . .

39. Ասուրայ՝ իմոյ տեառնս՝ բարձր զօրութեամբն
40. Խարիա[5] երկրին վրայ եւ ընդդէմ զօրաց

---

[1] Ուրիշ տեղեր “կասկիք, կասկու, կասկայ„: Սոքա էին Խալդիք = Խալտիք, որոնցմէ անջատեալ մասունք էին Կողքիսի եւ Թերմոդոն գետոյն աջակողմը Խալդիբաց ժողովուրդքն:

[2] Ուրումայա: Թուի թէ Ուրումա՝ որ եւ Ուրումի, Արիմի, Արիմաի՝ Մեծ Ծոփաց արեւմտակողմը վիճակ մըն էր: Տես Ասուրնածիրաբալայ Տօրէկրօ-Բէ-Ն, Բ. 13, եւ անոնց այլափոխ ընթերցուածն, 44, 45, Բէլխալ Կոթող, Գ, եւ Շամ-սիռամմանայ Հարթ Կոթող, Գ. 51:

[3] Խատտացիք (= Քետացիք) կամ Խատտիք (= Հիտտիտք) Ասորւոց Որոնտ գետոյն աջակողմէն՝ մինչեւ Մելիտինոյ վիճակին հիւսիսակողմը տարածուած ժողովուրդ մըն էր:

[4] Սուբարի անուան այլափոխ ձեւն:

[5] Այս վիճակին Կորդուաց աշխարհին արեւմտակողմը պէտք էր որ ըլլայ. զայս կը ցուցընէ 70դ տողին մէջ տես-

Digitized by Google

41. լայնատարած Կուրխիայ՝ արշաւեցի։ Ընդ ան-
տառուտ լերինս
42. բարձունս՝ որոնց մէջ երբեք թագաւոր մը
43. ոտք չէր կոխած, Ասուր տէրն հրամայեց որ
քալեմ անցնիմ։
44. Մարտակառքերս եւ զօրքս ժողվեցի.
45. ընդ լերինս Իդնի
46. եւ Այա՝ տեղիս դժուարագնացս՝ քալեցի,
47. բարձրաբերձ լեռներ, որոնք դաշոյնի մը սայրին[
48. սուր՝ է— պատերազմիկ կառացս համար [պէս
49. անյարմար էին. մարտակառքերս պատնէշներու
մէջ դրի,
50. սեպ լեռներու մէջէն խաղացի գնացի։
51. Բոլոր Կուրխի երկիրն
52. իւր բազմաթիւ զօրքը գումարեց.
53. ի զէն վառեցան ի տալ մարտ պատերազմի
54. Ազուտաբգիս լերան վրայ։ Զարնուեցայ.
55. անոնց հետ նոյն լերան վրայ՝ որ դժուարագնաց
տեղ մըն էր,
56. պատերազմեցայ, անոնց յաղթեցի։
57. Անոնց պատերազմողաց դիակները լեռներու[
58. շեղջ շեղջ դիզեցի. [բարձանց վրայ
59. անոնց զօրաց արիւնն ի ձորձորս եւ ի բարձունս
60. լերանց հոսեցուցի. ի վերայ քաղաքաց՝
61. որոնք լերանց մացառուտ տեղուանքը կը գրա-
նուէին, սաստկութեամբ
62. դիմեցի։ Խարիա երկրին մէջ 25 քաղաքաց՝
63. որոնք ի ստորոտս Այա, Սուիրա, Իդնի,
64. Սիզու, Սիլգու, Արզանիբիու,
65. Ուրուսու եւ Անիտկու լերանց [ներս,
66. կը գտնուէին, տիրեցի, անոնցմէ բռնած գերի-
67. բոլոր ինչք ու ստացուածքնին առի տարի.

---

նուած Ադաւս = Այսուանք վիճակին անուան յիշատակու-
թիւնն։

1 Կորճեայք կամ Կորդուաց աշխարհ։

Digitized by Google

68. իրենց քաղաքները հրով այրեցի,
69. աւերեցի, քանդեցի։ [յարձակումէն
70. Ադաուս երկրին մարդիկն ճակատամարտիս հզօր[
71. վախցան եւ իրենց տեղերը թողուցին
72. բարձր լերանց թաւուտ տեղերուն մէջ
73. թռչնոց պէս փախան։ Ասուրայ՝ իմ տեառնս՝[
74. զանոնք յերկիր կործանեց. [պայծառութիւնն
75. վար իջան է— ոտքերուս փարուեցան։
76. Անոնց վրայ տուրքեր ու հարկեր դրի։
77. Շարաուս եւ Ամմաուս երկիրները՝ [թիւն
78. որոնք հին ժամանակներէ ի վեր հպատակու-
79. չէին ճանչնար, աւերակներու բլրոյ մը նման
80. կործանեցի։ Անոնց զօրաց հետ
81. Արամու[1] լերան վրայ պատերազմեցայ,
82. անոնց յաղթեցի. զդիակս
83. պատերազմողաց նոցա շուշմայից պէս
84. գետինը սփռեցի։ Անոնց քաղաքներուն տիրեցի.
85. իրենց ստացուածներն առի տարի. անոնց գերի-
86. ինչք ու ստացուածքնին հետս տարի. [ները,
87. իրենց քաղաքները հրով այրեցի,
88. աւերեցի, քանդեցի. զանոնք փլատակներու
բլրոց եւ խոպան երկրի
89. նման ըրի. տիրապետութեանս լուծը դրի
90. անոնց վրայ. Ասուրայ՝ իմ տեառնս՝ զանոնք
91. հպատակ կացուցի։
92. Իսուա[2] է— Դարիա[3] երկրաց ապստամբաց
93. անսաստից տիրեցի, տուրքեր
94. ու հարկեր վրանին դրի, [ցուցի։
95. Ասուրայ՝ իմ տեառնս՝ զանոնք հպատակ կա-

---

1 Կորճէից մէջ լեռ մը, զոր վերագոյն (տես Բ. 72) յիշուած Արումա լերան հետ պէտք չէ շփոթել։

2 Արածանւոյ ստորնագոյն կողմանց ձախակողմը վիճակ մը, յորում էր Ինզիտի (= Հանձիթ)։ Տես Սաղմանասարայ Բ. Մէնոտօր, Բ. 42։

3 Հաշտենից հարաւակողմը։ Ըստ ազգային արձանագրութեանց՝ Դիրա։

Digitized by Google

*Ստորին Զաւ գետոյն ձախակողմը արշաւանք:*

Սէ-ն Գ. . . . . . . . . . . . . . .

7. Ասուրայ՝ իմ տեառնս՝ զօրութեան լրութեամբն
8. Կիրխի[1] երկրին մէջ գտնուող Սուգի երկրին
վրայ՝ որոնք չէին հպատակիր
9. Ասուրայ՝ իմ տեառնս՝ քալեցի: Ընդ 6000
10. զօրս նոցա Խիմի, Լուխի,
11. Արիրգի, Ալամուն, [կիրներուն հետ
12. Նիմնի[2] եւ բովանդակ լայնատարած Կիրխի եր-
13. Խիրիխի[3] լերան վրայ (պատերազմեցայ),
14. դժուարին տեղ մը՝ որ դաշունի մը սայրին պէս
15. սուր էր. բոլոր անոնց երկիրներուն հետ
16. հետախոսս կռուեցայ,
17. անոնց վրայ յաղթութիւն կատարեցի:
18. Անոնց պատերազմող զինուորները լերանց մա-
19. կուտեցի ի կոյտս. [ցառուտներուն մէջ
20. անոնց մարտիկներուն արեամբը Խիրիխա լեռն
21. սարի (°) պէս ներկեցի: [րեցի.
22. Սուգի երկրին՝ իւր ընդարձակութեամբը տի-
23. անոնց աստուածներէն 25ը, անոնց գերիները,
24. անոնց ինչքն ու գոյքը առի տարի:
25. Անոնց ամէն քաղաքները հրով
26. այրեցի, աւերեցի, քանդեցի:
27. Անոնց զօրաց մնացորդներն ոտքերուս
28. փարուեցան. անոնց թողութիւն շնորհեցի.
29. անոնց վրայ հարկեր ու տուրքեր
30. դրի, ի հպատակս
31. Ասուրայ՝ իմոյ տեառն՝ դասեցի զանոնք:
32. Նոյն օրերը՝ այն երկիրներուն 25 աստուածները

---

[1] Ասուրագիտաց մեծագոյն յոյժ մասին հետ այսպէս պէտք է կարդալ: Կիրխի՝ Կուրխի կամ Կիրխու երկրին անուան այլափոխ մէկ ձեւն է:

[2] Տարօնոյ մօտ փոքր վիճակ մը պէտք էր ըլլար:

[3] Տարօն եւ Հարք գաւառաց մէջ՝ Քարքէ լեռն



Digitized by Google

33. իմ ձեռացս տիրած աւարները՝
34. զորոնք առած տարած էի, իբր նուէր մեհենին Բիլիտայ՝[1] [սիրեցելոյն,
35. Ասուրայ՝ իմ տեառնս՝ մեծարոյ ամուանոյն Է-
36. Անուայ, Ռամմանայ, Ասուր (.քաղաքին) Իս-
37. իմ Ասուր քաղաքիս աստուածներուն [տարայ,
38. եւ իմ երկրիս դիցուհիներուն
39. ընծայ ըրի։
40. Թագղաթփաղասար հզօր թագաւոր,
41. թշնամեաց երկիրներուն տիրող, պատերազմող
42. բոլոր բովանդակ թագաւորաց հետ։
43. Նոյն օրերը . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

49. հեռաւոր թագաւորաց երկիրներուն վրայ՝
50. վերին ծովուն[2] եզերքը՝
51. որոնք հպատակութիւն չէին ճանչնար,
52. Ասուր տէրն խրկեց զիս, Ե-ես խաղացի գնացի։
53. Դժուարին նուրբ շաւիղներէն եւ կիրճերէն՝
54. զորոնք յառաջագոյն .
55. երբեք թագաւոր մը չէր տեսած,
56. սեպ ճամբայներէն, զառիվերներէն՝ [տուի։
57. որոնք չէին բացուած՝ (զօրաց) խաղալ գնալ [
58. Իլամս, Ամադանա, Իլխիս,
59. Սիրա-բի(°)լի, Տար(°)խունա,
60. Տիրկախուլի, Կիսրա,
61. Տար(°)խանա-բի(°), Իլուլա,
62. Խաստարաի, Շախիշարա,
63. Ուբիրա, Միլիադրունի,
64. Սուլիանզի, Նուբանասի
65. եւ Սիսի 16 ահագին լեռները[1]

---

1 Բիլիտ կը թարգմանուի "Տիրուհի", եւ Բիլ = Բէլ անուան իգական ձեւն է։

2 Բզնունեաց կամ Վանայ ծովն։

3 Աղձնեաց եւ Ծոփաց աշխարհին մէջ պէտք էր որ ըլլային այս լեռներն. եւ Ամադանա թերեւս Ամիդի (Ամիտ) քաղաքին վիճակին մէջն էր։

Digitized by Google

66. կտրեցի անցայ, դիւր տեղուանքը՝ իմ մարտա-
կառքիս մէջ, խոլ դժուարին տեղուանքը
67. պղնձի բրիչներով(°) ուղղեցի։
68. Լերանց ո—ը——մ ծառերը մէկդի վերցուցի.
69. կամուրջս վասն խաղացից
70. զօրաց իմոց շինել ետու. [գաւորն,
71. Եփրատի[1] վրայէն անցայ։ Նիմմի[2] երկրին Թա-
72. Տունու-պի(°) երկրին Թագաւորն, Տուալի եր-
կրին Թագաւորն, [Թագաւորն,
73. Կիդարի երկրին Թագաւորն, Ուզուլա երկրին[
74. Ունզամունի երկրին Թագաւորն, Անդիաբի եր-
կրին Թագաւորն, [կրին Թագաւորն,
75. Պիլաքինի երկրին Թագաւորն, Ատուրգինի եր-
76. Կուլի-բար(°)զինի երկրին Թագաւորն, Սինի-
բիրնի երկրին Թագաւորն, [Թագաւորն,
77. Խիմուա երկրին Թագաւորն, Պաիտիրի երկրին[
78. Ուիրամ երկրին Թագաւորն, Սուրուրիա երկրին
Թագաւորն, [Թագաւորն,
79. Աբաինի[3] երկրին Թագաւորն, Ադաինի երկրին[
80. Կիրինի երկրին Թագաւորն, Ալբայա երկրին
Թագաւորն, [Թագաւորն,
81. Ուգինա երկրին Թագաւորն, Նազաբիա երկրին[
82. Աբարսիունի երկրին Թագաւորն, Դաիաինի[4]-
երկրին Թագաւորն,
83. Նաիրիայ երկիրներուն ամբողջ 23 Թագաւոր՝

---

[1] Այս է Արածանի, արդի "Մուրատ-Չայ" գետն։

[2] Այս վիճակն Արածանւոյ հիւսիսակողմն եղած ըլլալով, Թագղաթփաղասարայ Ա. Հոփոտոծախողման (Դ. 12) Նիմմի վիճակին հետ զայն շփոթելու չէ։ Նիմմի վիճակն Ասուրնածիրաբալայ Տոբեկրոլեանց մէջ (Ա. 46, 54) Նումմի կոչուած է։

[3] Ցուրսւթերանի մէջ՝ արեւելից հիւսիսակողմն Ապահունեաց վիճակն։

[4] Մեր ազգային արձանագրութեանց Դիաւ'ուխինի (— երկնից-որդւոց, դից —) վիճա'կն, որ Արածանւոյ վերնակողմն եւ աջ եզերաց վրայ պէտք էր որ ըլլար։

84. իրենց երկիրներուն մէջ պատերազմիկ կառքեր-
85. եւ զօրքերնին ժողվեցին, [նին
86. պատերազմ ու ճակատ տալու
87. յառաջացան: Հզօր զինուցս սաստկութեամբն
88. զանոնք ճնշեցի.
89. անոնց բազմաթիւ զօրաց մէջ՝
90. Ռամմանայ ամպրոպի նման՝ աւերում
91. ձգեցի: Իրենց պատերազմողաց դիակները
92. լերանց բարձանց վրայ եւ առ երի
93. քաղաքաց նոցա շուշմայի պէս
94. սփռեցի: Իրենց պատերազմիկ կառքերէն 120ը
95. ճակատամարտի մէջ խորտակմամբ
96. խորտակեցի: Զ 60 թագաւորս
97. Նաիրեայ երկրաց՝ ընդ այնոսիկ որք
98. անոնց օգնութեան եկած էին,
99. իմ նիզակովս °) մինչեւ ցծովն
100. վերին Հալածական տարի[1]:
101. Իրենց մեծամեծ քաղաքներուն տիրեցի.

Սիւն Ե. 1. անոնցմէ բռնած գերիներս, ա-
նոնց ինչքն ու ստացուածքը
2. առի տարի. անոնց քաղաքները հրով
3. այրեցի, աւերեցի, քանդեցի,
4. փլատակներու բլուր ու խոպան երկիր դարձուցի:
5. Երամակս բազմաթիւ ձիերու,
6. Ջորիներու, մօզիներու (°) եւ զինչս
7. նոցա երկրագործականս (°) անթիւս
8. առեալ տարի: Զամենայն թագաւորս
9. Նաիրեայ երկիրներուն իմ ձեռքս կենդանւոյն
10. գերի բռնեց: Այս թագաւորաց
11. շնորհս շնորհեցի.
12. անոնց կեանքը խնայեցի. գերի ինկած

---

1 Անտարակոյս Մանազկերտի մօտ կօճանլուի մէջ գտնուած արձանագրութիւնն այս առթիւ քանդակել տուած է Թագղաթփաղասար Ա:

13. ու շղթայի զարնուած ըլլալովն, Համաշայ՝ իմ տեառնս առջեւ
14. անոնց ազատութիւն տուի. աստուածոց
15. մեծաց առջեւ ապագային համար եւ վասն աւուրց [երդուընցուցի։
16. Միացելոց հպատակութիւն պահելու զանոնք[
17. Անոնց արքայորդիները
18. պատանդ առի։
19. — 1200 ձի, 2000 եզ
20. անոնց վրայ հարկ դրի. [թան։
21. և զանոնք թողուցի որ իրենց երկիրներն եր-
22. ՁՍինի՝ Դախախինեայ թագաւորը՝
23. որ Ասուրայ՝ իմ տեառնս՝ չէր հպատակած,
24. գերի ու շղթայակապ իմ քաղաքս
25. յԱսուր տարի և թողութիւն
26. շնորհեցի անոր։ Իմ Ասուր քաղաքէս՝
27. իբր ծառայ աստուածոց մեծաց
28. ծառայելու և ապրելու աղագաւ՝
29. զանի թողուցի որ երթայ։ Երկրայ Նաիրեայ
30. լայնածաւալաց՝ բովանդակ տարածութեամբն՝[
31. եւ անոնց բոլոր թագաւորները [տիրեցի,
32. ինծի հպատակ կացուցի։[2]
33. Այս արշաւանաց ընթացքին մէջ՝
34. ի վերայ քաղաքին Մելիդիայ՝ որ յերկրին Խանի-րաբբաթայ[3]
35. ապստամբի և անսաստի՝ խաղացի գնացի։

. . . . . . . . . . . . . .

*Միջազետաց այլեւայլ կողմանքն արշաւանք:*

67. Ասուր տէրն Մուսրի երկրին աշխարհակալութեան զէս

---

1 Արեւ դէք։

2 Բառացի՝ «ոտքերուս» տակ դրի։

3 Ծոփաց արեւմտակողմն՝ Եփրատայ աջակողմը վիճակ մը։

68. խուրեց. Իլամունի, [խաղացի գնացի։
69. Տալա եւ Խարուսա լերանց վրայէն անցնելով՝[
70. Զ Մուսրի՝ իւր տարածութեամբը գրաւեցի.
71. անոր պատերազմողները յերկիր կործանեցի.
72. քաղաքները հրով այրեցի, աւերեցի,
73. քանդեցի։ Քումանի[1] երկրին զօրքն
74. Մուսրիի օգնութեան
75. եկած էր. լերանց վրայ անոնց հետ
76. պատերազմեցայ, անոնց վրայ յաղթութիւն
կատարեցի. [րատը՝
77. քաղաքի մը մէջ՝ յԱրինի, Ախսա լերան ստո-
78. ղանոնք փակեցի. ոտքերուս
79. փարուեցան. այն քաղաքին խնայեցի.
80. պատանդներ, հարկեր ու տուրքեր
81. անոնց վրայ դրի։
82. Այն ժամանակն բոլոր Քումանացիք՝
83. որոնք Մուսրիի օգնութեան կը փութային,
84. ամբողջ իրենց երկիրներէն ժողվեցան,
85. պատերազմ ու ճակատ տալու
86. դիրք բռնեցին։ Զինուցս սաստկութեամբն
87. ընդհարայ ընդ 20,000 զօրս նոցա [ցայ,
88. բազմաթիւս։ Տալա լերան վրայ պատերազմե-
89. անոնց վրայ յաղթութիւն կատարեցի,
90. անոնց յաղթ մարտական զօրութիւնը ցրուեցի,
91. մինչեւ Մուսրիի առջեւն Խարուսա լեռը
92. հալածական տարի. դդիակունս
93. զօրաց նոցա՝ լերանց թաւուտ տեղերը
94. շ—բէլի նման սփռեցի. [վրայ
95. անոնց արիւնը ձորերու եւ լերանց բարձանց[
96. հոսեցուցի. անոնց մեծամեծ քաղաքներուն
97. տիրեցի, հրով այրեցի,
98. աւերեցի, քանդեցի, փլատակաց կոյտ մ'եւ
խոպան երկիր մ'ըրի։
99. Զխունուսա՝ անոնց բերդաքաղաքը՝
100. փլատակաց բլրոյ մը նման յերկիր կործանեցի։

---

[1] Ծոփաց հիւսիսոյ արեւմտակողմը։

ՍԻՒՆ Զ. 1. Անոնց բազմաթիւ զօրաց հետ
2. քաղաքներու մէջ եւ լերանց վրայ պատերազմեցայ սաստկութեամբ.
3. անոնց վրայ յաղթութիւն կատարեցի.
4. անոնց մարտիկ զօրքերը թաւուտ լերանց մէջ յերկիր կործանեցի
5. շուքներու նման. գլուխնին կտրեցի
6. ցորենոյ (°) հասկերու նման. [ձանց վրայ
7. անոնց արիւնը լերանց ծործորներու եւ բար-
8. վաղել տուի: Այն քաղաքին տիրեցի.
9. անոնց աստուածները կորզեցի առի. անոնց ինչքն ու գոյքը
10. առի տարի. քաղաքն այրեցի. [ներով
11. անոր 3 մեծամեծ պատուարները՝ որոնք աղիւս-
12. կազմուած էին՝ եւ քաղաքին շրջակայքը
13. աւերեցի քանդեցի, փլատակաց կոյտ եւ խոպան երկիր
14. դարձուցի, եւ Զի ՊԱ քարեր վրանին
15. սփռեցի: Պղնձի շանթ մը շինեցի,
16. զաւարս երկրաց՝ որոնց աստուածով՝ իմով՝ իմ տերամբս
17. տիրած էի, եւ այն քաղաքը նորէն չհիմնելու
18. եւ անոր պատուարը նորէն չշինելու վճիռը վրան
19. գրեցի: Աղիւսէ տուն մ'անոր վրան
20. կանգնեցի. այն պղնձի շանթը
21. անոր մէջ կանգնեցի:
22. Ի ծառայութեան Ասուրայ՝ տեառն իմոյ՝ պատերազմիկ կառքերս
23. ու զօրքս առի, զԿիբսունա՝ [մանացիք
24. անոնց արքայական քաղաքը պաշարեցի: Քու-
25. իմ ճակատամարտիս ուժգին բախումէն վախցան,
26. ոտքերուս փարուեցան. անոնց կենացը խնայեցի:

---

[1] Այլափոխ ընթերցուած՝ “Ասուր դէք”:

27. Անոր մեծամեծ պատուարներն եւ զպատնէշս նորա
28. աղիւսակերտս անոնց կործանել հրամայեցի։
29. Անոնց յատակէն մինչեւ ցտանիսն
30. քանդեցին, փլատակներու կոյտ ու խոպան երկիր դարձուցին։
31. Եւ 300 ապստամբներու ցեղերը՝
32. որոնք անոնց մէջէն Ասուրայ իմ տեառնս չէին հնազանդիր, [Նոնք ի պատանդս
33. քարշելով բերին. զանոնք ընդունեցայ, զա-
34. տռի, հարկերն ու տուրքերը
35. առաջուընէ աւելի բարձրացուցի, անոնց վրայ
36. դրի, եւ լայնատարած Քումանի երկիրը
37. իւր ընդարձակութեամբն իմ ոտքերուս
38. տակը դրի։[1]
39. Ընդ ամենայն՝ 42 երկիր եւ անոնց իշխանները,
40. ստորին Զաբայ[2] անդիի կողմէն,
41. հեռաւոր անտառուտ լերանց սահմանագլուխներէն
42. մինչեւ Եփրատայ անդիի կողմը,
43. Խաթթի երկիրը, եւ զվերին ծովն
44. արեւմտից,[3] տէրութեանս սկիզբէն
45. մինչեւ կառավարութեանս 5դ տարին ձեռքս աշխարհակալեց։
46. Զանոնք հաստատակօրէն հլու ըրի.
47. անոնցմէ պատանդներ առի, հարկեր
48. ու տուրքեր անոնց վրայ դրի։
49. Թողուցի զուղխս թշնամեաց զբազում

---

[1] Այս արշաւանքէն վերջն է որ Թագղաթփ. Ա. Սուբնատ գետոյ այրին արձանագրութիւնը կանգնած է։

[2] Ստորին կամ Փոքր Զաւ գետ։

[3] Այս է՝ Վանայ լիճն։ Այսպէս եւ Ա. Հ. Սէյս ի Records of the Past, n. s., Հտր. Ա. էջ 112, Ծան. 1, եւ Եբ. Շրատէր ի Abhandlungen der königl. Akademie der Wissenschaften zu Berlin. 1877, էջ 185.

50. որոնք իշխանութեանս չէին ընդդիմանար.
51. դիւր տեղ պատերազմիկ կառքիս մէջ, եւ[
52. ոտքովս անոնց ետեւէն [դժուարին տեղ
53. քալեցի ։ Թշնամեաց ոտքը
54. իմ երկրիս մէջէն կասեցուցի ։

. . . . . . . . . . . . . . . .

Սիւն Ը. 1. Ռամմանայ[1] տեառն իմոյ՝ Խամրի մեհեանն՝
2. զոր Շամսիռամման՝[2] արքայ քուրմ Ասուրայ,
3. որդի Իշմիդագանայ, . . . . . . .
4. շինած էր, անկած եւ կործանած էր ։
5. Անոր տեղին մաքրեցի, ի հիմանց
6. մինչեւ ցտանիսն՝ զայն աղիւսով
7. շինեցի, առաջուընէ աւելի
8. զարդարեցի, հաստատուն գործեցի ։

. . . . . . . . . . . . . . . .

11. Նոյն տաճարներն՝ ԿԱ քար, Խու. ՏԱ քար,
12. շուշանու քար ի լերանց
13. Նաիրի երկրին՝ որուն օգնականութեամբ Ասուրայ՝ տեառն իմոյ՝
14. տիրած էի, բերել տուի, [մէջ
15. եւ Ռամմանայ՝ տեառն իմոյ՝ Խամրի մեհենին[
16. յաւիտենական[3] ժամանակաց համար զանոնք դրի ։

. . . . . . . . . . . . . . . .

## Թագլաթփալասարայ Ա. Բեկեալ Մենաքարէն հանեալ մասն.[4]

"....քաջագործութիւններ ըրաւ.... Կառիարի երկրին մէջ, Ասորէստանէ եւ Խանա երկրին

[1] Օդոյ, հողմոց եւ ամպրոպաց դիքն ։

[2] Հաւանականօրէն Շամսիռամման Ա., Ք. ա. իբր 1820—1800 ։

[3] Կամ "Անցեալ, ապագայ" ։

[4] Մենաքարիս արձանագրութիւնն Գույունճուգի աւերակաց մէջ գտնուած է, եւ անոր մէկ երեսին վրայ գրուած-

լեռներէն մինչեւ Լուլումի դաշտագետիններն եւ Նաիրի երկրին լեռներն։„

## Կօճանլուի արձանագրութիւնն։[1]

1. Թագղաթփաղասար՝ [բեստանի,
2. արքայ հզօր, արքայ ժողովրդոց, արքայ Ասո–
3. աշխարհիս չորս կողման արքայն,
4. Նաիրիի երկիրներուն տիրեց,
5. Տումմի[2] երկրէն
6. մինչեւ Դաիանի երկիրը տիրեց,
7. ...[մինչեւ] ցծովն մեծ։[3]

## Սուբնատ գետոյն այրին արձանագրութիւնն.[4]

1. Օգնականութեամբ Ասուրայ,
2. Շամասայ, Ռամմանայ՝ աստուածոց
3. մեծաց՝ իմ տերանցս,
4. ես Թագղաթփաղասար՝

ներն Թագղաթփաղասարայ Ա. կը համարուին։ Տես J. Ménant, Annales des rois d'Assyrie, էջ 50։

[1] Արձանագրութիւնս՝ հայացի հողոյն վրայ Մանազկերտէն իբր երեք ժամ հեռու Կօճանլուի մէջ գտան՝ յամին 1898, Վ. Պէլք եւ Կ. Փ. Լէման, եւ 1899 Փետրուարի 9ին Պերլինի Գիտութեանց Ճեմարանին համագումարնստին մէջ հաղորդուեցաւ։ Տես Sitzungsberichte d. königlich preussischen Akademie der Wissenschaften zu Berlin 1899, VII. էջ 117.

[2] Հաւանականօրէն՝ Հայաստանի արեւելից հարաւոյ սահմանագլխոց վրայ վիճակ մը։

[3] Միջերկրակա՞ն ծովն։

[4] Մեծ Ծոփաց մէջ Հանի եւ Իլիճէէն չորս ժամ հեռու՝ Կարին տանող պողոտային վրայ՝ վերնագոյն Տիգրիսի ձախակողմեան օժանդակ մէկ գետն կայ, զոր Ասորեստանի թագաւորք Սուբնատ կամ Սուպնատ կը կոչէին, եւ որ զարդիս ըստ ոմանց Սէպէնէ-Սու եւ ըստ Կ. Փ. Լէման ուսուցչի Պիրքէլէն-Սու կ'անուանի։ Գետն՝ նոյն ուսուցչին անձամբ ըրած հետազօտութեանց համեմատ, ազատ գետնի

5. Ասորեստանի թագաւոր, որդի Ասուրրիսիսեայ
6. արքային Ասորեստանի, որդւոյն Մուտակկիլ [Նուսկուի՝]
7. արքային Ասորեստանի, աշխարհակալող ի
8. մեծ ծովէ արեւմտից
9. ՝մինչեւ Նաիրիի ծովն,[1]
10. — 3 անգամ Նաիրիի վրայ արշաւեցի։

---

վրայ իբր վեց ժամու ճամբայ հոսելէն ետքը՝ կէս հազարամետրի մօտ երկայն ժայռի մը տակէն անցնելէն վերջ դուրս կ'ելլէ։ Գետոյն ժայռէն դուրս ելած տեղւոյն աջակողմը հինգ արձանագրութիւնք կը գտնուին, որոնց մին է Թագղփ. Այս վերոյգրեալ արձանագրութիւնն, որ ներքին քարայրի մը մէջ գտնուող երեք արձանագրութիւններէն մին է, ասոր վրան նոյն թագաւորին հարթ քանդակ պատկերն կայ՝ իւր աջակողմն ունելով վերոյգրեալ արձանագրութիւնը։ Այս քարայրին եւ աւելի վեր գտնուող այրի մը մէջ եղած երկերկու միւս արձանագրութիւնք՝ ըստ Լէմանայ բանից, Սաղմանասարայ Բ. են։ Այս չորս արձանագրութեանց մին՝ որ ներքին քարայրին մէջ է (եւ մինչեւ հիմայ Թագղաթփալասարայ կ'ընծայուէր), Սաղմ. Բ.ի 7դ (Ք. ա. 853) տարիէն է։ Վերին քարայրին առաջին արձանագրութիւնն այս թագաւորին 15դ (Ք. ա. 845) տարիէն է։ Դարձեալ՝ ներքին քարայրին երրորդ արձանագրութիւնն (որ ցարդ Ասուրնածիրաբալայ կը համարուէր) եւ վերին քարայրին երկրորդ արձանագրութիւնն՝ հաւանականօրէն նոյն թագաւորին ուրիշ մէկ այցելութեան առթիւ քանդակուած են՝ կ'ըսէ նոյն ուսուցիչն։ Սակայն Թագղաթփալասարայ եւ իւրոյ իսկ արձանագրութեան գոյութեան համար կը վկայէ Ասուրնածիրաբալ իւր Տորէֆրոն—Բիանց մէջ՝ Սիւն Ա. 105։ Այս արձանագրութիւնքը՝ 1862 տարին անգղիական հիւպատոսն՝ որ ի Տիարպէքիր՝ Ց. Դէյլոր գտաւ, եւ 1883ին գերման Սեսդէր ճարտարապետն անոնց այցելեց, երկուքն եւս անոնց դրոշմօրինակներն առին։ Տես բնագիրն ի Cuneif. Inscr. of West. Asia, III. 4. 6, եւ Eb. Schrader: die Keilinschriften am Eingange der Quellgrotte des Sebeneh-Su, էջք 27, 7, 8, եւ Keil. Bibl. I, էջք 48—49.

[1] Բզնունեաց ծովն։

## Թագղաթփաղասար Բ. (Ք. ա. 889—885) Սուբնատ գետոյն այրին արձանագրութիւնն [1]

1. ...* Թագղաթ[փաղասար]
2. ...* արքայ մեծ, արքայ հզօր, [նի...*
3. ...* արքայ ժողովրդոց, արքայ Ասորեստա-
4. ...* զօրավանդակութիւն (°) ազգաց մեծաց։
5. Օժանդակութեամբ (աստուած)....*այ....*
6. աստուածոց մեծարանաց իւրոց . . . .*
7. հոն գնաց. ահագին լեռներ՝ ի
8. ծագմանէ արեւու մինչեւ ցմուտս
9. արեգական՝ նուաճեց։
10. Բուռն, անպարտելի....*
11. հոն գնաց կայծակի (°) նման,
12. գետեր . . . . . . .*
13. առաթուր կոխեց։

## Ասուրնածիրաբաղայ (Ք. ա. 885—860) Տարեգրութիւնքն [2]

Սի–ն Ա . . . . . . . . . . . .

9. . . . . . Ասուրնածիրաբաղ՝ հզօր Թագաւոր,

---

[1] Տես վերջընթեր ծանօթութիւնը։ Տես եւ Eb. Schrader: die Keil. am Eingange der Quell-grotte des Sebeneh-Su, էջք 16, 18, 28, եւ Keil. Bibl. I. էջք 50—51.

[2] Սեպագիր արձանագրութիւնս՝ խեցեղէն տախտակի մը վրայ փորագրուած՝ Ս. Գրոց յիշատակած Քաղան քաղաքին Նինիպ դից տաճարին մէջ գտնուեցաւ։ Քաղան Նինուէին հարաւակողմը, Տիգրիսի ձախ ափանց վրայ՝ արդի Նիմրուտ կոչուած աւերակաց տեղն է, որ Նինուէէն իբր 6 ժամ հեռու է։ Առաջին վեց տարիներու մէջ պատահած գործոց վրայ բաւական լաւ ժամանակագրական կարգաւորութիւն մը կը տեսնուի նոյն յիշատակարանին մէջ, յորում տարիներն անձանց անուններով որոշուած են, եւ

10. . . . արքայ բովանդակութեան չորից կողմանց աշխարհի . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

44. Կառավարութեանս առաջին տարին[1] . . . .

45. . . . պատերազմիկ կառքերս ու զօրքս ժողվեցի, արշաւեցի սեպ ճամբայներէն, դժուարին լեռներէն, որոնք գնացից

46. կառացս ու զօրացս անյարմար էին։ Նումմի[2] երկրին վրայ գնացի. Գուբբի՝ իրենց բերդաքաղաքին, Սուրրա, Աբուքու,

47. Արուրա, Արուբի ամուր քաղաքներուն՝ որոնք Ուրինի, Արունի, Իտինի կոչուած ահագին լեռներուն մէջ կը գտնուին՝ տիրեցի, զպատերազմողս նոցա

48. բազմաթիւս սպանի, աւարնին, ինչքերնին, արջառնին յափշտակեցի. զօրքն փախաւ, դժուարին լերան մը վրայ ամրացաւ։ Լեռն կարի դժուարին էր. անոնց ետեւէն

49. փութով հետամուտ չեղայ. լերան գագաթն երկաթի դաշունի մը ծայրին պէս կը բարձրանար, եւ երկնից թեւաւոր թռչուն մ'անոր չմօտենար։ Նման բունոյ

50. ա-դէնէ (-թռչնոյ) իրենց ամրութիւնը նոյն լերան վրայ շինած էին։ Ուր որ իմ հարցս մէջէն եւ ոչ մի թագաւոր մտած էր, երեք օրուան մէջ

51. դիւցազն մագլելով (°) լերան վրայ ելաւ՝ քաջարտութեամբ կռուոյ ցանկանալով։ Վեր

---

որոնք Անուանակիր Տարիներ կը կոչուին. Սակայն նոյն Տարեգրութեանց մէջ ամէն արշաւանաց տարիներն չեն յիշատակուած։ Տես Cuneif. Inscr. of West. Asia I. 17–26, եւ Eb. Schrader: die Keil. Bibliothek, I. էջք 50–129.

[1] Ք. ա. 884։

[2] Նիմմի ի Հաստուածակողման (Դ. 71) Թագղաթփաղասարայ Ա. եւ Սաղմանասարայ Բ. Նիմրուտայ կոթողին մէջ տող 43։

ելաւ, իւր ոտքերովն լեռը կոխկռտեց, անոնց
բոյնը ջախջախեց, բանակնին
52. խորտակեց։ Անոնց պատերազմողներէն 200ը
զէնքով յերկիր կործանեցի. անոնց մեծաքա-
նակ աւարը՝ ոչխարաց երամակներու պէս առի
տարի։
53. Անոնց արեամբը՝ լեռն ասրի նման ներկեցի.
իրենց մնացորդները լերանց ծործորներու եւ
անձաւներու (°) մէջ ոչնչացուցի. անոնց քա-
ղաքներն
54. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։ Նումմի
երկրէն ելայ, Կիրրուրի[1] երկիրը վար իջայ։
Հարկս Կիրրուրի
55. Սիմեսի, Սիմերա[2], Ուլմանիա, Ադաւս[3], Խար-
գա[4] ու Խարմասա երկիրներէն ձիեր, ջորիներ (°)
56. արջառ, ոչխարներ, գինի, պղնձի անօթներ իբր
իրենց հարկն ընդունեցայ։ Անոնց վրայ կող-
մնակալներ դրի։ Մինչդեռ (զօրքս) Կիրրուրիի մէջ
57. կը գտնուէր, Ասուրայ՝ իմ տեառնս՝ պայծա-
ռութիւնն զԿիրզանացին[5] եւ զԽուբուսկացին[6]
յերկիր կործանեց։ Ձիեր, արծաթ,
58. ոսկի, կապար, պղինձ, պղնձի ամաններ ի ոսկ
հարկի առջեւս բերին։ Կիրրուրիէն ճամբայ ելայ,
59. Խուլուն[7] քաղաքին կրճին մէջ մխեցայ, որ
Կիլխի[8] երկրին դիմացն է։ Խատտու, Խատտարու,
Նիստուն, Իրբիդի,

1 Կապուտան ծովուն արեւմտեան եզերքը։

2 Կորճէից արեւմտակողմը Ցմորիք գաւառն։

3 Կորճէից մէջ Այտուանք գաւառն։

4 Թերեւս Հարք գաւառն՝ Տուրուբերանի մէջտեղը։ Հարք χάρκα կը կոչուի ի գիրս Վասն Տնտեսութեան Պետութեան, Կոստ. Ծիրանածնի, գլ. 44։

5 Կապուտան ծովուն հիւսիսային եզերքն վիճակ մը։

6 Ըզդային արձանագրութեանց Հուգիստանիս երկիրն, եւ Վասպուրականի արեւմտակողմը Գուկան գաւառն։

7 Մոկաց մէջ Ցաղին քաղաքն։

8 Որ եւ Կուրխի, Կիրխու, տես ի վեր անդր։

Digitized by Google

60. Միտքիա, Արձանիա, Տիլա, Խալուա քաղաք-
ներուն՝ որոնք Կիրխի երկրին Ուսու, Արուա,
61. Արարդի[1] ահագին լեռներուն մէջ կը գտնուէին՝
տիրեցի. անոնց բազմաթիւ զօրքը սպաննեցի.
աւարնին եւ ինչքերնին առի տարի։
62. Զօրքն փախաւ, Նիստունի դիմացը դուրս
ցցուած լեռնային ժայռ մը բռնեց, որ երկնից
ամպի մը նման՝ երկնքէ դէպ ի վար կը
հակէր։
63. Ուր որ Թագաւորաց իմ հարցս մէջէն եւ ոչ
մէկն մտած էր, իմ զինուորներս Թռչնոց պէս
անոնց վրայ խոյացան։
64. Անոնց պատերազմող զօրքէն 260ը զէնքով
դիաթաւալ կացուցի. գլուխնին կտրեցի. ա-
նոնցմէ սիւն մը կառուցի։ Անոնց Մնացորդն
Թռչնոց պէս
65. լերան գագաթան վրայ իր բոյնը շինեց։ Անոնց
աւարն ու ինչքը լերան մէջէն վար բերել
տուի. քաղաքները՝ որ ի մէջ
66. ահագին ու Թաւուտ լերանց էին, աւերեցի,
քանդեցի, հրով այրեցի։ Մարդիկն՝ որչափ
բազմութեամբ որ զինուցս երեսէն փախած էին,
վար իջան, ոտքերուս
67. փարուեցան։ Անոնց վրայ տուրքեր, հարկեր ու
վերակացուներ դրի։ Նիստունի քաղաքապետը՝
Բուբայի որդին՝ զԲուբու
68. Արբաիլ[2] մէջ մորթազերծ ըրի, պատի մը մէջ
հիւսեցի։ Նոյն առեն իմ անձինս պատկերը շի-
նեցի. իմ կարող զօրութիւնս
69. անոր վրան գրեցի, Իքի լերան վրայ՝ Աշուրնա-
ձիրապլու քաղաքին մէջ՝ աղբերական տեղը՝
զայն կանգնեցի։ Նոյն անուանակիր տարւոյն

---

[1] Հայաստանի արեւմտեան հարաւային մասին մէջ։

[2] Նինուէի արեւելակողմը՝ Ասորեստանի Արբելա քաղաքը։

մէջ[1] Աբ[2] ամսոյն 24դ. օրն
70. ըստ Հրամանի Ասուրայ եւ Իստարայ աստուա-
ծոցն մեծաց՝ տերանց իմոց՝ Նինուէէն ելայ,
Նիբուր[3] եւ Պաձատու[4] աՀագին լեռներուն
ոտքը գտնուող քաղաքաց վրայ
71. արշաւեցի։ Ատկուն, Ուսխու, Պիլազի վիճակ-
ներուն մէջ 20 քաղաքի տիրեցի. անոնց բազ-
մաթիւ պատերազմողները սպաննեցի.
72. աւարնին եւ ինչքերնին առի տարի. քաղաք-
ները Հրով այրեցի։ Մարդիկն՝ որչափ բազմու-
թեամբ որ իմ զինուցս երեսէն փախած էին՝
վար իջան,
73. ոտքերուս փարուեցան. անոնց վրայ տուրքեր
դրի։ Նիբուր ու Պաձատու լերանց ստորոտներն
եղող քաղաքներէն ելայ, Տիգրիսի վրայէն
անցայ,
74. Քո—մմո—խի մօտեցայ։ Քո—մմո—խի եւ Մո——ո+էի
Հարկը՝ պղնձի անօթներ, արջառ, ոչխարներ,
գինի՝ ընդունեցայ։

. . . . . . . . . . . . . . . . .

99. . . . Անուանակիր տարուոյն մէջ[5], իմ անուանս
տարին, . . . .

. . . . . . . . . . . . . . . . .

101. . . . . Նոյն անուանակիր տարին եւ իմ Նի-
նուէ գտնուած ատենս բերին
102. լուր թէ արք Ասորեստանեայք եւ Խուլայի՝
անոնց քաղաքապետն, զորոնք Սաղմանասար[6]
Ասորեստանի թագաւորն՝ ինծմէ առաջ թա-
գաւորող իշխան մը
103. Խալզլուդիպխայի մէջ բնակեցուցած էր, ապըս-

---

1 Դարձեալ 884 տարին։

2 Յուլիս—Օգոստոս։

3 եւ 4 Կորդուաց Հարաւային սաՀմանագլուխը լեռ-
ներ։ Նիբուր կը կարդացուի նաեւ Նիպուր։

5 Ք. ա. 883։

6 Ք. ա. իբր 1330–1310։

Digitized by Google

տամբեցան, իմ թագաւորական քաղաքս զԴամդամուսա[1] առնելու համար յառաջ խաղացին ։

104. Ասուրայ, Շամաշայ եւ Ռամմանայ՝ իմ վստահութեանս աստուածոց՝ հրամանաւն, ժողվեցի իմ պատերազմիկ կառքերս եւ զօրքս ։ Սուբնատ[2] գետոյն աղբերակունքը՝ տեղի պատկերայ

105. Թագլաթփալասարայ եւ Թագլաթադարայ[3] Ասորեստանի թագաւորայ՝ իմ հարցս, իմ արքայական անձինս մէկ պատկերը շինեցի, եղայն անոնց քովը կանգնեցի ։

106. Նոյն ատեն Իձալա երկրէն ի սակ հարկի արջառ, ոչխարներ եւ գինի ընդունեցայ ։ Յառաջ խաղացի դէպ ի Կասիարի[4], Կինաբուին՝[5]

107. Խուլայիայ բերդաքաղաքին մօտեցայ ։ Զօրացս յարձակմամբն, բուռն ճակատամարտիւս խոյացայ, քաղաքին տիրեցի ։ Անոնց պատերազմողներէն 600ը

108. զինուք յերկիր կործանեցի. 3000 գերի կրակի մէջ այրեցի. իբր պատանդ՝ անոնցմէ եւ ոչ մէկը կենդանի թողուցի ։ Զխուլայի

---

[1]. Աշմուշատ քաղաք Հաշտենից ։ Երկրորդ Դամդամուսա քաղաք մ'ալ կար, որ Ամդայ հարաւոյ արեւմտից կողմն էր ։ Տես աստէն ի վայր՝ Սիւն Գ. 105 ։

[2] Զորմէ տես ի վեր անդր ։

[3] Նոյնպէս ։

[4] Յատուկ անուանս յառաջադիր է ՄԱՏ “երկիր„ որոշանիշ գաղափարագիրն, որ եւ ՇԱԴ “լեռ„ կը կարդացուի ։ Ասորեստանեայն՝ Սուբնատ գետոյն քովէն ելելով “յառաջ խաղացած է„ դէպ ի լերինս Անտիտաւրոսի որ Կասիարի կը կոչուէր եւ անոր բոլորտիքը գտնուած երկիրն նոյն անունը կը կրէր ։ Վերոյիշեալ Դամդամուսա-Աշմուշատ քաղաքն ալ Սուբնատի հիւսիսակողմն էր ։ Այս Կասիարին պէտք չէ շփոթել Կասիարի-Մասիոն լերան հետ ։

[5] Կապան քաղաք Մեծ Ծոփաց ։



Digitized by Google

109. անոնց քաղաքապետը կենդանւոյն ձեռք ձգեցի։ Անոնց դիակներն ի ցից հանեցի. մանչ ու աղջիկ տղաքնին խարուկի մէջ այրեցի։

110. Զխուլաի անոնց քաղաքապետը մորթազերծ ըրի. Դամդամուսայի պարսպին մէջ զանի հիւսեցի. քաղաքն աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։

111. Մարիրու[1] քաղաքին եւ իւր վիճակին տիրեցի. անոնց պատերազմողներէն 50ը զինուք յերկիր կործանեցի. անոնցմէ բռնուած 200 գերիները կրակի մէջ այրեցի։ 332

112. զինուորս երկրին Նիրբուայ՝[1] դաշտին մէջ կռուելով սպաննեցի. աւարնին, արջառնին ե- ոչխարնին առի տարի։ Նիրբու երկիրն՝ որ Ուխիրա լերան ստորոտն է,

113. դաշնակցութիւն մ՚ըրած ըլլալով՝ իրենց Տիլա ամրոցին մէջ քաշուած էին։ Կինաբուէն[2] ելայ, Տիլային մօտեցայ.

114. քաղաքն խիստ ամուր էր. 3 պարիսպ զանի կը շրջապատէր։ Մարդիկն իրենց հզօր պարիսպներուն եւ բազմաթիւ զօրացը վրայ վստահացան. վար չեկան,

115. ոտքերուս չփարուեցան։ Կռուով եւ ճակատամարտիւ քաղաքին վրայ յարձակեցայ, տիրեցի։ Անոնց 3000 պատերազմող մարդիկը զինուք յերկիր կործանեցի. անոնց աւարը,

116. ինչքը, արջառը, անոնց ոչխարներն առի. շատ մը գերիներ կրակի մէջ այրեցի. շատ մը մարդիկ կենդանւոյն ձեռք ձգեցի.

117. ոմանց ձեռքերը ե- թեւերը (°) կտրեցի. ոմանց քիթը (°), ականջները, (թեւերը°) կտրեցի. շատ մը մարդոց աչքերը բրեցի.

---

1 Անտիտաւրոսի արեւելակողմը՝ որպէս հաւանութեան թուի։

2 Որ եւ Սինաբու։

Digitized by Google

118. *կենդանի եղջիւրներէն աշտարակ (°) մը կանգնեցի. մէկ մ'ալ կառափներէն կանգնեցի: Ծառերու վրայ՝ իրենց քաղաքին վիճակին մէջ՝ անոնց գլուխները վարսեցի. իրենց արու տղայքը,*
Սէ-Ն Բ. 1. *աղջիկ տղայքը կրակի մէջ այրեցի. քաղաքն աւերեցի, քանդեցի, հրով այրեցի, ոչընչացուցի: Նոյն ատեն Նիրբի երկրին քաղաքները,*
2. *անոնց ամուր պարիսպներն աւերեցի, քանդեցի, հրով այրեցի: Նիրբիէն ելայ, Տուշխային*[1]
3. *մօտեցայ: Տուշխան նորէն գրաւեցի, անոր հին պարիսպը կործանեցի. տեղը մաքրեցի, հիման հասայ: Նոր պարիսպ մը*
4. *ի հիմանց մինչեւ ցկատարն կանգնեցի, աւարտեցի, (գեղեցիկ կերպով) կարգի դրի: Իմ արքայական բնակութեանս համար հոն պալատ մը հիմնեցի. դրան թեւերն աւարտեցի, զանոնք իրենց դրան վրայ կանգնեցի:*
5. *Նոյն պալատը կանգնեցի ի հիմանց մինչեւ ցտանիս. զանի աւարտեցի. ղէմ շողուն քարէ իմ անձինս պատկերը շինեցի, զկարողութիւն*
6. *շքեղագոյն զօրութեանս՝ ու Նաիրիի երկիրներուն մէջ կատարած դիւցազնական գործոց պատմութիւնն անոր վրան գրեցի, զանի Տուշխայի մէջ*
7. *կանգնեցի: Տախտակ մը գրեցի, անոր պարըսպին վրայ զետեղեցի: Վատթարեալ Ասորեստանեանները՝ որոնք կարօտութեան եւ քաղցի պատճառաւ ի լերինս*
8. *ճալլս դէպ ի Սուպրի*[2] *ելած էին, ետ բերի, Տուշխայի մէջ հաստատեցի: Նոյն քաղաքն իմ վերագոյն իշխանութեանս*

[1] Աղձնեաց նահանգին հարաւոյ արեւմտակողմն քաղաք մը:

[2] Ծոփաց արեւմտակողմն վիճակ մը: Մեծ Ծոփք:

9. տակ դրի։ Նիրբու երկրէն ընդեղէններ … յարդ-
հոն դիզեցի. Նիրբուին միացորդներն՝ որոնք իմ
զէնուցս երեսէն փախած էին,
10. վար իջան, ոտքերուս փարուեցան։ Իրենց քա-
ղաքներուն … գեղեցիկ շէնքերուն մէջ զանոնք
բնակեցուցի։ Ձիերու
11. ջորիներու, արջառի, ոչխարներու, գինւոյ,
պղնձի անօթներու հարկն ու տուրքը առա-
ջուընէ աւելի բարձրացուցի, անոնց վրայ դրի։
Անոնց որդիքը պատանդ
12. առի։ Երբ անոնք[1] Տուսխա կը գտնուէին,
զհարկն Զամանիի որդւոյն Ամիբա՛լայի, Ան-
խիտիայ Սուպրիացւոյ,
13. Նիրդունցի[2] Տուբուսիի որդւոյն Լապտուրիի,
եւ հանդիպակաց Ուրումի երկրին, եւ Նաիրիի
երկիրներուն Թագաւորաց հարկը՝
14. կառքեր, երիվարներ, ջորիներ, արծաթ, ոսկի,
պղնձի անօթներ, արջառ, ոչխարներ, գինի՝ ի
սակ հարկի անոնցմէ ընդունեցայ։
15. Նաիրիի երկիրներուն վրայ կողմնակալներ դրի։
Նաիրիի երկիրներէն դառնալուս ատեն՝ Նիրբու
երկիրն՝ որ ի մէջ
16. Կասիարի լերինն՝ ապստամբած էր. իրենց քա-
ղաքներէն 9 հատը թողած էին, իրենց Իսպի-
լիբրիա ամրոցին եւ դժուարին լերան վրայ
17. կը վստահէին։ Լերան գագաթներուն վրայ
յարձակեցայ, տիրեցի. ահագին լեռներու մէջ
անոնց պատերազմողները սպաննեցի. անոնց ա-
րեամբն սարի պէս լեռը
18. ներկեցի։ Մնացեալները լերան ծործորներուն
եւ անձուկներուն մէջ ոչնչացուցի։ Անոնց
աւարն եւ ինչքը՝ առի, անոնց պատերազմողաց
կառափունքը

---

1 Այսինքն "Ասորեստանեայց զօրքն"։
2 Աղձնեաց հարաւակողմն երկիր կամ վիճակ մը։

19. կորեցի. անոցն կառափներովն սիւն մը կանգնեցի. մանչ ու աղջիկ տղաքներն խարուկի մէջ այրեցի: Բուլիանի քաղաքին կրճին մէջ
20. մոայ, Լուքիա գետոյն եղերքը Հասայ: Ցառաջ խաղալուս ատեն՝ կրճին մէջ եղող Միրխի երկրին քաղաքներուն տիրեցի, անոնց բազմաթիւ պատերազմողները
21. սպաննեցի. անոնց կողոպուտն առի. քաղաքները կրակով այրեցի: Արտուպայէն դուրս ելայ: Նոյն ատեն՝ զՀարկն
22. Ախիրամուայ՝ որդւոյն Ցախիրիայ Զալլայեցւոյն,[1] որդւոյն Բախիանիայ Խոփփացւոյն եւ Խոնէ-բաղղադայ Թագաւորայ՝ արծաթ, ոսկի,
23. անագ, պղնձի անօթներ, արջառ, ոչխարներ, ձիեր ի սակ նոցա Հարկի ընդունեցայ: Ասուրիդինայ անուանակիր տարին[2] լուր բերին՝
24. "Նուրռամման՝ Դագարա երկրին իշխանն ապստամբեցաւ. բովանդակ Զամուա[3] երկիրն դաշնակցութիւն մը կազմեց. Բաբիտէի կրճին մէջ
25. պատուար մը կանգնեցին". . . . . . .

## Արշաւանք յարեւելս Հարաւոյ եւ յաղթութիւնք ասորեստանւոյն:

80. . . . . Խուբուսկացիներն եւ Կիրզանացիներն երկիւղն

1 Աղձնեաց արեւելեան Հիւսիսակողմը՝ Սալնոյ Ձոր գաւառն:

2 Ք. ա. 882:

3 Այս երկիրն Ասորեստանի Հարաւային արեւելակողմը կը գտնուէր. ուստի պէտք չէ շփոթել զայն միւս Զամուային հետ՝ որ Կապուտան ծովուն մօտ եւ անոր Հարաւոյ արեւմուից կողմն էր, որ եւ յետոյ Ցամբեր կոչեցաւ: Վերոյգրեալ Զամուան Բաբիտէի կրճին հետ միացեալ է. իսկ այս վերջինս բնագրին մէջ կը յիշուի սապէս. "51 . . . . ընդ Զաւ 52. սարին անցայ, Բաբիտէի կիրճը մոայ." ապա՝ վերոյգրեալ Զամուան սարին Զաւ գետէն անդին էր:

Digitized by Google

81. Վեհափառութեան Ասուրայ՝ տեառն իմոյ,
նկուն բրաւ. արծաթ, ոսկի, ձիեր, գործուած
զգեստներ, արջառ, ոչխարներ, գինի ի սակ
հարկի եւ տրոց իմ առջեւս բերին։

. . . . . . . . . . . . . . . .

86. Սիվան[1] ամսոյն մէջ՝ առաջին օրը՝ Շաիլիմա-
դամքայի անուանակիր տարին[2] կառքերս ու-
զօրքս գումարեցի,
87. Տիգրիսի վրայէն անցայ, Քումմուխ մտայ, Տէ-
լուլէի մէջ եղած պալատն գնացի։ Քումմու-
խայ հարկն ընդունեցայ։ Քումմուխէն ելայ,
ի կիրճն
88. Խատարատի[3] երկրին մխեցայ. Կիպակի[3] քա-
ղաքին մէջ բանակեցայ, արջառ, ոչխար, գինի,
պղնձի ամաններ ի սակ հարկի Կիպակիէն ըն-
դունեցայ։ Կիպակիէն ելայ,
89. Մատիատի[3] քաղաքը մօտեցայ. Մատիատուին՝
իւր գերեզմանաց քաղաքաւն՝ տիրեցի. անոր
պատերազմողներէն 2800ը զէնուք յերկիր կոր-
ծանեցի. անոնց մեծաքանակ աւարն առի տարի։
90. Որչափ մարդիկ որ զէնուցս երեսէն փախած
էին՝ ոտքերուս փարուեցան։ Զանոնք իրենց
քաղաքներուն մէջ բնակեցուցի. Հարկ ու
տուրք եւ "ուրասի„ պաշտօնեայ մը՝ զոր զօրա-
ցուցի, անոնց վրայ
91. դրի։ Անձինս պատկերը շինեցի. Հզօր զօրու-
թիւնս անոր վրան գրեցի, Մատիատիի մէջ
կանգնեցի։ Մատիատիէն ելայ, Զազաբուխա[3]
քաղաքին մէջ
92. բանակեցայ։ Կիրխիի Հարկը՝ արջառ, ոչխար-
ներ, գինի, պղնձի սաներ, պղնձի վայրենի
ցուլեր (°), պղնձի կաթսայներ (°), ընդունեցայ։
Զազաբուխայէն ելայ,

---

1 Մայիս - Յունիս։

2 Ք. ա. 880։

3 Աղձնեաց նահանգին արեւմտակողմը։

Digitized by Google

93. Իրսիայի[1] մէջ բանակեցայ. Իրսիան հրով այ-
րեցի։ Իրսիայի մէջ Սուրայի հարկը՝ արջառ,
ոչխարներ, գինի, պղնձի ամաններ ընդունեցայ։
94. Իրսիայէն ելայ, Կասիարի[2] լերան մէջ բանա-
կեցայ։ Մադարանզու քաղաքին եւ անոր մի-
ճակէն երկու քաղաքի տիրեցի. անոնց պա-
տերազմողները սպաննեցի,
95. աւարնին առի, քաղաքները կրակով այրեցի։
Կասիարի ահագին լեռներուն մէջ վեց օր ան-
ցուցի. դժուարագնաց երկիր մը՝ որ պատե-
րազմիկ կառքերու եւ զօրաց յառաջ խա-
ղացման
96. յարմար չէր։ Երկաթի բրիչներով լեռը ճեղ-
քեցի. անագապղնձի թիերով զանի հարթ
հաւասար ըրի. կառքերն եւ զօրքը յառաջ
խաղացուցի։ Կասիարի լերան մէջ եղող դաշ-
տին (°) քովի քաղաքներուն մէջ
97. արջառ, ոչխարներ, գինի, պղնձի անօթներ,
պղնձի կաթսաներ ընդունեցայ։ Կասիարու
լեռը կտրեցի անցայ. երկրորդ անգամ Նաիրիի
երկիրներուն վրայ իջայ։ Սիգիսա[3] քաղաքին
մէջ
98. բանակս դրի։ Սիգիսայէն ելայ, Մադարա[3]
քաղաքին մօտեցայ, որ Տուբուզիի որդւոյն
Լապտուրիի ամրոցն էր։ Քաղաքն խիստ ամուր
էր. 4 պարիսպ
99. զանի կը բոլորէին։ Յարձակելով քաղաքն
առի. հզօր զինուցս առջեւ զարհուրեցան.
անոնց ինչքը, անոնց ստացուածքը, անոնց
տղայքը իբր փրկանք (°) անոնցմէ առի յա-

---

1 Քաղաք մը՝ որ Աղձնեաց արեւմտակողմն պէտք էր որ ըլլար։

2 Մասիոն լեռնաշղթային արեւմտեան ծայրի մէկ մասն։

3 Աղձնեաց Հարաւոյ արեւմտակողմը պէտք էր որ գտնուէր։

Digitized by Google

զատութիւն անոնց կենաց։ Անոնց թողու-
թիւն շնորհեցի։
100. Հարկեր ու տուրքեր, «ուրասի, պաշտօնեայ մը
անոնց վրայ դրի։ Քաղաքն աւերեցի, քան-
դեցի, աւերած ու խոպան երկիր դարձուցի։
Մադարաէն ելայ, Տուսխան[1] քաղաքը
101. մտայ։ Տուսխանի մէջ եղող պալատը գնացի։
Նիրդուն երկրին տուրքը՝ երիվարներ, ջորի-
ներ, պղնձի ամաններ, պղնձի կաթսայներ,
արջառ, ոչխարներ,
102. գինի՝ Տուսխանի մէջ ընդունեցայ։ Կասիարի
լերան ստորոտը՝ Տուբուզիի որդւոյն Լապ-
տուրիին 60 քաղաքները, ամրոցները, աւե-
րեցի, քանդեցի, փլատակաց կոյտ
103. ու խոպան երկիր դարձուցի։ Վստահացեալ
յԱսուր՝ իմ տէրս, թեթեւ (°) մարտակառ-
քերովս եւ լաւագոյն հեծեալներովս Տուս-
խանէն ճամբայ ելայ։ Լատերով
104. Տիգրիսի վրայէն անցայ. բոլոր գիշերը խա-
ղացի գնացի. Դիրրայեւոյ ամրոցն Պիտու-
րային[2] մօտեցայ։ Քաղաքն խիստ դժուա-
րամատոյց էր.
105. — 2 պարիսպ զանի կը շրջապատէին. պա-
տուարն լերան մը գագաթան պէս բարձր էր։
Ասուրայ՝ իմ տեառնս՝ բարձր օժանդակու-
թեամբն, զօրացս յարձակմամբն եւ յուզեալ
ճակատամարտիւս
106. անոնց հետ պատերազմեցայ։ Օդոյ դից Ռամ-
մանի նման՝ 2 օր մինչեւ արեւու ծագումն
անոնց վրայ որոտացի։ Անոնց վրայ կրակ ան-
ձրեւեցի. սաստկութեամբ
107. եւ զօրութեամբ՝ զօրքս թաչնոց խուռներնթաց
բազմութեան (°) նման անոնց վրայ սրացան։

1 Նոյնպէս։

2 Հաշտէնից Հարաւակողմը։

Քաղաքին տիրեցի. անոնց մարտիկներէն 800ը
զէնքով յերկիր կործանեցի. անոնց կառափ-
ները

108. կտրեցի. կենդանի մնացող շատ մը մարդիկ
գերի բռնեցի. մնացեալները կրակի մէջ այ-
րեցի։ Անոնց ճոխ կողոպուտն առի։ Կենդանի
մնացողներէն և կառափունքէ կոթող մը

109. քաղաքին դրան առջեւ կանգնեցի, 700 մար-
դիկ իրենց քաղաքին դրան քով ցիցերու
վրայ վարսեցի, քաղաքն աւերեցի, քանդեցի,
աւերած ու խոպան երկիր դարձուցի։ Անոնց
մանչ տղայքը,

110. աղջիկ տղայքը կրակի մէջ այրեցի։ Մատնի՝
լերան կրճին բերանը գտնուող Կուկունու
քաղաքին տիրեցի. 700 պատերազմող նկուն
ըրի զինուք.

111. անոնց ճոխ կողոպուտն առի։ Դիրրա երկրին
մէջ 50 քաղաքի տիրեցի. անոնց պատերազ-
մողները սպաննեցի. աւարնին առի տարի։
50 մարդ կենդանւոյն գերի բռնեցի. անոնց
քաղաքներն աւերեցի,

112. քանդեցի, կրակով այրեցի. անոնց վրայ իմ
ճոխութեանս պայծառութիւնը սփռեցի։
Բիտուրայէն[2] ելայ, Հանդիպակաց Կիրխի
երկրին Արբակի քաղաքին[3] վրայ իջայ։

113. Իմ արքայական վեհափառութենէս զար-
հուրեցան. իրենց քաղաքներն և զօրաւոր
պարիսպները թողուցին. կեանքերնին ազա-
տելու համար՝ Մատնի ահագին լերան վրայ
ելան։

---

1 Անտարակոյս այս լեռն Հաշտեանք գաւառին հարաւակողմն էր։

2 Այլափոխ ընթերցուած՝ Պիտուրա։

3 Տես թիւ 116 եւ համմատէ հետեւեալ ծանօթութեան հետ։ Արբակի քաղաքն Ծոփաց աշխարհին Ազրու գիւղաքաղաքն ըլլալու էր։

Digitized by Google

114. Անոնց հետամուտ եղայ. դժուարագնաց
լեռներու մէջ անոնցմէ 1000 պատերազմող
մարդ խորտակեցի. անոնց արեամբն լեռը
ներկեցի. անոնց դիակներովը զձորձորս
115. Եւ զանձուկս լերանց լցուցի: 200 մարդ կեն-
դանւոյն գերի բռնեցի. ձեռքերնին կտրեցի.
2000 հոգի գերի տարի. անոնց արջառն եւ
ոչխարները
116. անհամար թուով առի տարի: Արբակի քա-
ղաքին,[1] Իյայա եւ Սալանիբա ամրոցներուն
տիրեցի. (անոնց) պատերազմողները սպան-
նեցի, կողոպուտնին առի:
117. Նաիրի երկիրներուն մէջ 250 քաղաք իրենց
զօրաւոր պարիսպներովն աւերեցի, քանդեցի,
աւերած ու խոպան երկիր դարձուցի: Անոնց
երկրին հունձքը հնձեցի, ցորեն
118. ու յարդ Տուսխայի մէջ համբարեցի: Զա-
մանիի որդի Ամմիբա՛լայէն իւր աւագորեարն
ապստամբած եւ զինք սպաննած էին: Առ ի
հանել զվրէժ
119. Ամմիբա՛լայի՝ յառաջ խաղացի: Ցերեւաց
փայլակնացայտ զինուցս եւ հզօրագոյն ճո-
խութեանս
120. մարդիկն վախցան. սպառազինեալ (°) կառ-
քերը, զօրականաց կազմածը, երիվարները, 460
121. երիվար, անոր կառաց ձիոց հարկիքը, 2 տա-
ղանդ արծաթ,[2] 2 տաղանդ ոսկի,[3] 200 տաղանդ
122. անագ, 100 տաղանդ պղինձ, 300 տաղանդ
երկաթ, 100 հատ պղնձի անօթներ, 3000
պղնձի սկաւառակ (°), (պղնձի °, պղնձի °,)

---

1 Իմա՛ «երկիր»: Անտարակոյս այս երկրին գլխաւոր քաղաքն Արբակի կը կոչէր, որ եւ իւր անունը տուած է վի-ճակի մը: Գլխաւոր քաղաքն 112դ տողին մէջ յիշուածն պէտք էր որ ըլլար:

2 Ֆր. 17,187.50 հր. ըստ բաբելոնական կշռոյ:

3 275,000 Ֆր. ըստ բաբելոնական կշռոյ:

123. — 1000 հատ գոյնագոյն հիւսուած կտաւեայ(°) զգեստներ, բաժակներ, նեցուկներ(°), փղոսկրէ եւ ոսկիէ աթոռներ,
124. որոնք անոր պալատան գանձը կը կացուցանէին, 2000 զուարակ, 500 ոչխար, անոր կինը՝ իւր հարուստ օժտիւն, զդստերս
125. աւագորերոյ նորա՝ իրենց հարուստ օժիտներովը՝ առի։ — —[1]

Հետեւեալ տասնաերկու տողերն Տարեգրութեանց այլափոխ ընթերցուածն են ի Cuneif. Inscr. of West. Asia, Rawlinson, III. 6։ Այս ընթերցուածոյն արձանագրութիւնն Ասուրնածիրաբաղայ Մենատարն կը կոչուի։

42. Ապստամբ Բուրրամաննուն մորթազերծ ըրի. անոր մորթովը Սինաբուի[2] որմը ծածկեցի. անոր եղբայրը զԱրտիանու պետ կարգեցի։
43. — 2 մնաս ոսկի,[3] 13 մնաս արծաթ,[4] 1000 ոչխար, 2000 չէ ղոտ չէ ի սակ հարկի անոր վրան դրի։ Սինաբու, Տիդու....* բերդաքաղաքները՝ որոնց մէջ
44. Ասորեստանի թագաւորն Սաղմանասար՝ իմ պերճափայլ նախորդս, Նաիրիի դէմ բնակիչներ հաստատած էր, եւ զորոնք Արուամու երկրին մարդիկն բռնութեամբ կորզած էին,
45. իմ իշխանութեանս դարձուցի։ Զասորեստանեայս՝ որոնք Նաիրիի մէջ Ասուրայ բերդաքաղաքները պաշտպանած էին եւ զորոնք Արուամու երկիրը
46. քշած տարած էին, իրենց քաղաքներուն եւ բերդաքաղաքաց մէջ դարձեալ հաստատեցի, հանգիստ տեղերը բնակեցուցի։ Զ 15(00)

1 Շարունակութիւնը տես էջ 125։
2 Որ եւ Կինաբու, Կապան քաղաք Մեծ Ծոփաց։
3 9166 Ֆր. ըստ բաբել. կշռոյ։
4 3724 Ֆր. ըստ բաբել. կշռոյ։

47. տխլամ զինուորս Արմայա երկրին[1] Ամմիպա՛լեայ՝ որդւոյն Զամանեայ, քարշեցի Ասորեստան բերի ։ Նաիրիի հունձքը
48. հնձեցի, եւ իմ երկրիս օգտին համար ցանոնք Տուսխայի, Դամդամուսայի, Սինաբուի ու Տիդուի մէջ համբարեցի ։
49. Նիրդուն, Լուլուտա, Դիրրա, Ագգունու, Ուլլիբա,[2] Արբակի[3] — Նիրբի երկիրներուն քաղաքաց տիրեցի. անոնց զօրքերը սպաննեցի,
50. կողոպուտնին առի. անոնց քաղաքներն աւերեցի, քանդեցի, աւերած ու խոպան երկիր դարձուցի ։ Հարկեր ու տուրքեր եւ "ուրասի" պաշրօնէաս մը Նաիրիի վրայ դրի ։
51. Անոնց վրայ իմոյ իսկ անձին մէկ փոխանորդը կարգեցի ։ Որպէս զի անոնք ծառայութիւն մատուցանեն, զինուցս սարսափը, ճոխութեանս զօրութիւնը Նաիրիի վրայ թափեցի ։
52. Սուպրիի[4] հարկը՝ արծաթ, ոսկի, պղինձ, ...*, անագ, երկաթ, կաթսայներ (՞), անօթներ, արջառ, ոչխարներ, ձիեր,
53. ....* Դամդամուսա քաղաքին մէջ ընդունեցայ ։ Նաիրիի երկրէն դառնալուս ատեն՝ Խամանուի[5] մէջ Սուրային տիրեցի ։

---

1 Այս երկիրն՝ յորում էին Ախլամիք, Ասորեստանի հարաւոյ արեւելից կողմանքը վիճակ մըն էր. Fr. Hommel, Geschichte Babyloniens und Assyriens, Berlin 1885, էջք 502 եւ 525, Ծանօթ. 1 ։ Ամմիպա՛լի կամ Ամմիբա՛լա՝ Նաիրի մէկ արքայիկն, իւր բանակին մէջ ծառայելու համար վերոյիշեալ տխլամ զինուորներն արամէական Արմայա երկրէն բերել տուած էր ։

2 Այլուր Ուլլուբա. տես Թագղաթփաղասարայ Գ. Նէմրուդայ Տախտակն, տող 25 եւ Ծանօթ. ։

3 Մաթ Արբաքի, երկիր Արբակի ։ Տես ի վեր անդր 112 եւ 116 տողերը ։

4 Մեծ Ծոփք ։

5 Ասորւոց եւ Կիլիկիոյ Ամանոս լերան վիճակն ։

Digitized by Google

Բ. Սե-ն շա-րու-նա-խու-րի-նն: 125, .... Աշուր-նածիրապլու՝ արքայ մեծ, .....

126...... դիւցազն այրասիրտ .......

127...... որ Դկղաթ գետոյն հունէն[1] մինչեւ ցԼիբանան եւ ցծովն

128. մեծ Լա-քէ երկրին՝ իւր շրջանակաւը, Սու-խի-ի, Ռա-պի-քի-ի՝ իւրեանց ընդարձակ տարածութեամբը, յականց

129. Սուբնատ գետոյ մինչեւ ցՀանդիպակաց կիրճն իւր ձեռքովը տիրեց, Կիրրուրիի կիրճէն մինչեւ Կիրզանի երկիրն, ....

130. . . . . . . . . . . . . գլերդս

131. Կար-դու-նի-աշ[2] երկրին իմ երկրիս վիճակին միացուցի. եւ Նաիրիի ընդարձակ երկիրներուն իրենց ամբողջ տարածութեամբը տիրեցի:

. . . . . . . . . . . . . . .

Սէ-ն գ. . . . . . . . . . . . . .

92. ... Շամանուրիի անուանակիր տարին,[3] Այար[4] ամսոյն 20դ օրը

93. Կալ[խի°]էն ելայ, Տիգրիսի վրայէն անցայ, Քէ-ա-նէ երկիրն իջայ ....

94. .... Մինչդեռ նոքա Խու-ղի-րի-նայի[5] մէջ էին, Զալլայի Խատի՚այ եւ Ասսայի[6] Գիրիդադիայ հարկը՝ արծաթ,

95. ոսկի, արճիճ, ոչխար ընդունեցայ: ....

96. .... Խու-ղի-րի-նաէն ելայ, վերին Եփրատայ ափունքը հասայ.

---

1 Տիգրիսի արեւմտեան ճիւղոյն աղբերակունքն:

2 Բաբելոն քաղաքին վիճակն:

3 Ք. ա. 867:

4 Ապրիլ-Մայիս:

5 Վերին Միջագետաց արեւմտակողմն վիճակ մը:

6 Աղձնեաց Աղնուաց Զոր գաւառին նախկին անունն էր Ասսա:

97. զԿո–ջջո– կորեցի անցայ, Խո–փփո–ցո–ոց երկրին Հանդիպակաց Ասսա ո– Կիրխի երկրաց քա-ղաքներուն իջայ։ Ումալիա, Խիրանու

98. ամուր քաղաքաց՝ որոնք Ադանի երկրին մէջ են, տիրեցի, անոնց բազմաթիւ պատերազմող-ները սպաննեցի, անհամար կողոպուտնին

99. առի տարի. քաղաքներն աւերեցի, քանդեցի, անոնց վիճակաց 150 քաղաքները հրով այ-րեցի։ Կարանիաէն

100. ելայ, Ամադանի լերան կիրճը մտայ, Դիրրիա[1] երկրին քաղաքներուն իջայ։ Զ.քաղաքս ի մէջ

101. Ամադանի ե– Արքանիա լերանց հրով այրեցի։ Մալլանու երկիրը՝ որ Արքանիա լերանց մէջն է՝ իմ անձինս իսկ (իշխանութեան) տակ դրի։ Մալլանիէն ելայ,

102. դաշտին եզերքն եղող Զամբա երկրին քա-ղաքները հրով այրեցի։ Ջուա[2] գետոյն վրայէն անցայ, Տիգրիսի քով բանակեցայ։ Զ.քաղաքս՝

103. որ ի վերայ լերինն Արկանիոյ՝ յայսկոյս եւ յայնկոյս Տիգրիսի, աւերած ու խոպան եր-կիր դարձուցի։ Ամբողջ Կիրխու գարհուրեցաւ, ոտքերուս

104. փարուեցաւ։ Անոնցմէ պատանդներ առի. ի-մոյ իսկ անձին փոխանորդն անոնց վրայ կար-գեցի։ Ամադանի լերան կրճին մէջ Բարզանիս-տունէն դուրս ելայ,

105. մօտեցայ Դամդամուսային[3] որ Իլանիի՝ Զա-մանիի որդւոյն ամրոցն է. Քաղաքն յարձակ-

---

1 Այլ ընթերցուած Դարիա, Դիրա, Դիրրա ընթեր-ցուածոց։

2 Անտարակոյս՝ արեւմտեան Տիգրիսի օժանդակ գետ մը, որուն անուան ձեւն ըստ ամենայնի ուրարտեան կը հնչէ եւ կը թարգմանի "ծով,,։

3 Արքայիկի մ'այս ամրոցն զատ եւ որիշ է Ասուրնա-ձիրաբաղայ Դամդամուսա "Թագաւորական քաղաք,,էն (տես սիւն Ա. 103)։

Digitized by Google

մամբ առի. զօրքս Թռչնոց նման անոր վրայ խոյացաւ:

106. Անոր պատերազմողներէն 600ը զէնքով նկուն ըրի. գլուխնին կտրեցի. 400 հոգի կենդանւոյն գերի բռնեցի.

107. — 3000 գերի երկրէն դուրս տանել տուի: Այն քաղաքը նոյն իսկ իմ անձինս (իշխանութեան) տակը դրի: Կենդանի մնացող մարդիկն և կառափունքը Ամիդի[1] իւր Թագաւորական քաղաքը տանել տուի:

108. Անոր քաղաքին դրան դիմացը կառափունքէ կոթող մը կանգնեցի. կենդանի մնացող մարդիկն իւր քաղաքին բոլորտիքը ցիցերու վրայ վարսել տուի:

109. Անոր քաղաքին դրան մէջ ջարդ ընել հրամայեցի. անոր պարտէզներն ապականեցի: Ամիդիէն ելայ, Ալլաբրայի[2] Կասիարի[3] լերան կրճին մէջ

110. մխեցայ, որուն մէջ ոտք կոխել եւ անոր մէջէն անցնիլ Թագաւորաց իմ հարցս մէջէն եւ ոչ մէկն համարձակած էր: Ուդայի[4] որ Տուբուսիի որդւոյն Լապտուրիին ամրոցն էր,

111. մօտեցայ: Քաղաքին վրայ փայտեայ աշտարակներով (°) եւ նեղիչներով յարձակեցայ. քաղաքին տիրեցի: Անոր պատերազմողներէն 1400 հոգի զէնքով նկուն ըրի. 580 հոգի կենդանւոյն

112. գերի բռնեցի. 3000 հոգի գերի երկրէն դուրս տանել տուի: Կենդանի մնացող մարդիկն իւր քաղաքին բոլորտիքը ցիցերու վրայ վարսեցի. ուրիշներուն

---

1 Ամիդ՝ գլխաւոր քաղաք Աղձնեաց:

2 Անծանօթ քաղաք մը, որ Աղձնեաց հարաւոյ սահմանագլուխը պէտք էր գտնուէր:

3 Մասիոն լեռն, ի մասնաւորի անոր արեւմտեան մասն:

4 Մասիոն լերան հիւսիսոյ ստորոտն ամրոց մը:

113. աչքերը ծակելով դուրս հանեցի. Մնացեալները քշեցի՝ Ասորեստան բերի։ Քաղաքն [իմս իսկ անձին (իշխանութեան)] տակը դրի։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

120. .... Նաիրիի երկրաց, Կիրխի, Սուբարի, Նիրբի՝ երկիրներուն զօրաց վրայ՝ օդոյ դից Ռամմանի նման որոտացի։

121. Թագաւոր՝ որ Դիկղաթ գետոյն հունէն մինչեւ ցԼիբանան եւ ցծովն մեծ Լաքէ երկրին՝ իւր ընդարձակութեամբն, եւ Սուխի երկրէն մինչեւ Ռապիքու քաղաքը

122. իւր ոտից տակն առաւ, Սուբնատ գետոյն աղբերակունքէն մինչեւ ցՀանդիպակաց կիրճն[1] իւր ձեռքովը տիրեց. Կիրրուրիի կիրճէն մինչեւ

123. Կիրզանի երկիրն .....

124. .... իմ երկրիս վիճակին միացուցի .....։

125. .... Հպատակեցուցած երկիրներուս մէջ իմ կուսակալներս դրի, որպէս զի հպատակութեան ծառայութիւն մատուցանեն. տուրքեր

126. անոնց վրայ դրի։ . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

## Առաջնակերպ Արձանագրութիւնն:[2]

1. Ապարանք Ասուրնաձիրաբաղայ .....
2. ... արքայի Ասորեստանի......

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

4. .... արքայի որ .....

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

---

[1] Հաւանականաբար՝ Ըլլաբրայի Կասիարի լերան կիրճն. տե՛ս Սիւն Գ. 109։

[2] Ա. Հ. Լէյարտ՝ հին Քաղան (Նիմրուտ) քաղաքին աւերակաց եւ Ասուրնաձիրաբաղայ պալատան մէջ 1846 տարին գտաւ այս արձանագրութիւնը, որ այլեւայլ տարբեր ընթերցուածներով հարիւրէն աւելի նման օրինակներ ունի։ Ասոնց մէջ վերոյգրեալն գեղեցկագոյնն ըլլալուն պատճառաւ՝, "Առաջնակերպ Արձանագրութիւն" (անգղ. the Standard

Digitized by Google

7.....Նաիրիայ երկրաց, Կիրխի, Սուբարի եւ Նիրիբ երկիրներուն բանակները խորտակեց,

8.....արքայի՝ որ Տիգրիսի հունէն մինչեւ Լաբնանա լեռը.....

9. Սուբնատ գետոյն աղբերակունքէն մինչեւ Ուրարտի՝ իւր ձեռքովն տիրեց։ Կիրրուրի երկրին կիրճէն մինչեւ Կիրզանի երկիրն.....

10. . . . . . . . . . . . . . . . . .

11...., իմ երկրիս վիճակին միացուցի։

. . . . . . . . . . . . . . . .

## Պալաւաղայ Ուխտական արձանագրութիւնն[2]:

1. Ասուրնաձիրաբաղ՝ արքայ մեծ, արքայ հզօր,

. . . . . . . . . . . . . . . .

10...... յաղբերականց

---

Inscription) կոչուեցաւ։ Տես Լէյարտ, Inscriptions in the cuneif. character, 1851, տախտ. 6։ Էտիմպուրկայ “Սկովտիոյ Հնութեանց ընկերութեան„ Թանգարանին մէջ կը պահուի արձանագրութիւնս։ Զայն թարգմանած է Հ. Փ. Դալպոդ. այս թարգմանութիւնս հրատարակեցաւ ի Records of the Past, VII, էջք 9—14. սակայն թէ ընթերցման եւ բուն թարգմանութեան ճշդութեան եւ թէ տողերուն ամբողջութեան նկատմամբ պակասաւոր է այն։ Բնագիրն Եբ. Շրատէր (Akademische Buchdruckerei — G. Vogt — in Berlin) եւ Լ. Ապէլ եւ Հ. Վինգլէր Keilinschrifttexte zum Gebrauch bei Vorlesungen, Berlin, 1890, S. 6) հրատարակած են։ Այս վերջնոցս հրատարակած բնագրին վրայէն կատարած ենք մեր թարգմանութիւնը։ — Մատադրութեան արժանի է սա կէտն թէ Ուրարտի կամ Ուրարտու փոքր վիճակին անունն առաջին անգամ այս արձանագրութեամբ է որ մեզի կը ծանօթանայ։

1 Այլ ընթերցուած՝ “մինչեւ Հանդիպակաց կիրճն„։ Տես Եբ. Շրատէրայ եւ Վինքլէրի հրատարակած բնագիրը։

2 Նինուէի արեւելակողմն Պալաւաղ կոչուած հողաբլրոյն տակէն 1878ին Որմիզդ Ռասսամ մարմարիոն քարէ

11. Սուբնատայ մինչեւ ի կիրճս
12. երկրին Կիրրուրեայ, մինչեւ յերկիրն Կիրզանի

. . . . . . . . . . . . . . . .

18. . . . . . . յերկիրն
19. իմոյ աշխարհիս այսրէն դարձուցի, եւ լայնածաւալ [տարածութեամբը
20. ՛Նաիրիի երկիրներուն ծայր ի ծայր բովանդակ[
21. տիրեցի . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

## Որսոյ արձանագրութիւնն[1]:

Սէ–ն Ա. 1. Որովհետեւ Նինիբ ու Ներգաղ
որոնք անոր քրմութիւնը կը սիրէին, դաշտի որս
2. անոր շնորհեցին, . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

12. . . . . . բարձրաբերձ լերինք [յաւուրս
13. անոր որսոյ ակնկալութիւններ կու տային,[
14. ցրտոյ, ձեան, կարկտի, յաւուրս ելից
15. մ–օրէ ատտեղ՝ որ պղնձի պէս կը հրաշխկանայ, ի վերայ Իքէէ,
16. Ո–րաաէ, Աշամիրէ, Անէօ–րնա, Պէշէտրա,

---

արկեղ մը մէջ դրուած ճերմակ կաճէ (albâtre) տախտակ մը գտաւ, որոնք զարդիս Բրիտանական Թանգարանին մէջ են: Յիշեալ տախտակին վրայ Ասուրնածիրաբաղ իւր աշխարհակալութիւնները գրած եւ Մաքիրայ՝ երազոց դից մեհենին մէջ դրած էր: Տես Records of the Past n. s. Հտր. Դ. էջք 80–85: Ասուրնածիրաբաղայ թեկեալ կոթողին արձանագրութիւնն տես ի վեր անդր (Սաղմանասար Ա.):

[1] Արձանագրութիւնս ընկեալ կոթողի մը վրայ փորագրուած է: Կոթողն՝ որ զարդիս Բրիտանական Թանգարանին մէջն է, գտնուեցաւ ի Գույունճըգ՝ որ բլուր մըն է Նինուէի անմիջապէս դիմացը: Ոմանք յասուրագիտաց այս արձանագրութիւնը Թագղաթփաղասարայ Ա. կ'ընծայեն. սակայն կարի հաւանական կը համարուի թէ Ասուրնածիրաբաղայ ըլլայ: Տես ի Cuneif. inscr. of West. Asia, I. 28 եւ Եբ. Շրատէրայ Keil. Bibl., 1889, Հտր. Ա. էջ 122—129:

17. Եւ կատարի լերանց Ասորեստանի, ի վերայ խառն լերին՝ [րուն լերանց վրայ
18. առ եռի Լուլումի երկրին, եւ Նաիրիի երկիրնե–
19. այծքաղեր (°), յամոյրեր (°), վիթեր (°),
20. եղջերուներ (°) ցանցերով բռնեց։
21. Անոնցմէ մեծ բազմութիւն հաւաքեց, ձագեր ծնանել տուաւ. [սեպեց։
22. զանոնք ունանալը՝ ոչխարներ ունենալու պէս[
. . . . . . . . . . . . . . . . .

## *Սուբնատ գետոյն Այրին արձանագրութիւնն*[1]:

1. . . . . .* [առ] Ասուր աստուածն մեծ, տէրն աստուածոց, [առ] Շամաս . . .*
2. . . . .* [առ աստ]ուածս մեծս, որոնք կը սիրեն [իմ թագաւորութիւնս],
3. [որոնք] . . . .* իմ թագաւորութիւնս, որոնք [տէրու]թեան[ս] (°) առջեւէն կը քա[լեն],
4. . . . . .* [առ] Շամաս՝ որ կը հաստատէ . . .*
5. . . .* [Ասուր]նա[ձիր]աբալ՝ թագաւոր ժողովրդոց (°), թագաւոր Ասորեստանի,
6. [որդի Թագղաթադարայ՝] արքային ժողովրդոց (°), արքային Ասորեստանի, որ տիրեց ի[
7. [արեւելից[2] մինչեւ ցծովն արեւմտից[3]], [ծովէն
8. . . . . . . . . . . . . . . . . *

---

1 Արձանագրութիւնս չարաչար խորտակեալ է, այնպէս որ Եբ. Շրատէր եւս չէ յաջողած մի միայն առանձինն կամ կիսակ բառերէ եւ կամ համառօտ ոճերէ ամբողջ մը կազմել։ Ինչ որ վերագոյն յառաջ բերինք՝ կրնայ թերեւս Ասուրնաձիրաբաղայ արձանագրութեան վերաբերիլ, զոր իւր Ցարեգրութեանց մէջ (սիւն Ա. 105) կը յիշէ։ Տես Եբ. Շրատէրայ Die Keilinschriften am Eingange der Quellgrotte des Sebeneh-Su, էջք 13, 29։

2 Կապուտան ծով եւ կամ Պարսից ծոցն։

3 Հաւանականօրէն՝ Միջերկրական ծովն։

*Սաղմանասար Բ. (Ք. ա. 860—825) Նիմրուտայ կոթողին Տարեգրութիւնք*[1]:

. . . . . . . . . . . . . . . . .

15. Սաղմանասար՝ ժողովրդոց բազմութեանց թագաւորն, իշխանն, Ասուրայ քրմապետն . . .
16. . . . . . . որ կորեց անցաւ
17. ամէն երկիրները . . . . . . .
35. . . . . . . կառավարութեանս 3դ տարին[2] Ախունի՝
36. Ադինիի որդին, իմ հզօրգինուցս երեսէն փախըստական գնացած էր, Եւ զՏիլ-Բարսիփ[3]
37. իւր արքայանիստ քաղաքը թողուցած էր։ Եփրատայ վրայէն անցայ, [ափունս
38. Անա Աշշուր-ուտիր-ասբատ[4] քաղաքը՝ որ ի միւս[
39. Եփրատայ ի Սագուր է, զոր
40. Խաթթացիք Պիտրու կը կոչեն,
41. իմ իշխանութեանս գրաւեցի։ Ի դարձիս՝
42. Ալզիի[5] կրճերուն մէջ մտայ։ Ալզի, Սուխ[մի[6]]

---

[1] Տարեգրութիւնքս ի Նիմրուտ կենդրոնական պալատին փլատակներուն մէջ գտնուած՝ փոքր կամ սեւ-ցուած կոթողի մը վրայ փորագրուած են։ Նոյնը գտնողն Ա. Հ. Լէյարտ անգղիացին՝ որ յետոյ ի Կոստանդնուպոլիս դեսպան եղաւ, նախ հրատարակեց այս արձանագրութիւնը ի Inscriptions in the cuneiform character եւն. տախտակք 87–98։ Զայն թարգմանեցին շատերն. տես Յ. Ոպ-բերդ, Histoire des Empires, Versailles 1865, էջք 108—116, եւ Հուգոն Վինքլէր՝ Եբ. Շրատերայ Keil. Bibl. հաւաքածոյին մէջ հտր. Ա. էջք 128—151։

[2] Ք. ա. 857։

[3] Արդի Պիրէճիք քաղաքն։

[4] Կը նշանակէ «Ասուրայ համար նորոգ շինեցի»։

[5] Եկեղեաց գաւառ Մեծ Հայոց։

[6] Այս թագաւորին Մենուաքարին արձանագրութեան (Բ. 45) եւ Սուբնատ գետոյ այրին արձանագրութեան (տող 11) մէջ Սուխմի, որ Արածանւոյ միջին կողմանց աջոյ եզերաց վրայ ըլլալու էր։

43. Դախաինի, Նիմմի[1] երկիրներուն եւ Արզասկունու[2] արքայական քաղաքի
44. Ուրարտացի[3] Արամիին, Կիրզանու եւ Խուբուսկիա երկիրներուն (տիրեցի[4]):
45. Ասուրբանուձուրայ անուանակիր տարին՝[5] Նինուէէն ելայ, Եփրատին վրայէն
46. Ջրոց բարձրութեան ատեն անցայ, Ախունիի ետեւէն գնացի,

. . . . . . . . . . . . . . . .

49. . . . . . . զանի իմ քաղաքս Ասուր
50. բերի: Նոյն տարին Կուլլար երկիրը կտրեցի անցայ. յերկիրն Զամուայ՝[6]
51. որ անոր հանդիպակաց է, իջայ. քաղաքաց Նիկդիարայ Իդացւոյ[7]
52. եւ Նիկդիմայ տիրեցի: Կառավարութեանս 5դ տարին՝[8] դէպ ի Կասիարի[9] վեր ելայ, քաղաքաց

---

1 Կարնոյ գաւառին Հարաւոյ արեւմտակողմը պէտք էր որ ըլլար այս վիճակն:

2 Կարնոյ գաւառին Հարաւոյ արեւելակողմը՝ Արծն քաղաք:

3 Կարնոյ գաւառն, որ հնագոյն ժամանակաց մէջ Ուրարտու անուամբ աւելի ընդարձակ պէտք էր որ ըլլար:

4 Դպրին կամ փորագրչին կողմանէ այս բառն թողեալ է:

5 Ք. ա. 856 տարին: Անուանակիր տարիներուն շարքը չշփոթելու համար անհրաժեշտ "Ասուրբանուձուր,, պէտք է կարդալ, որ Սաղմանասարայ 4դ տարին կը ցուցընէ, որուն եւ 52դ տողին մէջ կը յաջորդէ անոր 5դ տարին: Դաին (= Դան) — Ասուրայ անունն 6դ տարին կը ներկայացընէ, այսինքն է 854: Եթէ այս անունն Ասուրբանուձուր անուան տեղը դրուի, յայտնապէս ետեւառաջութիւն կը ծնանի:

6 Կապուտան ծովուն Հարաւոյ արեւմտակողմը Ցամբեր գաւառն:

7 Իդու՝ յայտնապէս Զամուայի փոքր մէկ վիճակն էր:

8 Ք. ա. 855:

9 Մասիոն լեռնաշղթայն:

Digitized by Google

53. ամրոց[1] տիրեցի. զԱսուր-իտտի-Շիրու-րիաի[2] իւր քաղաքին մէջ փակեցի, զատուրս Նորա

54. բազում ընկալայ ի Նմանէ[3]։ . . . .

## Արշաւանք ի Միջագետս եւ յԱսորիս:

67. կառավարութեանս 7դ տարին՝[4] Տիլ-Աբնիցի[5] խա(°)րատին քաղաքներուն վրայ խաղացի գնացի.

68. անոր ամուր քաղաքին Տիլ-Աբնիի՝ անոր վիճակին քաղաքներովը հանդերձ՝ տիրեցի։

69. Տիգրիսի մինչեւ աղբերակունքը՝[6] այն տեղն ուր ջրոյն բղխման տեղը կը գտնուի, գնացի։

70. Հոն Ասուրայ զէնքերը փառաւորեցի, իմ աստուածոցս զոհ մատուցի, խրախճութեան խնջոյք մը

71. կատարեցի, իմ անձինս մէկ մեծ արքայական արձանը յօրինեցի. Ասուրայ իմ տեառնս զօրութիւնը[7], զգործս

72. իմոյ քաջութեան է— այն ամէն բան՝ զոր օտար երկիրներուն մէջ գործեցի՝ անոր վրան գրեցի հոն կանգնեցի[8]։

---

1 Այս է՝ "ամուր քաղաքաց"։

2 Կը թարգմանի "Ասուր՝ Շիրուայ ամուսինն իմ հովիւս է"։

3 Չէ յայտ թէ այս թագաւորին վիճակն ուր էր. սակայն իւր անունէն կրնանք գուշակել թէ Նաիրեան թագաւորներէն չէր, եւ իւր քաղաքն Մասիոն լեռնաշղթային հարաւակողմն էր։

4 Ք. ա. 853։

5 Այս վիճակին եւ նոյնանուն բերդաքաղաքը վերին Միջագետաց արեւմտակողմը պէտք է փնտրել։

6 Բառացի "մինչեւ ցգլուխ ջրոյ"։ Այս Տիգրիսին՝ գետոյն արեւմտեան ճիւղն է։

7 Կամ "համբաւը"։

8 Սուբնատ գետոյ այրին մէկ արձանագրութիւնն։

### Արշաւանք ի Բաբելաստան, յԱսորիս եւն:

92. .... կառավարութեանս 15դ. տարին[1] Տիգրիսի եւ Եփրատայ[2] աղբերակունքը գնացի, զպատկեր
93. իմ արքայական անունս քարայրերուն մէջ կանգնեցի[3]:

### Արշաւանք յարեւելակողմն Ասորեստանի, յԱսորիս, ի Թոքէլ, եւն:

110. .... կառավարութեանս 24դ. տարին[4] ընդ-գետն Զաւ [Նամրիի երկրին վրայ
111. տորին անցայ. Խաշիմուր երկրէն անցայ,[
112. իջայ . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . .

119. . . . . . Նամրիէն ելայ, զՀարկն 27 թագաւորաց
120. Պարսուայի[5] ընկալայ: Պարսուաէն ելայ, ի
121. դաշտավայրս (°) Ամադայ-այ[6] երկրին .... իջայ:

### Արշաւանք յԱսորիս:

141. .... կառավարութեանս 27դ. տարին[7] պատերազմիկ կառքերս եւ զօրքս գումարեցի, զԴաինիասուր

---

1 Ք. ա. 845:

2 Աստէն Եփրատ անուամբ հաւանականօրէն Արածանի՝ արդի Մուրատ-Սու իմանալու է:

3 Ցայտ է թէ Սալմանասար Բ. Սուբնատ գետոյ այրին մէջ երկրորդ արձանագրութիւն մ'ալ կանգներ է: Իսկ Արածանւոյ աղբերականց քարայրն եւ իւր հոն կանգնած արձանագրութիւնն տակաւին անծանօթ են:

4 Ք. ա. 836:

5 Կամ Բարսուա, կապուտան ծովուն հարաւակողմն դէպ յարեւելս տարածեալ վիճակ մը, որուն անունէն ծագած կ'երեւի Պարսկահայք նահանգին անունն:

6 Այս է Մարաց կամ Մեդացւոց:

7 Ք. ա. 833:

Digitized by Google

142. զՏուրտան՝[1] բանակին ստուար մասին հրամանատարն ի գլուխ զօրացս Ուրարտուի վրայ ղրկեցի։
143. Իջաւ ի Բիտ-Զամանի[2] եւ Ամմաստուբիի կիրճին մէջ Արզանիային[3] վրայէն անցաւ։
144. Ուրարտացի Շիդուրի[4] այս բանիս լուրն առաւ, իւր մեծաթիւ զօրաց բազմութեանը
145. վստահացաւ եւ պատերազմ ու ճակատ տալու համար ինծի դէմ քալեց։ Անոր հետ պատերազմեցայ[5],
146. անոր յաղթեցի։ Իւր զօրացը դիակներովը ընդարձակ դաշտը լեցուցի[6]։

## Արշաւանք ի հիւսիսակողմն Ասորւոց։

156. Ի 29դ ամի[7]
157. կառավարութեանս՝ զօրքս եւ ճամբարս համախմբեցի եւ յուղարկեցի։ Դէպ ի Կիրխի երկիրն գնացի. անոնց քաղաքները տապալեցի,

---

1 Այս է ընդհանուր սպարապետ։ Ըստ Ս. Գրոց Տարտան (Չորրորդ Թագ. ԺԸ. 17)։

2 Աղձնեաց արեւմտակողմն վիճակ մը, որուն գլխաւոր քաղաքն Ամիդ էր։

3 Արածանի գետ։

4 Մեր ազգային առաջին արձանագրութեան Շարիդուր Ա. (Ք. ա. իբր 835—820) թագաւորն։

5 Սաղմանասար առաջին դէմքով կը խօսի, մինչդեռ բուն պատերազմողն Տուրտանն է։ Նոյն ոճը կը գործածէ ուրիշ տեղեր եւս։

6 Ասորեստանեայն խրոխտական խօսքերէն հանդերձ հաւանական չենք տեսներ թէ ասորեստանեայք յաղթող եղած եւ կամ կատարեալ յաղթութիւն մը գործած ըլլան. որովհետեւ՝ Շարիդուր Ա. իւր արքայական աթոռը վերին Եփրատէն՝ Բզնունեաց ծովուն արեւելակողմը տարած եւ Տուսպաս (յետոյ Վան կոչուած) քաղաքին մէջ հաստատած է, զոր արգելուլ չէ կրցեր Սաղմանասար։

7 Ք. ա. 831։

158. աւերեցի, հրով այրեցի, մրրկեալ կոհակաց նման՝ անոնց երկրին վրայէն անցայ։

159. Ճոխութեանս սարսափն անոնց վրայ թափեցի։ Կառավարութեանս 30դ տարին՝ երբ Կալխու[2] կը կենայի, զԴաինաասուր

160. զՏուրտանն առ իս կոչեցի՝ զհրամանատարն ստուար մասի բանակին, եւ յուղարկեցի ի գլուխ զօրացս։ Զաւ[3] գետն

161. անցաւ, Խուբուսկացւոց քաղաքներուն մօտեցաւ։ Զհարկն Դադանայի [քաղաքներէն

162. Խուբուսկացւոյ ընդունեցայ։ Խուբուսկացւոց[

163. ելայ, Մադախիրցի[4] Մագդուբիի քաղաքներուն մօտեցաւ։ Տուրք

164. ընդունեցայ։ Մադախիրցիներուն քաղաքներէն ելաւ, ի քաղաքս Ուդակիոյ

165. Մաննացւոյ[5] մօտեցաւ։ Մաննացի Ուդակի առաջի սաստկութեան զէնուց իմոց

166. զօրաց՝ զարհուրեցաւ, իւր արքայական քաղաքը զԶիրտու[6] թողուց, իւր կեանքը փրկելու համար փախաւ։

---

1 Ք. ա. 830։

2 Նինուէի հարաւակողմը՝ 32 հազարամետր հեռաւորութեամբ, Ս. Գրոց Քաղան քաղաքն եւ արդի Նիմրուտ տեղի փլատակաց։

3 Մեծ Զաւ կամ Գայլ գետ, որ Վասպուրականի մէջէն կը բղխի։

4 Թուի թէ Մահկերտան գաւառն ի հնումն Մադախիրու կը կոչուէր եւ Վասպուրականի միջին կողմանքն էր։

5 Մաննա, Ս. Գրոց (Երեմ. ԾԱ. 27) Մինի՝ եւ Նիկողայոսի Դամասկացւոյ (առ Յովսեպոսի՝ Հրէից Նախնեաց Գրք. Ա. գ. 6) Միլիւաս երկիրն, որ Երասխայ վերին կողմանց աջակողմէն դէպ ի Վասպուրականի վերին մասը կը տարածուէր։ Տես Սարգոնի Խորսապ. պալ. Մեծ Արձանագիրն, տողք 36—37։

6 Սարգոնի եւ Աստուրբանիբաղայ արձանագրութեանց մէջ՝ Իզիրտու. Սարթափ գիւղաքաղաք Վարաժնունեաց ի Տուրուբերան։

Digitized by Google

167. Պնդեցայ անոր ետեւէն, իրենիններէն անհա-
մար արջառ, օդիք եւ այծիք եւ ինչք հետս
բերի: Իւր քաղաքներն
168. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի: Ման-
նայէննա ելաւ, Խարրունացի[1] Սուլուսունուին
քաղաքներուն
169. մօտեցաւ: Անոր արքայական քաղաքն Մա-
սաշուրուին[2] և անոր վիճակին մէջ եղող տե-
ղերուն տիրեց: Սուլուսունուին
170. եւ անոր որդւոյը Թողութիւն շնորհեցի, և
իւր երկիրը դարձուցի: Տուրք ու հարկ ձիոց
եւ երիվարաց
171. հարկեաց՝ անոր վրան դրի: Հուրդիրա[3] եր-
կիրը մօտեցաւ. զհարկն Արտասարիի
172. Հուրդիրացւոյ ընդունեցայ: Ի Պարսուա վար
իջայ, զհարկն Թագաւորաց
173. Պարսուայ ընդունեցայ: Պարսուայի մէջ Ա-
սուրայ անհպատակ մնացողներուն քաղաքաց
174. տիրեցի. անոնցմէ առած գերիներս և անոնց
ինչքն Ասորեստան բերի: Կառավարութեանս
31դ տարին[4] երկրորդ անգամ դէպ ի .....*
175. Ասուրայ և Բամմանայ արշաւեցի: Նոյն ժա-
մանակ երբ Կոլխոս կը կենայի, զԴաինասուր
176. զՏուրտան՝ բանակին առաւար մասին հրամա-
նատարը՝ զօրացս և ճամբարիս գլուխը յու-
ղարկեցի, ղրկեցի:
177. Խուբուսկացի Դադայէն քաղաքներուն մօ-
տեցաւ. անկէ հարկ ընդունեցայ:

---

1 Խոռխոռունեաց գաւառ՝ յարեւմուտս հիւսիսոյ ծովուն Բզնունեաց:

2 Մեծոփ ի Խոռխոռունիս:

3 Անծանօթ վիճակ մը, որ Վասպուրականին մէջ ըլլալու էր, զայս կը ցուցընեն 172 եւ 173 տողերն: Թերեւս Ճուաշռոտ գաւառն էր այն:

4 Ք. ա. 829:

Digitized by Google

178. Քալեցի դէպ ի Զապարիա՝ յամուր քաղաքն երկրին Մուձածիրայ[1]: Զապպարիայի եւ միան-գամայն
179. Մուձածիրացւոց 46 քաղաքներուն տիրեցի: Ուրարտուի բերդաքաղաքներուն վրայ
180. քալեցի. անոր քաղաքներէն 50ն աւերեցի, քանդեցի, [հրով այրեցի]: Դէպ ի Կիրզան վար իջայ: Հարկ [Խարրանա[2],
181. Կիրզանացի Ուպուէն, . . .* էն, Բուրի-սա(?),[
182. Սազանա եւ Անդիա[3] երկիրներէն՝ արջառ, օդիք եւ այծիք, ձիեր
183. եւ ձիերու հարկիք առի: Դէպ ի . . . .* մի քաղաքներն վար իջայ. զՊիրրիա[4],
184. զՍիտիուարիա՝[4] անոր ամրոցները, եւ վիճա-կէն 22 քաղաք աւերեցի, քանդեցի,
185. հրով այրեցի: Իմ վեհափառութեանս սար-սափն անոնց վրայ թափեցի: Պարսուացւոյն քաղաքներուն վրայ քալեց:
186. Բուստու[5], Սալախամանու[6], Կինիխամանու ամուր քաղաքներուն եւ 23 քաղաքայ
187. անոնց վիճակացն տիրեցի: Անոնց պատերազ-միղները սպաննեցի, անոնցմէ բռնած դերի-ներս առի տարի: . . . . . . . . .

---

1 Խուբուսկա՝ ստորին Վասպուրականի արեւելա-կողմը Գուկան գաւառն եղած ըլլալով. Մուձածիր երկիրն ատոր արեւմտակողմը պէտք էր որ ըլլար (ոչ թէ Կորդուաց հարաւոյ արեւելակողմը). եւ ահա մեր աչաց առջեւը կու գայ Մոկաց աշխարհն: Մուձածիր երկիրն նոյնանուն քաղաք մ'ալ ունէր, որ Մոկս աւանն պէտք էր ըլլար:

2 Խարրունայի միւս ալ ձեւ:

3 Վասպուրականի մէջ Ընձեւացեաց գաւառն:

4 Կապուտան ծովուն արեւելակողմը:

5 Վասպուրականի հարաւակողմը Բուժունիք գաւառին մէկ բերդաքաղաքն: Այս քաղաքն իւր անունը վիճակին եւս տուած էր:

6 Անտարակոյս՝ Վանայ արեւելակողմն արդի Սալախանա գիւղաքաղաքն, որ Վանէն իբր 30 մղոն հեռու է:

Digitized by Google

*Բարձրաքանդակին արձանագրութիւնն:*

Ա. “Կիրզանացի Սուայի տուրքը՝ արծաթ, ոսկի, անագ, պղնձի անօթներ, գաւաթներ (°), թագաւորին գանձը, ձիեր, երկսապատ ուղտեր ընդունեցայ„:

*Մենաքարին արձանագրութիւնն*[1]:

Սէ-Ն. Ա. 1. . . . . . . . . . . . . .

5. . . . . . Սաղմանասար բազմութեանց ժողովրդոց թագաւոր . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . .

14. . . . . . թագաւորութեանս սկիզբն, կառավարութեանս առաջին տարին[2]

15. արքայական գահոյս վրայ մեծվայելչութեամբ նստայ. պատերազմիկ կառքեր եւ զօրք գումարեցի, Սիմիսի երկրին կրճին մէջ մխեցայ, յԱրիդի՝[3] ի բերդաքաղաքն

16. Նինիի մօտեցայ, քաղաքը յարձակմամբ առի. անոր տիրեցի, անոր բազմաթիւ պատերազմողները սպաննեցի, անոր արջառն առի տարի: Անոր քաղաքին դիմացը կառափունքէ կոթող մը կառուցի:

---

1 Արձանագրութիւնս՝ Ամիդ (Տիարպէքիր) քաղաքին հարաւոյ արեւելակողմն եւ նոյն քաղաքէն իբր քսան անգլիական մղոն Քարխ կամ Քուրխ կոչուած տեղը գտնուած եւ անկէ Բրիտանական Թանգարան փոխագրուած է: Այս արձանագրութիւնն թէպէտ յիշեալ թագաւորին Նաիրիի եւ Ուրարտուայ նկատմամբ մի միայն իւր կառավարութեան մինչեւ չորրորդ (856) տարին գործածները կը պատմէ, սակայն գրութեան ընդարձակ կերպիւն միւս արձանագրութիւնները կը գերազանցէ: Տես Յովակիմ Մենան, Annales des rois d'Assyrie, 1874, էջք 105 եւ հետ., Ա. Հ. Սէյս, Records of the Past n. s. Հատ. Գ. էջք 81 եւ հետ., Եբ. Շրատէր, Keil. Bibl. էջք 150—175:

2 Ք. ա. 860:

3 Թուի թէ կորճէից մէջ էր այս բերդաքաղաքն, յարեւելակողմն նոյն երկրին:

Digitized by Google

17. անոնց մանչ ու աղջիկ տղայքը խարուկի մէջ այրեցի։ Մինչդեռ անոնք տակաւին Արիդիի մէջ կը կենային, զՀարկն (երկիր) Խարգացւոյն, (երկիր) Խարմասացւոյն,
18. (երկիր) Սիմիսացւոյն, (երկիր) Սիմիրացւոյն, (երկիր) Սիրիսացւոյն[1] եւ (երկիր) Ուլմանիացւոյն՝ ձիեր, Հարկիք ձիոց, արջառ, ոչխարներ, գինի՝ ընդունեցայ։ Արիդիէն
19. ելայ. սեպ նուրբ շաւիղներ, դժուարին լեռներ՝ որոնք երկաթի դաշոյնի մը սայրին պէս դէպ յերկինս վեր կանգնուած են, պղնձի եւ անագապղնձի թիերով խորեալ պեղեցի, կառքերուն
20. եւ զօրքին քալել տուի։ Խուբուսկիա քաղաքին մօտեցայ։ Խուբուսկիա քաղաքն եւ իր վիճակէն 100 քաղաք հրով այրեցի։ Կակիա
21. Նաիրիի[2] թագաւորն՝ եւ իր զօրաց մնացորդներն զինուցս սաստկութենէն զարհուրեցան եւ ահագին լեռներ բռնեցին։ Անոնց ետեւէն լեռներուն վրայ ելայ.
22. լերանց մէջ անոնց հետ սաստիկ ճակատամարտ տուի. անոնց վրայ յաղթութիւն կատարեցի։ Լեռներէն կառքեր, զօրքեր, ձիեր, ձիերու հարկիք առի տարի։ Սարսափն վեհափառութեան
23. Ասուրայ՝ իմ տեառնս, զանոնք նկուն ըրաւ. վար իջան, ոտքերուս փարուեցան. անոնց վրայ հարկ ու տուրք դրի։ Խուբուսկիա քաղաքէն[3] ելայ,

---

[1] Աղձնեաց հիւսիսակողմը։ Թագղաթփաղասարայ Ա. Հատուածակողմանց սիւն Բ. 3, 11 տողերուն մէջ տեսնուած Սիրիսի անուն քաղաքին վիճակն։ Տես անդէն միւս մէկ քանի վիճակաց անունները։

[2] Ցայտ է թէ Խուբուսկիոյ թագաւորն Նաիրիի եւս թագաւոր կը կոչուէր. յորմէ Խուբուսկիա՝ Նաիրի եւս կ'անուանէր։

[3] Աստէն իմն՝ "երկրէն"։

Digitized by Google

24. Ուրարտացի Արամին թերդաքաղաքն Սուգու-
նիայի մօտեցայ. քաղաքին վրայ յարձակեցայ,
անոր տիրեցի: Անոր զօրքերէն շատերը սպան-
նեցի.

25. կողոպուտին առի տարի. անոր քաղաքին դի-
մացը կառափներէն կոթող մը շինեցի: Իւր եր-
կրէն 14 քաղաք հրով այրեցի: Սուգունիայէն
26. ելայ, դէպ ի Նաիրիի ծովն վար իջայ. զէնքերս
ծովուն մէջ մխրճեցի. աստուածոցս զոհեր մա-
տուցի: Նոյն ժամանակ իմ անձինս պատկերը
27. շինեցի, Ասուրայ՝ պերճափայլ տեառն, իմ
տեառնս՝ համբաւն եւ իմ կարող զօրութիւնս
անոր վրան գրեցի, ծովուն քով կանգնեցի:
Երբ կը դառնայի
28. ծովէն, Կիրզանացի Ասուին հարուստ տուրքը՝
ձիեր, արջառ, ոչխարներ, գինի, իւրաքան-
չիւրն ողին 2 սապատ ունեցող 2 ուղտ ընդու-
նեցայ,
29. իմ քաղաքս Ասուր տարի:

## Արշաւանք ի Միջագետս եւ յԱսորիս:

Սէ-ն Բ. . . . . 30 . . . . Ասուրբէլկաինայ ա-
նուանակիր տարին[1] Դուզու ամսոյն մէջ[2], 13դ օրը
Նինուէէն ելայ.
31 . . . . . Տէլ-Բարսիպի[3] տիրեցի . . . .
. . . . . . . . . . . . . . .
34 . . . . . . Տէլ-Բարսիպի, [անունը] Կար-
Սալմանու-աշարէդ կոչեցի:
. . . . . . . . . . . . . . .
40 . . . . . Կար-Սալմանու-աշարէդէն ելայ,
Սումու երկիրը կտրեցի անցայ,

[1] Ք. ա. 857:
[2] Յունիս 20—Յուլիս 20:
[3] Արդի Պիրէճիկ քաղաքն:

Digitized by Google

41. Բիտ-Զամանի երկրին վրայ իջայ։ Բիտ-Զամանիէն ելայ, Նամդանու, Միրխիսու երկիրները կտրեցի անցայ. սեպ նուրբ շաւիղներ, լերինք

42. դժուարագնացք, որոնք դաշունի մը սայրին պէս դէպ յերկինս վեր կը բարձրանան, անագապղնձէ թիերով փորեցի. պատերազմիկ կառքերն ու զօրքը խաղացուցի գնացուցի։ Իջի յերկիրն Ինզիտի՝[1] երկրին Խուսայ[2]։ Ինզիտիի բոլոր տարածութեամբն՝ ձեռքս տիրեց։ Անոնց քաղաքներն

43. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։ Անոնց անհամար կողոպուտը, ինչքը, գոյքն

44. առի տարի։ Թագաւորութեանս մէկ յաղթպատկերը շինեցի. Ասուրայ՝ մեծի տեառն՝ կարողութիւնն եւ իմ հզօր զօրութիւնս վրան գրեցի։ Զանի Սալուրիի մէջ կանգնեցի, որ ընդարձակ գնացքի տեղ (՞) մըն է։

45. Ինզիտէն ելայ, Արծանիային վրայէն անցայ, Սուխմի[3] երկրին մօտեցայ։ Անոր բերդաքաղաքն Ուասատալն տիրեցի. զՍուխմի՝ բովանդակ տարածութեամբն՝

46. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։ ԶՍուա՝ անոնց քաղաքին տէրը՝ իմ ձեռքովս բռնեցի։ Սուխմիէն ելայ, Դաիաինիի երկրին վրայ իջայ։ Դաիաինիին՝

47. իւր բոլորակութեամբն՝ տիրեցի. անոր քաղաքներն աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։

---

1 Ծոփաց արեւմտակողմն Հանձիթ գաւառն։

2 Անդ՝ Խորձեան գաւառն։ Թուի թէ Խուսա անունն՝ Խորձենի արեւմտակողմն արդի Խօզլու գիւղոյն անուան մէջ սահմանաւորեալ է։

3 Թէպէտ անուամբ անծանօթ, սակայն այս երկիրն Ցուրուբերանի հիւսիսոյ արեւմտից ծայրն ըլլալու էր. որովհետեւ՝ Սաղմանասարայ բանակին ընթացքն դէպ ի Կարնոյ գաւառն եղած է։

Անոնց ճոխ կողոպուտը, ինչքը, գոյքն առի։
Դաիաինիէն ելայ,

48. Ուրարտացի Արրամիին[1] թագաւորական քաղաքին Արզասկուին[2] մօտեցայ։ Ուրարտացի Արրամու հզօր զինուցս սաստկութենէն

49. եւ ուժգին ճակատամարտէս զարհուրեցաւ. իւր քաղաքը թողուց, Ադդուրի երկրին լերանց[3] վրայ ելաւ։ Անոր ետեւէն լերանց վրայ ելայ. լերանց մէջ սաստիկ պատերազմ տուի, 3400

50. ի նորա պատերազմողաց զինուք նկուն ըրի։ Ռամմանի նման՝ անոնց վրայ փոթորիկ տեղացուցի. անոնց արեամբն լեռն արի (°) պէս ներկեցի, անոր բանակատեղն առի.

51. անոր մարտակառքերը, հեծեալները, ձիերը, ջորիները, որթերը, գոյքը, կողոպուտն և հարուստ ինչքը լեռներէն առի տարի։ Արրամու՝ առ ի զերծուցանել

52. զիւր կեանս՝ դժուարին լերան մը վրայ ելած էր։ Իմ առնի զօրութեամբս իւր երկիրը վայրի ցլոյ մը պէս առաթուր կոխեցի, իւր քաղաքներն աւերակ դարձուցի. զԱրզասկու՝ քաղաքօք

53. իւրոյ վիճակին՝ աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։ Անոր դրան առջեւը կառափունքէ կոթող կանգնեցի։ Զոմանս կենդանւոյն

54. [գերաններէն կախեցի], և զոմանս գերաններուն բոլորտիքը ցիցերու վրայ վարսեցի։ Արզասկուէն չուեցի, ի լեառն

55. [Իրիտիա] ելայ. թագաւորութեանս մէկ մեծ պատկերը շինեցի. Ասուրայ՝ իմ տեառնս՝ կա-

---

1 Ուրիշ տեղեր՝ Արամի, Արրամու։

2 Արզասկու, այլ ընթերցուածք՝ Արզասկուն, Արզասկունու։

3 Այսպէս Եբ. Շրատէր իւր Keilinschriften und Geschichtsforschung, Giessen, 1878, (էջք 132 134) գրքին մէջ։

րողութիւնը, եւ Ուրարտուի մէջ իմ ի գործ դրած հզօր զօրութիւնս անոր վրան

56. [գրեցի, Իրիտիա լերան վրայ] կանգնեցի։ Իրիտիայէն չուեցի, Արամալի[1] քաղաքին [մօտեցայ]. անոր քաղաքներն[2] աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։

57. Արամալիէն ելայ, Զանզուրնա[3] քաղաքին մօտեցայ։ . . .* ուտու . . .* իմ ճակատամարտէս (°) վախցաւ, ոտքերուս փարուեցաւ։

58. Ձիեր, հարկիք ձիոց, արջառ, ոչխարներ անկէ ընդունեցայ. անոր թողութիւն շնորհեցի . . .*. [Ցընթացս արշաւանացս՝] ի ծովն

59. Նաիրիի իջայ. Աշուրայ հզօր զէնքերը ծովուն մէջ մխրճեցի, զոհ մատուցի. [Թագաւորութեանս մէկ պատկերը] շինեցի. զկարողութիւն

60. Աշուրայ՝ մեծի տեառն, իմ տեառնս, իմ դիւցազնական քաջագործութեանս պատմութիւնն եւ զօրեղ գործերս վրան գրեցի։ [Ծովուն եզերքէն] չուեցի։ Կիրզանի երկրին

61. մօտեցայ։ Ասաւ՝ Կիրզանիի թագաւորն՝ իւր եղբայրներովն ե— որդւովքն ընդ առաջ իմ եկաւ, թագաւորութեան [հարկն ու տուրքն՝ ձիեր,

62. ձիոց հարկիք, ոչխարներ, գինի, իւրաքանչիւրն ողին 2 սապատ ունեցող 7 ուղտ անկէ ընդունեցայ։ Թագաւորութեանս մէկ մեծ պատկերը շինեցի, Աշուրայ՝ մեծ տեառն, իմ տեառնս՝ կարողութիւնը

---

1 Ուրարտերէն լեզուաւ կը թարգմանի “Արամայտեղի„։

2 Ասոնք՝ Արամալի քաղաքին վիճակի աւաններն ու գիւղերն եւս կրնային ըլլալ։ Տես վերագոյն 52—53 տողերը։

3 Թուի թէ Տուրուբերանի հիւսիսակողմն եղած Ծաղկոց լերան վրայ Զանզուրնա անուամբ քաղաք եւ վիճակ մը կար, յորմէ եւ յառաջ եկած է նոյն լերան անունն։

63. եւ Նահրիի մէջ իմ գործադրած հզօր զօրութիւնս վրան գրեցի, իւր քաղաքին մէջտեղը՝ իւր մեհենին մէջ զայն կանգնեցի։ Կիրզանիէն չուեցի,

64. Խուբուսկիայի թագաւոր Կակիին բերդաքաղաքին Սիլայայէն մօտեցայ։ Քաղաքին վրայ յարձակեցայ, տիրեցի, անոր զօրաց մէջէն շատերը սպաննեցի. 3000 գերի, անոնց արջառը,

65. ոչխարները, ձիերը, ջորիները, ուղտերը՝ անհամար թուով՝ առի տարի, Ասուր իմ քաղաքս բերի։ Ինզիտիի կրճին մէջ մտայ, Կիրրուրիի կրճէն՝

66. ի վերին կողմն Արբէլայ՝ դուրս ելայ։ . . . .

## Արշաւանք ի Տիլ-Բարսիպ:

69. . . . . . Ասուրբանաբուձուրի անուանակիր տարին[1] . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . .

75. . . . . . Նոյն տարւոյն մէջ Մազամուա[2] երկրին վրայ քալեցի, ի կիրճն

76. Բունաքիսլու երկրին մտայ, Նիկդիմի եւ Նիկդիրա քաղաքներուն մօտեցայ։ Հզօր զինուցս սարսափէն եւ փոթորկալից ճակատամարտէս զարհուրեցան,

77. Նաւերու վրայ . . . * ծովուն մէջ գնացին։ Ոչխարներու մորթերէն շինուած նաւերու վրայ անոնց ետեւը պնդեցայ. ծովուն մէջ տեղը սաստիկ ճակատամարտ տուի, անոնց յաղթեցի։

78. Ծովն անոնց արեամբն ասրի պէս ներկեցի։

---

1 Ք. ա. 856։

2 Որ եւ Զամուա. կապուտան ծովուն հարաւոյ արեւմտակողմն եւ անոր մօտակայ Տամբեր գաւառն. զայս կը ցուցընեն հետեւեալ տողերն։ Չկայ բանաւոր պատճառ մը, որպէս զի այս վիճակը Բզնունեաց ծովուն եզերքը կարենանք դնել։ Տես հետեւեալ արձանագր. Բ, 2։

Digitized by Google

## Արշաւանք ի Միջագետս, յԱսորիս եւ ի Հրէաստան։

## Պալաուադայ Դրանց արձանագրութիւնն[1]։

Սէ—Ն Ա. 1. Սաղմանասար՝ արքայ մեծ, արքայ հզօր, . . . .
2. անընդդիմակ, որ ապստամբները կը նուաճէ . . . . [որում ոսոխ]
3. ոչ գոյ նմա, . . . . . . . . . . .
4. որ ընդդիմութենէ չվախնար, . . . . . .
. . . . . . . . . . . . . . . .

Սէ—Ն Բ. 1. [Երբ դիք] մարդկային ազգին իշխանութեան նշանները ձեռացս մէջ բռնել տուին, . . . . գնացի ամէն երկիրներու թաւուտ լերանց
2. Ես անոնց ամէնուն տարածութեան վրայ, . . . Նաիրիի ծովէն[2] եւ Զամուա երկրին ծովէն[3]

---

1 Պալաուադ՝ արդի Մուսուլ քաղաքին արեւելակողմն եւ անկէ 24 հազարամետր հեռաւորութեամբ հողաբլուր մըն է, մօտ ի հինն Քաղանի։ Այս տեղս 1877ին Որմիզդ Ռասսամ պալատ մ'ի լոյս հանեց, զոր Ասուրնածիրաբալ նորոգած եւ իւր որդին Սաղմանասար Բ. գեղեցկացուցած էր։ Այս վերջինս պալատին համար երկու մեծամեծ պղնձի դռներ շինել տալով, նոյն դրանց եւ զասոնք բռնող սիւներուն վրայ եօթը պղնձի հորիզոնական շերտեր յարել տուած է։ Այս շերտերուն վրայ Սաղմանասարայ Բ. տիրած երկիրներուն ու քաղաքաց՝ ուռամբ բարձր քանդակեալ պատկերներն կան։ Իւրաքանչիւր շերտն երկու կարգի վրայ այսպիսի պատկերներով ծածկուած է, իսկ իւրաքանչիւր պատկերին վրայ արձանագիր մը կայ, որ պատկերաց նշանակութիւնը կը մեկնէ։ Արձանագրութիւնները նախ անգղիացին Թէօ. Բինչէս սկզբնագրով ու թարգմանութեամբ հրատարակեց։ Տես Transactions of the Society of Biblical Archaeology, 1880–1881. Դարձեալ նորին The bronze gates of Shalmaneser II 1880–1881. Տես եւ Ա. Հ. Սէյսայ հաւաքածոյքը Records of the Past, n. s. vol. IV, էջք 72–79։

2 Բզնունեաց ծով։

3 Կապուտան ծով։



Digitized by Google

մինչեւ Փիւնիկէի մեծ ծովը, Խափփայ-այ երկիրը՝ բովանդակ տարածութեամբն՝ հանդոյն ապականիչ

3. Հեղեղի ջրոց քալեցի անցայ . . . . . . .

4. . . . . . . . . . . . . . , . . .

5. . . . . . Ինզիտի երկրէն մինչեւ Դաիաինի երկիրն, Դաիաինի երկրէն մինչեւ

6. [յերկիրն] . . .*: Ուրարտացի [Արա]միին Արզասկուն թագաւորանիստ քաղաքին տիրեցի, աւերեցի, քանդեցի, հրով այրեցի: Մինչդեռ յԱրզասկուն էի, Ուրարտացի Արամու իւր զօրաց բազմութեան

Սխ-Ն Գ. 1. վստահացաւ. իւր բոլոր զօրքը ժողվեց, մարտ ու ճակատամարտ տալու համար ինծի դէմ քալեց: Զինքն բոլորովին վանեալ վարատեցի. անոր մարտիկները ցիրուցան ըրի: Իւր զօրացմէ 3000ը զինուք սպաննեցի, անոր պատերազմողաց մարմիններով

2. ընդարձակ դաշտագետինը լեցուցի, անոր պատերազմական մեքենայները, արքունի գանձերը, կահ ու կազմածն առի: Նա՝ իւր կեանքն ազատելու համար՝ դժուարին լերան մը վրայ ելաւ: Հադադայ[1] նման՝ Քուտիէ լայնածաւալ երկիրն ապականեցի: Արզասկուն քաղաքէն մինչեւ Կիրզան երկիրն,

3. Կիրզան երկրէն մինչեւ Խուբուսկիա երկիրն՝ մրրկալից Ռամման դից պէս ինկայ անոնց վրայ: Ուրարտու երկրին վրայ իմ վեհապետութեանս փառաւորութիւնը սփռեցի: . . . . . .

---

1 Լաւագոյնս ասել Նեռ (Ներրա), ժանտ ախտի այն պիղծ: Ծան. Սէյսայ:

Digitized by Google

## Ըստ վերոյգրեալ ծանօթութեանց՝ Ուրարտ̣ուն ներկայացընող շերտին (տխտկ ԺԴ) պատկերներուն վերաբերեալ մեկնութիւնք:

**Վերին մասին շերտի:**

“Նաիրիի ծովուն քով պատկեր կանգնեցի. աստուածոց իմոց զոհեր մատուցի„:

**Ստորին մասին շերտի:**

“Ուրարտ̣ացի Արամին Սուգունի քաղաքն„:

## Նիմրուտայ Ցլոյ արձանագրութիւնն[1]:

. . . . . . . . . . . . . . . . . .

28. Կառավարութեանս 15դ. տարին[2] դէպ ի Նաիրիի երկիրը քալեցի:

29. Տիգրիս գետոյն աղբերականց վրայ՝ լերան քարածերպի մը մէջ՝ անոր աղբերական բազկին ծագման տեղն իմ արքայական պատկերս շինեցի: Կարող զօրութիւնս եւ զպատմութիւն

30. իմոյ դիւցազնական քաջութեան անոր վրայ գրեցի: Տունիբունի երկրին մուից կրճին մէջ մտայ: Ուրարտ̣ացի Արամին քաղաքները՝ մինչեւ ցդլուխ

31. Ջրոյն[3] Եփրատայ[4] աւերեցի, քանդեցի, հրով

---

[1] Այս արձանագրութիւնը գտած է Լէյարտ Նիմրուտայ փլատակաց մէջ, եւ վերագոյն յառաջ բերեալ մասը հրատարակած է յիւր Inscr. in the cuneif. charact., տխտկ 47: Տես Եբ. Շրատէր՝ Die Keilinschriften und Geschichtsforschung, Giessen, 1878. էջք 129–130:

[2] Ք. ա. 845:

[3] Այս է “աղբերակունքն„:

[4] Արեւելեան Եփրատ, արդի Մուրատ-Սու:

այրեցի։ Եփրատայ աղբերակունքը գնացի, աստուածոցս զոհեր մատուցի։
32. Հոն Ասուրայ զէնքերը փառաւորեցի։ Ասիա՝ Դաիանի երկրին թագաւորն՝ ոտքերուս փարուեցաւ. ի սակ հարկի բազմաթիւ ձիեր ընդունեցայ։ Թագաւորական պատկերս շինեցի,
33. անոր քաղաքին մէջտեղը [կանգնեցի]։ . .
. . . . . . . . . . . . . . . . . .

## Սաղմանասարայ Բ. (Ք. ա. 860—825) առ Լէյարտայ թիւ 12 արձանագրութիւնն[1]:

— Ա. — 14. Ցիրելով ի վերին ծովէ[2] ե-
ի ծովէ
15. ստորնայ[3] երկրին Նաիրիայ, եւ ի մեծ ծովէ մուտից
16. արեւու[4] մինչեւ Խաման լեռը, Խաթթէ երկիրը
բոլոր բովանդակ [ցաղբերակունս
17. ստացայ։ Տիգրիսի աղբերակունքէն մինչեւ]
18. Եփրատայ ձեռքս տիրեց։ Ինզի[5] երկրէն
19. մինչեւ Սուխնի[6] երկիրն, Սուխնի երկրէն
— Բ. — 1. մինչեւ Մէլիտ երկիրն,
2. Մէլիտ երկրէն
3. մինչեւ Դաիանի երկիրն,

---

[1] Արձանագրութեանս բնագիրը հրատարակեց Լէյարտ ի Inscr. in the cuneif. charact., տախտկ 12։ Ցեսթարգմանութիւնն Եբ. Շրատէրայ Keilinschriften und Geschichtsforschung, Berlin, 1878, էջք 153–154։

[2] Բզնունեաց ծով։

[3] Կապուտան ծով։

[4] Միջերկրական ծով։

[5] Ուրիշ տեղեր՝ «Ինզիտի», Հանձիթ գաւառն յարեւմուտս Ծոփաց։

[6] Այլուր «Սուխմի» տես Սաղման. Բ. Մոնոլիթէ արձ. Բ. 45։

Digitized by Google

4. Դաիանի երկրէն
5. մինչեւ Արզաշկուն երկիրն[1],
6. Արզաշկուն երկրէն
7. մինչեւ Կիրզանի երկիրն, Կիրզանի երկրէն
8. մինչեւ Խուտուսկիա[2] քաղաքն[2],

. . . . . . . . . . . . . . . .

11. մրրկալից հեղեղի պէս քալեցի անցայ։

## Սուբնատ գետոյն Այրին արձանագրութիւնն[3]:

1. . . . .* առ Ասուր՝ տէրն աստուածոց,
2. . . . .* առ դիսն Ռամման, աստուած . . . .*
3. . . . .* սիրող . . . . .
4. . . . .* զիմ անուն։ Սաղմանասար՝
5. . . . .* ժողովրդոց բազմութեանց թագաւոր, թագաւոր Ասորեստանի, [որդի Ասուր]նածիրբաբաղայ,
6. . . . .* որդւոյն Թագղաթադարայ, թագաւորին . . . .*, [տիր]ելով
7. Նա[ի]րի երկրին ծովէն մինչեւ ց[ծովն]
8. մուտից արեւու . . . . . . . . . . .*
9. բոլոր բովանդակ տիրեց ։ . . . . . .*
10. Ինզիտիի կիրճերուն երկրին[4] . . . . .*

---

1 Այսինքն՝ Արզաշկուն քաղաքին վիճակն, որ նոյն քաղաքին բոլորտիքը գտնուող աւաններէն ու գիւղերէն պէտք էր որ կազմուէր։

2 Այլուր "Խուբուշկիա"։ Քաղաքաւ՝ երկիրն եւս կ'իմացուի։

3 Ծանօթութեանց համար՝ տես Թագղաթփաղասարայ Ա. նոյն գետոյ այրին արձանագրութեան տակ դրուածները։ Տես եւ Եբ. Շրատեր՝ Die Keilinschriften am Eingange der Quellgrotte des Sebeneh-Su, էջք 12 եւ 30։

4 Կարդա՛ մատ (երկիր) փոխանակ ենա (ի մէջ) բառին։ Այսպէս Fr. Hommel ի Geschichte Babyl. und Assyr. Berlin, 1885, էջ 600, ծանօթ, 1։

11. Սուխմի երկրին, երկրին . . . . . . . *
12. Ուրարտու երկրին . . . . . . . . .*
13. բոլոր բովանդակութեամբը . . . . . . .*
14. . . . .* իւրով [ձեռամբ] տիրեց։

## *Շամսիռամմանայ Դ. (Ք. ա. 825—812)*
## *Հարթ Կոթողին արձանագրութիւնն*[1]:

Սիւն Ա. 1. . . . . . . . . . . . . .

26. Շամսիռամման՝ արքայ հզօր, արքայ համաշխարհի,
27. . . . . . . . . . . . . . . . .
34. Սաղմանասարայ որդին, որ . . . . . . .
35. . . . . . . . . . . . . . . . .
37. կ'առնու հարկ
38. եւ ընծայներ աշխարհիս ամէն կողմերէն։
39. Երբ Աշուրդանինբալ յաւուրս Սաղմանասարայ՝
40. իւրոյ հօրն՝ թշնամութիւններ ի գործ կը դնէր, խռովութեան եւ ապստամբութեան խօսքեր [տարածած էր
41. կ'արտաքերէր, երկիրն ապստամբեցուցած՝ պա-
42. կուռոյ. բարձրագաւառին ինչպէս նաեւ ներքնագաւառին Ասորեստանեայքն իւր կողմը
43. ձգած էր, . . . . . . . . . . .
45. Նինուէ . . . . 46. . . . . Սիմմէ . . . .
47. . . . . Ասուր . . . . 48. Ամադ . . . .
49. Լուբդու, Արրապխա[2], Արբէլոյ, մինչեւ Ամիդի[3] . . . .

---

[1] Արձանագրութիւնս հարթ կոթողի (stèle) մը վրայ փորագրուած ըլլալով, Բրիտանական Թանգարանին մէջ կը պահուի։ Տես ի Cuneif. Inscr. of West. Asia, հտր. Ա. 29–31 եւ 32–34։ Տես եւ ի հաւաքածոյս Ա. Հ. Սէյսայ Records of the Past, n. s. հտր. Ա. էջք 9–22 եւ Եբ. Շրատէրայ Keilinschr. Bibl., հտր. Ա, էջք 174—187։

[2] Աղբակ կորճէից։ Անուանակիր տարիներու ցանկին մէջ Արբախու։

[3] Ամիդ, որ է արդի Տիարպէքիր քաղաքն։

Digitized by Google

50. . . . . ., ընդ ամենայն 27 քաղաք՝ իրենց ամրու-
թիւններովը, որոնք
51. իմ հօրս Սաղմանասարայ . . . կողմը թողած
52. Եւ Ասուրդանինբաղայ կողմն անցած էին,
դիցն մեծաց՝ իմ տերանցս՝ հրամանաւը
53. ոտիցս կոխան ըրի։ Իմ առաջին պատերազմա-
կան արշաւանքիս՝[1] յորում Նա՛րի երկրին վրայ

Սիւն Բ. 1. խաղացի գնացի, զհարկն՝ [Նար,
2. որ ձիերէ եւ ձիերու հարկիքներէ կը բաղկա-
3. յամենայն թագաւորաց
4. Նա՛րիայ առի։ Նոյն ժամանակ
5. զՆա՛րի՝ իւր բովանդակ տարածութեամբն՝
6. ցանցի մը պէս գետինը զարկի։
7. Ասորեստանի վիճակն՝ Պադդիրա քաղաքէն
8. Նա՛րիայ մինչեւ
9. ցԿար-Սալմանասարէ՝ որ հանդէպ
10. Թարբուսիբէ[2], Զամրի քաղաքէն՝
11. որ Ատտէ վիճակին կը վերաբերի, մինչեւ
12. Ինզի երկիրն, Արիդի[3] քաղաքէն մինչեւ
13. Սուխի երկիրն՝[4] հրամանաւ . . . .
14. . . . . ստորւածոց՝ իմ օգնականացս,
15. հանգոյն . . . .* ոտիցս առջեւ
16. խոնարհեցան։ Երկրորդ պատերազմական ար-
շաւանքիս՝[5]
17. առաքեցի զՄուտարրիձասուր՝[6] զՌաբսակ[7],

---

1 Չէ յայտ թէ ո՛ր տարւոյն մէջ եղած է արշաւանքս։

2 Եփրատայ արեւմտեան եզերաց վրայ՝ Պիրէճիքի դիմացն եւ անկէ սակաւ ինչ հարաւակողմը, քաղաք խաթ-տացւոց։

3 Տես Սաղմ. Բ. Մենաքարի արձ. Ա. 15, 17, 18։

4 Վերին Ասորւոց մէջ։

5 Այս եւս յայտ չէ թէ ո՛ր տարին եղած է։

6 Կը նշանակէ "ուսուցիչ Ասորեստանի„, տիտղոս մը՝ որ կը տրուէր զօրավարին, որ Թարտանէն ետքը կու գար ըստ աստիճանի։

7 Պետական տիտղոս մը, զորմէ տես ի գիրս Չորրորդ

Digitized by Google

18. զզգօնն, պատերազմներու մէջ զյաջողակն ե–[
19. իմ զօրացս եւ բանակիս հետ՝ [զհմուան՝
20. Նա՚րի երկրին վրայ։
21. Մինչեւ ի վեր անդր ցծովն մտից
22. արեւու[1] յառաջացայ. 300 քաղաքաց
23. Խիրսինայի՝ որդւոյն
24. Միքտիարայի, 11 քաղաքաց
25. ամրոց, այլ եւ 200 քաղաքաց
26. Ուսպինայի[2] տիրեց. անոր պատերազմողները
27. սպաննեց։ Անոնց կողոպուտը, անոնց ինչքը,
անոնց դոյքը [նոնց դստերքը
28. անոնց ստացուածները, անոնց ուստերքը, տա–
29. ռաւ տարաւ. անոնց քաղաքներն աւերեց
30. քանդեց, հրով այրեց։ Իւր դարձին՝
31. Սունքա երկրին պատերազմողները սպաննեց։
32. Զհարկն՝ որ ձիերէ եւ ձիերու [Նաիրիայ
33. հարկիքներէ կը բաղկանար՝ ի Թագաւորաց[
34. յամենեցունց առաւ։ Երրորդ արշաւանքիս
Զաբան[3] գետն
35. անցայ. Զէլու լեռը կտրեցի անցայ,
36. դէպ ի Նա՚րի վեր ելայ։ Զհարկն
37. Խուբուսկացի Դադիին,
38. Միքտիարայի որդւոյն Խիրսինային,
39. Սունբային, Մանային,
40. Պարսուային եւ Տաւրլա երկրին՝
41. երիվարներ եւ եզանց հարկեր [ռութեան
42. առի։ ԶՄիսացիս[4] երկիւղն առաջի վեհափա–

---

Թագաւորութեան, ԺԸ· 17 եւ որ զկնի, եւ Եսայի՝ ԼԶ· 2 եւ որ զհետն գան։

1 Յայտնապէս՝ Վանայ ծովն։

2 Մեր ազգային արձանագրութեանց Իսպուինիս Թագաւորն (Ք. ա. իբր 820–800)։

3 Մեծ Զաւ կամ Գայլ գետ։

4 Միսա երկիր, որ է Մաւնացոց գաւառ։ Սարգոնի խորսապատայ պալատան Մեծ Արձանագրին մէջ (տող 37) այս անունն Միսիանդի է։

43. Ասուրայ՝ տեառն իմոյ՝ նկուն ըրաւ։
44. Հզօր զինուցս սաստկութեան երեսէն
45. սարսափեցան, իրենց քաղաքները թողուցին
քաշուեցան,
46. դժուարին լերան մը վրայ հաստատուեցան։
47. Լերան կատարները՝ որոնք ամպերու նման
48. երկնքէն դէպ ի վար կը կախուէին, յորս բնաւ[
49. թեւաւոր չհասնիր, իրենց [թռչուն
50. ամրութեան տեղի ըրին։ Անոնց ետեւը պնդե-
51. լերան այն կատարները պաշարեցի։ [ցայ,
52. Մէկ օրուան մէջ արծուոյ նման անոնց վրայ
խոյացայ. [նոնց կողոպուտը,
53. անոնց բազմաթիւ մարտիկները սպաննեցի. ա-
54. անոնց ինչքը, անոնց գոյքը, անոնց արջառը,
անոնց իշեանը, [ձիոց հարկիքը,
55. անոնց ոչխարներու երամակները, երիվարները,[
56. ուղտերը՝ որոնց իւրաքանչիւրն 2 սապատ
57. ունէր, անհամար բազմութեամբ լեռնէն առի
տարի։ [աւերեցի, քանդեցի,
58. Անոր շրջակայքը գտնուող քաղաքներէն 500ն[
59. հրով այրեցի։ Գիզիլբունդա երկրին՝ վրայ

Սիւն Գ. 1. քալեցի։ Կինակի քաղաքին
տիրեցի.
2. զայն աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։
3. Բիսբիզինդա վէմ լեռը
4. կտրեցի անցայ. զհարկն Տիտամասկայի
5. Սասիաշացւոյ, Կիարայի Կարսիբուտացւոյ՝
6. երիվարներ ու ձիոց հարկիք ընդունեցայ։
7. Զբովանդակ Գիզիլբունդա իմ ճոխութեանս
վեհափառութիւնն [կիր կործանեց։
8. եւ իմ հզօր ճակատամարտիս յարձակումն յեր-

1 Վասպուրական նահանգին հիւսիսոյ արեւելակողմը Գողթան գաւառն, որ հնագոյն ժամանակներն՝ դէպ յարեւելս աւելի տարածուած պէտք էր որ ըլլար, իւր մէջը բովանդակելով Ուրաս անուր քաղաքը։ Տես հետեւեալ ծանօթութիւնը։

9. Իրենց բազմաթիւ քաղաքները թողուցին,
10. յՈւրաս[1] իրենց ամուր քաղաքը գնացին։
11. Այն քաղաքը պաշարեցի, անոր տիրեցի։
12. Անոնց զօրաց արեամբն իրենց քաղաքներուն հրապարակներն ասրի պէս [սպաննեցի։
13. Ներկեցի. անոնց պատերազմողներէն 6000ը[
14. Զպիրրիսատի՝ անոնց թագաւորը՝ իւր 1200 պատերազմողներովն
15. իմ ձեռքովս կենդանւոյն գերի բռնեցի։ Անոնց կողոպուտը, անոնց ինչքը, անոնց գոյքը,
16. անոնց արջառը, անոնց ոչխարները, անոնց ձիերը, նիւթեր
17. արծաթէ, կարմրափայլ ոսկիէ եւ պղնձէ՝
18. անհամար բազմութեամբ՝ առի տարի։ Աւերեցի, քանդեցի,
19. հրով այրեցի։ Զհարկն Ինդուրայ
20. Զիբարացւոյ առի։ Պատկեր
21. մի մեծ թագաւորութեանս շինեցի. զհամբաւ
22. Ասուրայ՝ իմոյ տեառնս, զզօրութիւն իմոյ դիւցազնական քաջութեան,
23. եւ զամենայն գործս ձեռաց իմոց՝ զորոնք
24. Նա՛րի երկրին մէջ կատարեցի, անոր վրան
25. գրեցի, ի Զիբարա
26. Գիզիլբունդայի վերաբերող անոնց ամրոցին մէջ
27. կանգնեցի։ . . . . . . . . . . . . .

## Արշաւանք ի Մարս։

37. Ի դարձիս՝ . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . .

[1] Միջին Երասխայ ձախ եզերաց վրայ գտնուելու էր այս քաղաքն, եւ ասոր անունէն առած էր անշուշտ իւր անունն այն վիճակն, զոր Ուրարտացի թագաւորն Արգիշտիս Ա. (Ք. ա. իբր 780—755) իւր Հքեղ Արձանագրութեան մէջ (Ա. 25) ՄԱՑ Ուր-յա-նէ "երկիր Ուրացւոց" կը կոչէ։ Այս վիճակն Արեւիք գաւառին հետ նոյն կը համարիմ, եւ Ուրաս ամուր քաղաքը Ծննդոց (Գլ. ԺԱ.28, 31, եւն) Ուր Կաղէշ քաղաքին հետ նոյն կը դատեմ։

44. . . . . . . Նոյն օրերը (ընկալայ) զՀարկն
45. Սիրաամիոյ (երկիր) Բաբարուրացւոյ[1], Ամախարոյ [Պարսանիցւոյ,
46. (քաղաք) Խարմիշանդացւոյ, Զարիշուայ (երկ.)[
47. Զարիշուայ (երկ.) Խունդարացւոյ, Սանաշուայ
48. (երկ.) Կիպաբարուտակացւոյ, Արդարոյ
49. (երկ.) Ուստասսացւոյ, Սումայէ (երկ.) Կինու- [կացւոյ,
50. (երկ.) Գինդիբիրոյէ Տատաէն,
51. (երկ.) Արիմայէ[2] Բիսիրաինոյ, Պարուսայ
52. (երկ.) Կիբարուսացւոյ, Ասպաստատաւկոյ
53. (երկ.°) Ուիլացւոյ, (երկ.) Կինդիստիլինզախայէ Ամամասոյ,
54. (երկ.) Մաձիրաւայէ Տարսիխուայ, Մամանիսէ
55. (երկ.) Լուկսացւոյ, Ջանզարոյ (երկ.) Գիմամացւոյ,
56. Սիրասուայ (երկ.) Սիմդուրիացւոյ, Գիստայէ
57. (երկ.) Աբդանացւոյ, Ադադանուայ (երկ.) Ասատիացւոյ
58. Ուրշիոյ (երկ.) Գինխուխտացւոյ, Բարայէ
59. (երկ.) Գինզինացւոյ, Արուայէ (երկ.) Կինդուտաւսացւոյ, [Նուայ
60. Գիռնակուսայ (երկ.) Կիբբուացւոյ, Զաբա-
61. (երկ.) Զուզարուրացւոյ, Իրտիճատիոյ (երկ.) Գինգիրդացւոյ,
62. Բարզուտայէ (երկ.) Տուրլացւոյ, Սուայէ
63. (երկ.) Նանիացւոյ, Սատիրիայէ[3] եւ Արտաշիրարիոյ[3]։
64. Նա՛րի երկրին բովանդակ Թագաւորաց վրայ՝ ի հրամանէ Ասուրայ, Շամասայ

---

1 Հաւանականօրէն Պասպարունեաց գաւառն Վասպուրականի։

2 Արիմա երկիրն՝ Ասուրնածիրաբաղայ Բեկեալ կոթողին (Գ.) Արիմի, Տարեգրութեանց (Բ. 13) Ուրումի, Մենաքարի (44, 45) Արումու երկրին հետ նոյն էր անտարակոյս։

3 Մարդոյ անուն։

65. Ի Ռամմանայ՝ աստուածոց՝ օգնականաց իմոց՝ տուրք ու հարկ
66. ձիեր, ձիերու հարկիք վասն աւուրց
67. որ գալոց են՝ դրի: . . . .

## Արշաւանք ի Բաբելաստան:

---

## Ադադնիրարիայ[1] Գ. (Ք. ա. 812—783) Քաղանայ Վիմատախտակին արձանագրութիւնն[2]:

1. Ապարանք Ադադնիրարիայ . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . .
4. որ . . . չորից կողմանց թագաւորները
5. իւր ոտից տակն առաւ, տիրեց Սիլունա լեռնէն՝
6. որ յելս արեւու, բարձրագաւառաց Իլլիպիայ, Խարխարայ, Արազիասայ,
7. Մեսուայ, Մադայ[3], Գիզիլբունդայի՝ իւր բովանդակ շրջանակաւն, [դանայի[5],
8. Մուննայի[4], Պարսուայի, Ալլաբրիայի, Աբդա-[
9. Նա՛իրիայ՝ իւր բովանդակ տարածութեամբը, հեռաւորն Անդիուայ[6],
10. լերան զառիթափին՝ իւր բովանդակ տարածութեամբը, մինչեւ ի վեր անդր ցծովն մեծ
11. ելից արեւու[7]: . . . . . . . . .

---

1 Ըստ ոմանց՝ Ռամմաննիրարի, որ չհամարի ուղիղ:

2 Տես ի Cuneif. Inscr. of West. Asia, Հտր. Ա. 35, 1. եւ ի Հաւաքածոյս Եբ. Շրատէրայ Keil. Bibl. Հտր. Ա. էջք 190–193:

3 Այս եւ նախընթաց չորս անուններն Մարաստանի վիճակներ էին:

4 Այլ ընթերցուած՝ Մաննա, ըստ մեր ազգային արձանագրութեանց Մանաս վիճակն:

5 Շամխամմանայ Գ. հարթ կոթողի արձանագրութեան մէջ (Գ. 57) տեսնուած Աբդանա երկիրն:

6 Անդիու՝ այլուր Անդիա, համանականորէն Անձեւացեաց գաւառն էր:

7 Կասպից ծովն:

## Թագղաթփաղասարայ Գ. (Ք. ա. 745—727) Նիմրուտայ Տախտակին արձանագրութիւնն[1]:

1. Ապարանք Թագղաթփաղասարայ՝ . . . . արքայի չորից կողմանց

. . . . . . . . . . . . . . . .

4. Թագաւորութեանս սկիզբէն . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

18. Բիտ-Ցարանզաի[2] երկիրը, Պարսուա երկիրը, Բիտ-Կապսի[3] երկիրը՝ մինչեւ անծանօթ Մեդացւոց Զոկրուտի քաղաքը նուաճեցի.
19. իմ կառավարներս իբր գաւառներու տեսուչներ՝ անոնց վրայ կարգեցի: . . .
20. Շարդաուր[րի[4] Ուրար]տացին ինծմէ ապստամբեցաւ յետս եկաց, Մատի-իլուէ[5] հետ
21. դաշնաւորութիւն ըրաւ: Կիստ[ան ու] Խալզի երկրաց մէջ՝ որ Կումմուխ քաղաքին[6] մէկ կէճակն են, զանի զարկի մինչեւ ցեղծումն:
22. Անոր ամբողջ կարասին առի: Զինուցս սարսափէն զարհուրեցաւ. իւր կեանքը փրկելու համար՝ միակ միայնակ փախստական գնաց:

---

1 Արձանագրութիւնս գտած է Լէյարտ ի Քաղան-Նիմրուտ՝ Հարաւային արեւմտեան պալատին մէջ, ուր Ասուրախիդդին Ա. (Ասորդան) տարած էր իւր նախկին տեղէն: Տես Լէյարտ՝ Inscr. in the cuneif. charact., տախտակք 17, 18. եւ Եբ. Շրատէր՝ Keil. Bibl. Հատ. Բ. էջք 2–9:

2 Պարսկահայք նահանգին Զարաւանդ գաւառն:

3 Այս երկիրն Կապուտան ծովուն արեւելակողմը վիճակ մ'ըլլալու էր: Թերեւս ծովին “Կապսի„ անունէն կոչուած է Կապուտան:

4 Ըստ ազգային արձանագրութեանց՝ Շարիդուրիս Բ. (իբր 755–730):

5 Օտար երկրի մը թագաւոր, Ասորւոց հիւսիսակողմը:

6 Իմա՝ “երկրին„:

Digitized by Google

23. Իւր քաղաքն Տուրուսպայի[1] մէջզանի փակեցի, անոր բազմաթիւ պատերազմողները նոյնին դրանց առջեւ սպաննեցի։

24. Իմ արքայական պատկերս Տուրուսպա քաղաքին առջեւը[2] կանգնեցի։ Լայնատարած Ուրարտի երկրին մէջ [զ70[3]] կրկին ժամս ճանապարհի

25. վերէն մինչեւ [վար արշաւեցի °]. Հաւասարազօր ոսոխ մը չկար։ Ուլլուբա[4] երկիրը բոլոր բովանդակ ընդ լծով արկի, կորեցի անցայ։

26. Կատտիրրա, . . .* Պարիսու, Տաշուխա, Մանտու[ուր °] Շարդաւրրիի քաղաքները՝ մինչեւ

27. Բաբուտտա, Լուսիա[5], Կասսիա քաղաքները,

28. .....*մինչեւ Սիկկիբտա քաղաքն, Ասուրդա քաղաքն Ասորեստանի երկրին միացուցի։ Անոնց վրայ կողմնակալ մը դրի։ Ուլլուբա երկրին մէջտեղի

29. [բերդաքաղաքը՝] զոր Ուրարտի երկրէն աշխարհակալեցի, . . . . .

30. քաղաք մը շինեցի, անունն Ասուր-իկիշա կոչեցի։ ԲԱԲ. ԲԻ. ԼՈՒԼ կողմնակալութեան պաշտօնեայներս հոն դրի՝ իբր հոգաբարձու (°) Ուասուրնու, Ուասուրրա,

31. Ինու, Սասսու, Լուբ . . .*, Լուքի քաղաքաց, մինչեւ ի լերինս անդր։

---

1 Ըստ ազգային արձանագրութեանց՝ Տուսպաս (Վան)։

2 Այս եւ նախընթաց տողերը կը ցուցընեն թէ ասորեստանեայն Տուսպաս քաղաքին մէջ մտնել կարող չէ եղած։

3 Ըստ Գ. Սմիթայ եւ Սէյսայ։

4 Ծոփաց աշխարհին արեւելակողմը վիճակ մը, որուն անունէն յառաջ եկած կ'երեւի Քսենոփոնեայ յիշած (Նահանջ եւն. Դ. դ.) Տելեբոասս գետոյն անունն. այս է Թուխ գետ։

5 Թերեւս արդի Պուլանըգ (Ապահունիք) գաւառին. Լիզ աւանն։

Digitized by Google

32. Քուտա, Ուրրա, Արանա, Տա[բա°], Ուալլիա քաղաքներուն մինչեւ ի վեր ցեփրատ,
33. Կուամմուխ, Կիլիմիր . . . . .
34. Աբբիլա, Խարբիսինա . . . քաղաքներուն վի-ճակաց, . . . Խնզի երկրին, Անգանու, Բինզու քաղաքներուն՝
35. Ուրարտիի բերդաքաղաքաց, Կալլա[բ]մա գե-տոյն, . . . անոր գետոյն՝ տիրեցի, Ասորես-տանի երկրին միացուցի:
36. Տանը վարչութեան վրայ Տուրտանը (կարգեցի), եւ զայն Նա՚րի երկրին կցեցի:

## Նիմրուտայ Խեցետախտակին արձանա-գրութիւնն[1]:

Առաջոյ կողմ:

1. Ապարանք Թագլաթփալասարայ՝ մեծի արքայի.

. . . . . . . . . . . . . . .

5. Թագաւորութեանս սկիզբէն մինչեւ կառավա-րութեանս 17դ[2] տարին

. . . . . . . . . . . . . . . .

29. . . . Բիտ-Տարանզայի, Պարսուա, Բիտ-Զատտի,
30. Բիտ-Աբդադանի[3], Բիտ-Կապսի, Բիթ-Սանգի, Բիթ-Ուրզակկի, Բիթ-Իշտար երկիրները[4], Զակրուտի քաղաքը[5] Գիզինիկիսսի, Նիսսա, Ձիբուր երկիրները,
31. . . .* պարիա, Բուստուս[6], Արիարմի, Տար-շարրանի-ԽՈՒ°, Սակսուկնի, Արաքուտտու,

---

1 Տես ի Cuneif. Inscr. of West. Asia, Հտր. Բ 67. եւ Եբ. Շրատէր՝ Keil. Bibl. Հտր. Բ. էջք 8–25:

2 Ք. ա. 728:

3 Այլուր Աբդանա, Աբդադանա:

4 Այս վերջին երեք երկիրներն հաւանականաբար Մարաց վիճակներ էին:

5 Տես Նախընթաց արձանագրութեան 18դ տողը:

6 Վասպուրականի Բուժունիք գաւառն:



Digitized by Google

Կար-Ջիպրա, Գուկիննանա, Բիտ-Սանգբատ երկիրները[1], Սիլխազի երկիրը[2]

32․ զոր Բաբիլուացւոց[3] ամրոց կը կոչեն, Րուադէ երկիրը, ․ ․ ․ (երկիր) ուկայ Շէկրակէն՝ զվիճակն մթին[4] Մարասատանի՝ իւր բովանդակ երկրաւն, թռչնոց-վարմի (°) մը պէս ծածկեցի։

33․ ․ ․ ․ ․ Անոնց բազմաթիւ պատերազմողները սպաննեցի։ 60,500 բնակիչ՝ իրենց ստացուածներովը, իրենց ձիերովը, իրենց ջորիներովը, իրենց ուղտերովը, իրենց եզերովը, իրենց օդիւքն եւ այծիւքն՝ անհամար բազմութեամբ՝ առի տարի։

34․ Անոնց [քաղաքներն] աւերեցի, քանդեցի, հրով այրեցի, բլուր եւ խոպան երկրի նման ըրի։ ․ ․ ․ ․ ․

35․ ․ ․ ․ Բիտ-Տարանզաի, Պարսուա, Բիտ-Զատտի, Բիտ-Աբդադանի, Բիտ-Կապսի, Բէտ-Սանգէ երկիրները, ․ ․ ․ ․ ․

36․ մթին Մարասատանի [Զակ]րուտի [քաղաքը] Ասորեստանի երկրին միացուցի. անոնց մէջ քաղաքները նորոգեցի, Ասուրայ իմ տեառնս պաշտօնն անոնց մէջ հաստատեցի, երկիրներէն առած գերիներս՝ իբր բնակիչներ հոն տարի։

37․ իմ պաշտօնեայս է—կողմնակալներ անոնց վրայ կարգեցի. իմ թագաւորական պատկերս Տէ-

---

1 Այս եւ նախընթաց վեց երկիրներն անտարակոյս Ուրարտուայ վիճակներ էին. որովհետեւ՝ Բուստուսայ եւ Բաբիլուացւոց երկրին մէջտեղ կը յիշուին։

2 Այսինքն՝ Սիլխազի քաղաքին վիճակն։

3 Բաբիլուացիք, ասորեստանեան լեզուաւ ռբոլ Բաբիլու—, մեր ազգային արձանագրութեանց միոյն մէջ (Թիւ 27) "երկիր Բաբիլուայ" (տող 5), եւ "երկիր Բաբիլուականն" (տող 4) անուններով կը յիշուին։ Այս երկիրն Վասպուրականի Պալունիք գաւառն էր։

4 Այս է անծանօթ կամ հեռաւոր։

Նրալլի[1] երկրին մէջ, Բիթ-Իշտար եւ Զիքքուր քաղաքաց մէջ, Արիարմի եւ Տ̣ար-շարրի-ԽՈՒ(°)[2] երկրաց մէջ,

38. [ի քաղաքին Սիլ]խազիայ՝ զոր Բաբիլոնացւոց ամրոց կը կոչեն՝ կանգնեցի: . . . . . .

. . . . . . . . . . . . . . .

43. . . . . . .*[3] [երկրին Ուլլու]բայ՝ Նիրխու երկրին մէջ՝[4] իւր բովանդակութեամբը՝ տիրեցի, Ասորեստանի երկրին միացուցի: . . . . .*

44. Իմ արքայական [բնակութեանս համար պալատ մը] հոն կանգնեցի: Ասուրայ՝ իմ տեառնս՝ պաշտօնը հոն հաստատեցի. . . . .*

45. . . . . ԶՈւրարտացին, զՍուլումալ Մելիդացին[5], զԳամգումացի[6] Տարխուլար: . . . . .*

46. Կոմմուխցի Կուշտաշպի աւարառութիւն գործելու համար . . . . .*

47. . . . . երկրին վիճակներն եղող Կիստան երկրին եւ Խալպի երկրին վրայ [ապստամբեցին] . . . .

48. . . . . առի (°). զգետն Սինզի, զՋրադարձն՝ հանգոյն Նաքաւի . . . . .

49. . . . . անոնցմէ առի. ի միջավայրի . . . . .

50. . . . . արքայական բազմոցներ . . . . .

---

1 Չէ հաւանական թէ այս երկիրս Ուրարտուայ պատկանէր: Գոնէ հակառակը հաստատելու համար՝ չունինք տակաւին ծանրակշիռ փաստ:

2 Վերագոյն 31դ տողին մէջ տեսնուած Ց̣ար-շարրանի-ԽՈՒ (°) անուան սյլափոխ ընթերցուածն:

3 Անուանակիր տարիներու ցանկին համեմատ՝ Ուլլուբայի վրայ եղած այս արշաւանքն 739դ տարին եղած է:

4 Այսպէս պէտք է թարգմանել:

5 Այս է Մելիտենացի:

6 Գամգում երկիրն Եփրատայ միջին կողմանց արեւմտեան եզերքը վիճակ մըն էր:

# Տարեգրութիւնքն:

## 1.

. . . . . . . . . . . . . . . .

## 2.[1]

1. . . . . . . . . . . . . . . . .
30. . . . . . 19 վիճակս
31. Խամափ[2] քաղաքի՝ իւր շրջակայ քաղաքներովն . . ., որոնք իրենց անհաւատարմութեամբն Ազրիաուի կողմն անցած էին,
32. Ասորեստանի վիճակին միացուցի։ Իմ պաշտօնեայներս եւ կողմնակալներ անոնց վրայ կարգեցի։ . . . . .
33. . . . . Ուլլուբա երկրին կողմնակալութեան մէջ 1223 բնակիչ գաղթականութեամբ հաստատեցի։ . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

41. . . . .* . . . . զիմ պաշտօնաւորս (յոգ.), զկողմնակալն (եզ.) Նա'իրի երկրին։ Սուպուրգիլլու քաղաքէն
42. . . . .* պա մինչեւ անոր շրջակայից քաղաքներն առաւ. անոնց կողոպուտն առաւ տարաւ. Զ Սիքիլա՝ հրամանատար բերդի
43. . . . . .* Խափփայաց երկրին մէջ խնծի բերաւ։ . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

50. . . . . . Զհարկն Կուշտասպեայ՝ Կամմախ

---

[1] Ցարեգրութեանս այս մասը տես ի Cuneif. Inscr. of West. Asia, հտր. Գ. 9, 3 (B)։ Տես եւ Եբ. Շրատէր՝ Keil. Bibl., հտր. Բ. էջք 26–31։ Ինչպէս նախընթացներն, նոյնպէս այս արձանագրութիւնն չարաչար եղծեալ է։

[2] Ասորւոց մէջ Որոնտէս գետոյն աջակողմը Համաթ քաղաքն։

Digitized by Google

քաղաքին[1] . . . . Մենահեմայ՝ Սամարիա քաղաքին[1] . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

52. . . . . . . Սուլումալայ՝ Մելիտ երկրին, Դադի-իլուայ՝

53. Կասկայ քաղաքին[2] . . . . . . . .

54. . . . . . ոսկի, արծաթ, կապար, երկաթ, փղերու մաշկեր, . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

56. . . . . . ձիեր, ջորիներ . . . առի։

— Կառավարութեանս 9դ[3] տարին՝ Ասուր՝ տէր իմ, Բիտ-Կապսի երկրին վրայ (արշաւելու) զիս քաջալերեց։

---

## Սարգոնի (Ք. ա. 722—705) Տարեգրութիւնքն[4]:

. . . . . . . . . . . . . . . .

8. . . . . .* Խաշմար երկրէն մինչեւ արեւելից Հեռաւոր Մարաց Զիմաշգադդաշ քաղաքը,

---

1 Իմա՛ «երկիր»։

2 Նոյնպէս։ Կասկայ երկիրն գլխաւորապէս Խաղտեաց աշխարհն էր։

3 Ք. ա. 736։

4 Արձանագրութիւնս Խորսապատայ պալատին Բ. Ե. եւ ԺԳ. սրահներու պատերուն վրայ գտաւ Պ. Ե. Պոդդա, եւ իւր Monument de Ninive գործոյն Դ. հատորին մէջ հրատարակեց։ Սարգոնի միւս արձանագրութեանց ընդօրինակութեանց նման՝ Տարեգրութեանս եւս դրոշմօրինակներն Բարիզի Լուվրը Մուսաարանին մէջ կը պահուին։ Հուգոն Վինքլէր արձանագրութեանս ճիշդ դիրքն որոշել կարող եղած է՝ քաղելով զայն այլեւայլ տախտակներէ։ Այս արձանագիրն կարի եղծեալ վիճակի մը մէջ է, որով իրաց պատմութեան ամբողջութիւնը կը պակասի։ Դիտելու արժանի է որ մինչդեռ Սարգոնի Մեծ Արձանագիրն (տող 29–32) Թոբելցի Ամբարիսին ապստամբութիւնը նախ եւ յառաջ կը յիշէ, որով կարծես 718 տարին կատարուած է այն, Տարե-

Digitized by Google

9. Նամրի, Իլլիբի, Բիթ-Խամբան, Պարսուա, Մաննա, Ուրարտու, Կասկու, Թաբալ եւ Մուսք երկիրներն իւր մեծ ձեռքն աշխարհակալեց։

## Արշաւանք ի Հրէաստան, ի Բաբելոն եւ յԱսորիս:

32. [Երրորդում ամի] կառավարութեանս՝[1] Սուանդախուլ եւ Դուրդուկկա ամուր քաղաքներն յիրանզուէ
33. Մաննայի թագաւորէ՝ յիւրեանց տեառնէ՝ որ իմ լուծս կը սիրէր, ապստամբեալ յետս կալ խորհեցան, [տատատի Զիկկիրտայի
34. Զիկկիրտացի[2] Միտատտիայ վստահացան։ Մի-
35. իւր պատերազմող մարդիկն եւ ձիաւորներն անոնց տուաւ. եւ այսու օրինակաւ անոնց օգնեց։
36. Ասուրայ հզօր զօրաց գումարութիւնն ի մի վայր ժողվեցի, եւ առ ի տիրել
37. քաղաքացն այնոցիկ խաղացի գնացի։ Պաշարելու զօրաւոր մենքենայներով անոնց ամուր պատուարները

---

գրութիւնքս (տողք 168–176) նոյնը 713 տարւոյն մէջ կը դնէ։ — Հ. Վինքլերէն առաջ Յ. Մենան գաղղիացին Տարեգրութեանցս արձանագրութիւնն իւր Annales des Rois d'Assyrie, 1874, հաւաքածոյին մէջ (էջք 158–180) հրատարակած էր։ Սակայն սոր թարգմանութիւնն ճշդութեան կողմանէ պակասաւոր է։ Յ. Մենան՝ Ժ.Դ. սրահին (տախտակ 3) արձանագրութիւնը Տարեգրութեանցս սկզբնական մասն մը համարի, մինչդեռ այն՝ վերջնոցս համառօտեալ մէկ ձեւն է, առանց տարեգրական ոճոյ գրեալ։ — Տարեգրութիւնը տես ի հաւաքածոյս Հ. Վինքլերայ՝ Die Keilinschrifttexte Sargons, էջք 1–79, եւ Յ. Մենանայ՝ Annales des rois d'Assyrie, էջ 161 եւն։

1 Ք. ա. 719։

2 Զիկկիրտու Մաննայի մէջ եւ անոր հիւսիսոյ արեւմտակողմը վիճակ մ՚ըլլալու էր։

Digitized by Google

38. խորտակեցի, գետնի հաւասար ըրի։ Բնակիչներն իրենց ընչիւքն առի տարի։ [այրեցի։
39. Այն քաղաքներն աւերեցի, քանդեցի, հրով [
40. Սուկկա, Բալա, Աբիտիկնա քաղաքներուն բնակիչները՝ որոնք հպատակութեան կապերը (°) քակելու չար խորհուրդը խորհած էին Ե-Ուրշա[1]
41. Ուրարտացւոյն հետ դաշինք կռած էին, իրենց գործած չարեաց համար իրենց (բնակութեան) տեղերէն հանեցի, Խաթթացւոց Ախարրէ[2] երկրին մէջ
42. զանոնք նստեցուցի։ . . . . .

## Արշաւանք յարեւմտեան եզերս միջին Եփրատայ:

46. Կառավարութեանս 5դ տարին[3] . . . . .
. . . . . . . . . . . . . . . . .
50. . . . . . Պապա[4] եւ Լալլուկնա քաղաքներուն բնակիչներն
51. եւ իմ պալատիս մէջ սնուցեալ ծառաները՝ որոնք Կակմի երկրին դէմ դաւ կը գործէին (°), իրենց տեղերէն հանեցի,
52. Ախարրէ երկրին Դիմասքի քաղաքին մէջ նստեցուցի։ Կառավարութեանս 6դ տարին[5] Ուրշա Ուրարտացի
53. . . . .* [առ Միտատտի] Զիկկիրտացի եւ առ աւագ իշխանս Մաննայի . . . . .*

---

1 Ըստ ազգային արձանագրութեանց՝ Ռուսաս Ա. (Ք. ա. իբր 730—714)։

2 Թարգմանի «աշխարհ արեւմտից»․ այսպէս կը կոչուէր ստորին Ասորիք։

3 Ք. ա. 717։

4 Այսպէս. տես ի ստորեւ Սարգոնի Խորսապատայ պալատին Մեծ Արձանագիրը, տող 57։

5 Ք. ա. 716։

54. զանոնք Սարգոնէն եւ իրենց տէրուն որդին Ազայէն ապստամբեցընելու . . . .* Ուասս

55. դժուարին լերան վրայ Մաննային ոսոխներին, եւ Ազայի իրենց տէրուն դիակը հոն նետեցին: Աը Ասուր՝ տէր իմ՝ առ ի փրկել

56. զՄաննա [եւ առ ի փրկել զԱսորեստան] ձեռքերս վերցուցի: Ուասս լերան վրայ՝ ուր որ Ազային դիակը նետած էին՝

57. Բագդատտին[1] մորթազերծ եւ Մաննայի տեսիլ ըրի: Զնորա[2] եղբայրն Ուլլուսունու արքայական գահուն վրայ նստեցուցի: Բոլանդակ Մաննան . . . . .* Նա անձին սեպհականեց: [Մաննացի Ուլլուսունու]

58. °իւր երկիրն Ասուր դից յանձնելու(°) տեղ. . .* Ուրշա Ուրարտացւոյն վստահացաւ. զԱսուրլի Կարալլացին[3] եւ զիտտի

59. Ալլաբիրացին[4] ինծի դէմ գրգռեց, եւ Ուրարտւին ծառայութիւն ընելու զանոնք յորդորեց: Ի [զայրոյթ] սրտիս՝ այն երկիրները

60. մարախներու նման ծածկեցի: Զիզիրտու՝ Մաննայի արքայական քաղաքը՝ խու-խուրու-ի պէս յերկիր կործանեցի. անոր բազմաթիւ պատերազմողները

---

1 Ումէլդիս երկրին արքայիկն. տես Սարգոնի Մեծ Արձանագիրը, տող 49: Ումիլդիս Մաննայի մէկ վիճակն պէտք էր որ ըլլար:

2 Այս է Բագդատտիի, որ Ազային որդին պէտք էր որ ըլլար. վասն զի մինչդեռ աստէն եղբայր կ'ըսուի Ուլլուսունի, սա՝ Սարգոնի Մեծ Արձանագրին 38—39 տողերուն համեմատ՝ "իւր հօրն գահն ելած էր„: Յայտ է ապա թէ Բագդատտի իւր հօրը սպանման հաղորդ եղած է:

3 Թուի թէ Կարալլա, Կարալլու կամ Կարալլի Վասպուրականի հիւսիսակողմն Աւարայրի մէջօցը կը գտնուէր:

4 Ալլաբիրա, այլուր Ալլաբրիա, Վասպուրականի հիւսիսոյ արեւմտակողմն՝ Առբերանի գաւառն:

61. սպաննեցի։ Իզիրտուն հրով այրեցի. Զիբիա
և Արմաիդ քաղաքներուն տիրեցի։ Ուլլուսու-
նու Մաննացին
62. եւ իւր բովանդակ երկիրն իբր մէկ անձ եկան.
ոտքերուս [փարուեցան]. շնորհս [շնորհեցի ա-
նոնց]։ Ուլլուսունուին
63. յանցանաց ներեցի. ի գահ արքայական [նորա
զանի նստեցուցի]։ . . . .* Ալլաբիրացի Իտտին
64. իւր գերդաստանովն արտասահման ըրի։ Կա-
րալլացի Ասուրլին . . . . . . . . . . .*
65. . . . . . . . . . . . . . . . .*
66. Գանու քաղաքին . . . .* ի վիճակին Նիկսամա
երկրին տիրեցի։ ԶՍիպա (°)շարրու՝ քաղաքա-
պետ . . . . .*
67. Սուրգադիա քաղաքին ձեռք ձգեցի. այն քա-
ղաքները Պարսուայի կուսակալութեան միա-
ցուցի։ . . . . .

## *Արշաւանք ի Մարս։*

75. Կառավարութեանս 7դ տարին[1] Ուրարտացի
Ուրշա Մաննացի Ուլլուսունուի դէմ չարիս
նիւթեց. անոր բերդաքաղաքներէն 22ն առաւ.
76. Մաննայի մէկ կուսակալն Դաիուկկուին[2] ձեռ-
քով Ուլլուսունուի դէմ խաբէութիւն ե-
զըրպարտութիւն գործածեց. անոր որդին անկէ
պատանդ առաւ։ Առ դիան Ասուր՝ իմ [տէրս]
77. ձեռքերս վերցուցի. այն 22 բերդաքաղաքնե-
րուն տիրեցի, Ասորեստանի երկրին միացուցի.
Դաիուկկուն իւր գերդաստանովն արտասահ-
ման ըրի։
78. Աւերեալ Մաննան նորաշէն նորոգեցի։ Նաի-
րիայ Թագաւորն Յանզուի տուրքը՝ իւր Խու-
բուսկիա քաղաքին մէջ առի։ 9 քաղաք . . . .*

---

1 Ք. ա. 715։

2 Տես Սարգոնի Մեծ Արձանագիրը, տող 49։

79. . . . .* վիճակին Ուրարտացւոց Ուրշայի . . . .*

80. . . . .* անոնց արջառը, անոնց ոչխարները . . .* բերդաքաղաքներն և [անոնց] վիճակներուն քաղաքները . . . . .*

81. [երկրին] Տուայադիոյ՝ վիճակի Տիլուսինայ՝[1] երկրին Անդիայ՝ տիրեցի։ 4200 հոգի իրենց ընչիւքն առի տարի։ Այն բերդաքաղաքներն

82. աւերեցի, քանդեցի, [հրով այրեցի]. իմ արքայական պատկերս շինեցի. Աշուր դից համբաւն անոր վրայ գրեցի, յԻզիրտու՝ յարքայական քաղաքի

83. Մաննայ՝ [կանգնեցի]։ . . . . .

*Արշաւանք ի Մարս, յարեւմուտս Կիլիկիոյ, յԱրաբիա եւ ի Մուսռ:*

101. կառավարութեանս 8դ տարին[2] Մաննայի և Մուրատանի վրայ խաղացի գնացի. Մաննայի և Իւլխոլայի հարկը . . . . .*

102. լեռներու քաղաքապետաց՝ առի։ Քաղաքաց շահապ Զիզիրազալայէն[3], քաղաքին . . . . .*

103. որոնց հարկը թագաւորներն իմ նախորդքս՝ չէին առած, անոնցմէ տուրք առի։

104.[4] . . . . [Միտատտիայ]

105. Զիկիրտացւոց պատերազմողները սպաննեցի։ 3 ամուր քաղաքաց՝ անոնց շրջակայից[5] 24 քաղաքներովն՝

106. տիրեցի. անոր աւարն առի տարի։ Անոր արքայական քաղաքը՝ զՊարդա՝ ի հուր դատեցայ։ Նա իւր երկրին մարդիկներովն

---

1 Տես նոյն Մեծ Արձանագիրը, տող 44–45։

2 Ք. ա. 714։

3 Չէ յայտ թէ այս անձն ուրարտացի՞ էր՝ թէ մեդացի։

4 Այս տողն կորսուած է։ Վինքլէր։

5 Կամ "բոլորակութեանց, վիճակաց„։

107. փախաւ. անոնց կեցած տեղը չգտնուեցաւ։
Ուրարտացի Ուրշային պատերազմողները՝
108. Թուով անհամար՝ սպաննեցի. անոր արքայա-
կան սերունդէն 260 հոգի՝ որոնք ձիաւոր
հեծեալ էին, գերի բռնեցի։ Նա՝ առ ի փրկել
109. զանձն՝ մատակ ձիոյ մը վրայ նստաւ, իւր լե-
րանց վրայ փախաւ։ Ուաուս լեռնէն 5 կրկին
ժամուց ճամբայ
110. [մինչեւ°] Զիխարդուսսու երկիրն եւ Ման-
նայի լեռնային վիճակն Ումիլդիս՝[1] անկէ առի,
111. Մաննացի Ուլլուսունուին տուի։ Ուսքայա
բերդաքաղաքին՝ որ Զարան երկրին կիրճին
մէջն է,
112. . . . .* Մալլաւ երկրին, Դի-րիգ°-լի-րակ°-սա-
տու երկրին՝ անոնց 140 քաղաքներովը՝ տի-
րեցի։
113. . . . .* Բիտ-Սանգիբուտի երկրին վիճակին
Աստանիա քաղաքին, Դալա[2] երկրին Տարուի[3]
եւ Տարմակիսա քաղաքներուն . . . . .*
114. . . . . տա°միրատի, Ուլխու քաղաքին՝ որ
Կիս-պալ(°) լերան ստորոտն է, (00)21 ամուր
քաղաքաց եւ 140 քաղաքաց
115. վիճակացնոցա՝ որք Արզաբիա լերան վրայ էին,
տիրեցի, հրով այրեցի։
116. (00) ամուր քաղաքաց եւ անոնց վիճակաց
30 քաղաքներու՝ որոնք Արմա-դալ°-լի եր-
կրին մէջ էին,
117. . . . .* Ուբիանդա լերան վրայ՝ տիրեցի. Ար-
բու քաղաքին՝ տեղի յորում Ուրշա
118. . . . .* [քաղաքաց]

---

1 Այս վիճակին դիրքն՝ Այրարատայ Բագրեւանդ-
գաւառին մէջ Նպատ լերան առաջքը մեզի մատնանիշ կ'ընէ։

2 Այս անունն Թերեւս ուրիշ վանկերով կը վերջա-
նար. որովհետեւ բնագրին մէջ իրմէ ետքն եղծեալ գրեր կան։

3 Դարունք գիւղ ի Վարաժնունիս։

Digitized by Google

119. ամրոց Արաիդ[1] երկրի միջակին առ եզերք ծովու[2], . . . . .* եւ Կադուլա-Նի°-ա քաղաքներուն՝ որք ի վերայ Արձի լերին . . . . .*
120. Ե- ի միջակին Ար°-զաւնիա լերին շինեալ էին, Ուայաւս լերան միջակէ 5 բերդաքաղաքաց,
121. [եւ] Ուայաւս երկրին միջակէն 30 քաղաքներու տիրեցի, Հրով այրեցի։ Ցանզու
122. Թագաւորէն Նա՛րի երկրին՝ իւր ամուր քաղաքն Խուբուսկիայի մէջ արջառ Ե- ոչխարներ իբր անոր տուրքն ընդունեցայ։
123. Մուձաձիրցի Ուրզանա[3] Ասուր եւ Մարդուկ դից վրայ ըրած երդումն առ ոտն հարած էր, Ե- Ուրարտացի Ուրշային յայտնած էր
124. Հպատակութիւն։ Ասուր տէր իմ զիս քաջալերեց. իմ 1 պատերազմիկ կառքովս եւ 1000 ձիաւորներովս եւ ոտանաւորներովս, բուռն ոտանաւորք
125. ի պատերազմունս, Սիակ, Ար-դի°-շի Ե- Ուլոիաւ Ալլուրիայէ դժուարին լեռները կտրեցի անցայ. ճամբայ գտնուած տեղուանք
126. ձիու վրայ հեծած, իսկ դժուարին տեղերն հետիոտս քալեցի։ Մուձաձիրացի Ուրզանա [իմ] արշաւանացս յառաջանալը
127. լսեց, Թռչնոյ պէս փախաւ, դժուարին լերան մը վրայ ելաւ։ ԶՄուձաձիր՝ Քաղդիա աստուածոյն կայանքը՝ պատնէշով
128. [պաշարեցի]։ Ուրզանայի կինը, անոր ուստերքը, անոր դստերքը, 6170 բնակիչ, 690 ջորի, էշ, 920

---

1 Հաւանականօրէն Բզնունեաց ծովուն հիւսիսոյ արեւելակողմն Առբերանի գաւառին մէջ Առեստ քաղաքին միջակն։

2 Բզնունեաց ծովն։

3 Այս արքայիկէ՝ ասորեստանեան լեզուաւ կնքոյ արձանագրութիւն մ՛ունինք, զոր տես իմ Հաւաքածոյիս մէջ՝ Թիւ 88։

Digitized by Google

120. . . . .*, 100, 225 ոչխար առի տարի։ . . . .* 34 տաղանդ, 18 մնաս ոսկի, 160 տաղանդ, 2½° մնաս արծաթ, անագապղինձ . . . . .*
130. . . . .* [պատուական] քարեր . . . . .*
131. . . . . անհամար գոյնագոյն կերպասներ եւ զգեստներ . . . . ,*
132. ընդ . . . , . . . տաղանդ, 3 մնաս ոսկի, (0)2 տաղանդ, . . . մնաս արծաթ, . . . . .*
133. . . . . բազուկս, անագապղինձ, երկաթ (°), անհամար . . . . .*
134. . . . .* ընդ . . . .* առեալ տարի։ . . . .*
135. . . . .* Ասուր դիք . . . .* իրենց ընչից մնացորդը . . . .*
136. լայնածաւալ երկիրը . . . .* ամէն տեսակի․ «ուքէրրու» ըրի։ Անոնց թագաւորն Ուրշային կոծ ու ողբ
137. . . . .* այն վիճակն Ասորեստանի միացուցի,
138. Եւ իմ պաշտօնէիս՝ պալատան հազարապետին՝ ձեռքը զայն յանձնեցի։ Ասուր դից՝ տեառն իմոյ՝ շքեղութիւնն զՈւրշա Ուրարտացին
139. յերկիր կործանեց․ իւր իսկ երկաթի դաշունիւ շուխուրի մը պէս իւր սիրտը զարկաւ, զինքն ի կենաց զրաւեց։ Կառավարութեանս 9դ տարին[1] Իւլմէդի[2]
140. Բիթ-Դախուննի[3] եւ Կարալլի[4] երկիրներուն վրայ արշաւեցի։ Կարալլիին բնակիչներն իմ պաշտօնեայներս արտաքսեր էին,

---

1 Ք. ա. 713։

2 Թուի թէ Պարսկաստանի արդի Իսպահան քաղաքին վիճակն էր։

3 Հաւանականօրէն Մարաստանի մէկ վիճակն էր։

4 Տես արձանագրութեանս 58 եւ 64 տողերը․ տես եւ Սարգոնի Մեծ Արձանագրին 55–56 տողերը, ուր բնագրաց բովանդակութիւնն կը ցուցընէ թէ Կարալլա կամ Կարալլի՝ Ուրարտուի մէկ վիճակն էր։ Թէպէտ այս երկիրն նախ-

Digitized by Google

141. Եւ զԱմիտասսի՝ Ասուրլէին եղբայրն իրենց վրայ կարգած էին։ Անայէ վրայ՝ որ լերան մը գագաթն է՝ ի .....*
142. զանոնք յերկիր կործանեցի. անոնց առաջնորդաց գերդաստաններէն 2200 հոգի ճամբարիս մէջն առի։
143. Ամիտասսիին ետեւը պնդեցայ. զանի՝ իւր օգնականներովն ի .....*

## *Արշաւանք ի Մարս եւ յարեւելակողմն Արաբխոյ:*

165. ... Զաուրս Մաննայէ Ուլլուսունուի
166. Եւ ... Ալլաբրիոյէ Ագարաբաղիդդիննայի ...

. . . . . . . . . . . . . . . .

168. ... ընդունեցայ։ Թոբէլցի Ամբարիդի՝ Բիթ-Բուրութաշի թագաւորն՝ .....*

. . . . . . . . . . . . . . . .

173. ... այր անհաւատարիմ՝ Ուրարտուի թագաւորն Ուրշային, Մուսքի թագաւորն Միտային
174. ...* Եւ Թոբէլի թագաւորաց (դեսպան խաւրեց)։ Ասոնք իմ վիճակս կորզեցին։ Ասուրայ զօրքը ժողվեցի,
175. ամբողջ Թոբէլը բոլորովին աւերեցի։ ԶԱմբարիս՝ Բիթ-Բուրութաշի թագաւորը՝ իւր հօրը սերունդներովն, Եւ
176. իւր երկրին գլխաւորները գերի տարի։ ....

. . . . . . . . . . . . . . . .

178. կառավարութեանս 10դ տարին՝[1] Մէլիդացի Տարխունացի

. . . . . . . . . . . . . .

---

ընթաց երկու մարական վիճակներուն հետ կը յիշուի, սակայն ասորեստանեան արձանագրութիւնք կարգաց շփոթութիւններէ միշտ ազատ չեն։

1 Ք. ա. 712։

182. Ասորեստանի դէմ թշնամութիւններ նիւթած էր:[1] Ի զայրոյթ սրտի՝ բոլոր Կամմանու երկրին[2] տիրեցի.
183. զՄէլիդդուա՝ իւր արքայական քաղաքը՝ պուտուկներու պէս խորտակեցի: . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

187. . . . Տուլգարէմմի քաղաքը

. . . . . . . . . . . . . . . .

189. Նորէն շինեցի: . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

191. . . . Լուխսու, Բուրդիր, Անմուրու, Կէ . . .*, Անդուարսալիա քաղաքները
192. Ուրարտիայ դէմ ամրացուցի, պահակներըրի: Ուսի, Ուսիըլու (°), Ուարգիին քաղաքները
193. Մուսասիրի երկրին սահմաններուն վրայ շինեցի:

## Արշաւանք ի Գամզում՝ յարեւմտեան եզերս միջին Եփրատայ, ի Պաղեստին եւն:

---

## Խորսապատայ պալատին Մեծ Արձանագիրն[3]:

1. Ապարանք Սարգոնի՝ մեծի արքայի, . . .
2. արքայի Ասորեստանի, քրմապետի Բաբելոնի

. . . . . . . . . . . . . . . .

---

[1] Թուի թէ Ուրշայի դաշնակից էր:

[2] Կապպադովկիոյ հարաւակողմը՝ Կոմանա քաղաքին մօտակայքը:

[3] Այս արձանագրութիւնը Պօղոս-Էմիլիոս Պոդդա, Գաղղիոյ հիւպատոսն ի Մուսուլ՝ 1842 տարին Խորսապատայ պալատին մէջ գտաւ: Խորսապատ հին Նինուէի հիւսիսակողմն եւ անկէ հինգ ժամ հեռու գիւղ մըն է, ուր ի հնումն Սարգոնի պալատն շինուած էր: Ասոր սրահներուն մէջ բազմաթիւ արձանագրութիւններ կային: Դ, Է, Ը եւ Ժ սրահներուն մէջ կը գտնուէր վերոյիշեալ արձանագրութիւնն, որ ըստ այսմ չորս այլ ընթերցուածներ ունի, սակայն

16. Դիցն մեծաց հզօր զօրութեամբն՝ . . . Եադնանեէն[1] որ ի մէջ ծովու
17. արեւմտից, մինչեւ Եգիպտոսի եւ Մուսքի սահմանները տիրեցի . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .
22. . . . . . . անոնց վրայ իմ պաշտօնեայներս կուսակալներ կարգեցի, եւ իմ տէրութեանս լուծն
23. անոնց վրայ դրի: . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . . . . .
29. . . . . . Ամբարիսի
30. Թուբէլցուոյն՝ զոր ես իւր հօրը Խուլլիոյ գահին վրայ նստուցած էի, իմ աղջիկս տուած էի Կիլիկիայով միատեղ՝ որ իւր հօրն երկրին չէր պատկաներ. իւր երկիրը մեծցուցած էի. եւ նա՝ որ հաւատարմութիւն չպահեց,
31. ինծմէ երկիր կորզելու համար Ուրարտացի[2] Ուրշային եւ Մուսքցի Միտային դեսպան խաւրեց: ԶԱմբարիս՝ իւր հօրը տան արու զաւակաց գերդաստաններուն, իւր երկրին մեծամեծներովը,
32. իւր 100 պատերազմիկ կառքերուն Ասորեստան տարի[3]: Իմ տէրութեանս հպատակ եղող ա-

---

Ժ սրահին արձանագրութիւնն իբր հինգ առնուած է: Անոնք՝ Պոդդայի Monument de Ninive գործոյն Գ եւ Դ հատորներուն մէջ հրատարակուեցան: Շատերն այս արձանագրութիւնը թարգմանած են: Ի մասնաւորի տես Հուգոն Վինքլեր՝ Die Keilinschrifttexte Sargons, Leipzig, 1889, էջք 96—135, եւ Փ. Ե. Բայսէր՝ ի հաւաքածոյս Եբ. Շրատերայ՝ Keil. Bibl., հտր. Բ. էջք 52–81՝

[1] Կիպրոս կղզին:

[2] Ուրարտու. աստէն դպիրն այնպիսի գաղափարագիր մը գործածած է՝ որ Բաբելաստանի վերին մասը զԱքադ երկիրն եւս կը նշանակէ. իսկ 37դ տողին մէջ «Ուրարտացի» բառը հնչական նշանագրերով Ու-ր-ար-տ-ու դրած է:

[3] Ք. ա. 713 տարին: Տես Սարգոնի Տարեգրութիւնքը, տողք 139, 168—176:

Digitized by Google

սորեստանեայ մարդիկ հոն բնակել տուի. ա- նոնց վրայ իմ պաշտօնեայս կուսակալ կար- գեցի. իրենց վրայ տուրք ու հարկեր դրի:

## Արշաւանք յԱսորիս:

36\. .... ի ժամանակի յորում ճակատագիրն ե- կաւ հասաւ Մաննացի Իրանզուի վրայ՝ որ հնա- զանդ ծառայ մըն էր եւ իմ լուծս կը սիրէր,

37\. զիւր որդին Ազա անոր գահին վրայ նստուցած էի, Ուրարտացի Ուրշա իւր կողմանէ Ումիլդիս[1], Զիկկիրտու եւ Միսիանդի[2] երկրաց ցեղերուն, առ կողմնակալս

38\. աւագս Մաննայի պատգամաւորներ խաւրեց[3], եւ զանոնք անիրաւութեան յորդորեց: Իրենց տեառն՝ Ազայի թիակը դժուարին Ուաուս լերան վրայ նետեցին: Ուլլուսուննու

39\. Մաննացին՝ որ իւր հօրն գահն եղած էր, Ու- րարտացի Ուրշային վստահացաւ, եւ իւր բեր- դաքաղաքներէն 22ն իբր պարգեւ անոր տուաւ:

40\. Զայրացեալ սրտիւ՝ Ասորեստանի զօրաց գու- մարութիւնը մէկ տեղ ժողվեցի, առիւծի նման մռնչեցի, եւ այն երկիրներու տիրելու ձեռն ի գործ արկի: Մաննացի Ուլլուսուննու

41\. իմ արշաւանացս մօտենալը (°) տեսաւ. Թողուց իւր քաղաքը, եւ սարսափած՝ դժուարին լերանց ապաստաններուն մէջ ամրացաւ: Իզիրտուի[4] իւր արքունական քաղաքին, Իզիբիայէ, Արմիդայ

---

[1] Մաննա կամ Մանաս երկրին մէկ վիճակն: Տես Սարգոնի Տարեգրութիւնքը, տղ. 110:

[2] Մասեացոտն գաւառն, որ այս ժամանակներն Ման- նայի մէկ վիճակն էր. սակայն թուի թէ Նիկողայոսի Դա- մասկացւոյ ատեն (Ք. ա. Ա. դար) անկէ բաժնուած կը նկատուէր:

[3] Ք. ա. 716 տարին:

[4] Մասեաց հարաւոյ արեւմտեան կողմը՝ Վարաժնու- նեաց Սարթափ քաղաքն:



Digitized by Google

42. իւր ամուր բերդաքաղաքներուն տիրեցի, հրով այրեցի, ապականեցի։ Ուրարտացի Ուրշան Ուաւս դժուարին լերան վրայ զարկի. իւր արքունական սերունդէն 250[1] հոգի

43. գերի բռնեցի։ Իւր իշխանութեան 8 երկիրներուն մէջ գտնուող 55 ամուր եւ պարսպապատ քաղաքները՝ իւր դժուարամատոյց 11 բերդաքաղաքներովը միատեղ առի, ի հուր դատեցայ։

44. Անոր՝ Մաննացի Ուլլուսունուէն առած 22 բերդաքաղաքներն Ասորեստանի երկրին միացուցի։ Զ8 բերդաքաղաքս Տուայադի երկրին՝[2] վիճակի

45. Տիլուսինայ՝ երկրին Անդիայ՝ առի։ 4,200 մարդիկ՝ իրենց դղքովը՝ քշեցի տարի։ Զիկկիրտացի Միտատտի

46. իմ զէնքերէս վախցաւ. իւր երկրին զօրականօքն լեռներու մէջ փախաւ. անոր հետքն չտեսնուեցաւ։

47. Անոր արքայական քաղաքը զՊարդա ի հուր դատեցայ. անոր շրջակայից 23 ամուր քաղաքացն տիրեցի, անոնց կողոպուտն առի տարի։

48. Սուանդախուլ եւ Զուրզուկկա՝ Մաննայի քաղաքները՝ որոնք Միտատտիին վստահացեալ էին՝ առի. կողոպուտնին առեալ տարի։

49. Ումիլդիսցի Բագդատտին մորթազերծ ըրի։ ԶԴախուկկու[3] իւր գերդաստանովն արտասահման ըրի, Ամատի[4] մէջ նստեցուցի։

---

1 Ըստ Տարեգրութեանց (տղ. 180) 260։

2 Թերեւս Վարդգէսի Տուհաց գաւառն, որ Անդիա (Անձեւացիք) վիճակին մէջ ըլլալու էր։

3 Ըստ երեւութին վերագոյն 44դ տողին մէջ տեսնուած Տուայադի երկրին արքայիկն։ Դախուկկու անունն երանեան Դէովկէս անուան հետ նոյն է։ Բուն հին պարսկական ձեւն է՝ Դահյաուկա։

4 Ասորւոց մէջ Որոնտ գետոյն վերին կողմանց աջակողմը՝ Համաթ (Եպիփանիա) քաղաքն։

Digitized by Google

50. Մաննացի Ուլլուսունու ըրած գործերս դժուարամատոյց լերանց մէջ լսեց. Թռչնոյ նման թռաւ եկաւ, ոտքերուս փարուեցաւ։

51. Անոր անհամար յանցուածոց ներեցի. մոռցայ անոր չարագործութիւնը. ներումն շնորհեցի անոր. իրեն արքայական գահուն վրայ նստեցուցի։

52. — 22 բերդաքաղաքները՝ հանդերձ 2 ամուր քաղաքներով՝ զորոնք Ուրշային եւ Միտատտիին ձեռքէն առած էի, անոր տուի. անոր աւերեալ երկիրը նորոգեցի։

53. Իմ արքայական պատկերս շինեցի. Ասուրայ՝ իմ տեառնս՝ զօրութիւնն անոր վրան գրեցի, ապագայ ժամանակաց համար՝ իւր արքայական քաղաքն Իզիրտուի մէջ կանգնեցի։

54. Նա՛իրիցի Ցանզուին հարկը՝ ձիեր, արջառ եւ ոչխարներ՝ իւր ամուր քաղաքն Խուբուսկիայի մէջ ընդունեցայ։

55. Կարալլացի[1] Ասուրլի եւ Ալլաբրացի Իտտի՝ որոնք Ասուրայ լուծը թօթափած է— (ուրիշին[2]) ծառայութեան տակ մտած էին,

56. զԱսուրլին մորթազերծ ըրի. Կարալլայի բնակիչները՝ որքան եւ էին, եւ զԻտտի իւր գերդաստանովն արտասահման ըրի, զանոնք Ամատի մէջ նստեցուցի։

57. Սուկկիա, Բալա, Իբիտիկնա, Պապպա[3], Լալլուկնա քաղաքաց բնակիչներն իրենց տեղերէն հանեցի տարի, Դամասկոսի ու Խատտացւոց երկրին մէջ նստեցուցի։

58. Նիկսամմա վիճակին 6 քաղաքաց տիրեցի,

---

1 Թուի թէ Կարալլա երկիրն Կապուտան ծովուն արեւմտակողմը փոքր վիճակ մըն էր։

2 Այսինքն՝ Ուրարտացի Ուրշային։ Ցամին 716։

3 Հաւանականօրէն Վասպուրականի Պապարունեաց գաւառն։

զՍիպաաարրի Սուրգադիայի քաղաքապետը բռնեցի. այն քաղաքները Պարսուա երկրին կողմնակալութեան միացուցի։

## Արշաւանք ի Մարս։

72. . . . . Մուձաձիրցի Ուրզանա՝ որ Ուրշայի

73. Ուրարտացւոյ վստահանալով՝ աւատային պարտաւորութիւնը մոռցած էր, Մուձաձիր երկիրն ամբողջ զօրքովս մարախներու նման ծածկեցի[1]։

74. Եւ նա՝ իւր կեանքն ազատելու համար՝ միակ միայնակ փախստական գնաց, իւր լերանց վրայ ելաւ։ Յաղթանակաւ Մուձաձիր քաղաքը մտայ։

75. Իւր կինը, իւր ուստերքը, իւր դստերքը, ինչքն ու գոյքը, իւր պալատան գանձը՝ որչափ եւ էր, միանգամայն 20,170 մարդիկ՝ իրենց ստացուածներովն,

76. իրեն Քաղդիա[2] եւ Բագբարտում[3] աստուածներովն, ասոնց ճոխ ինչքերովը՝ յաւարի առի[4]։
Ուրշա Ուրարտուի թագաւորն

77. Մուձաձիր քաղաքին կործանիլը, իւր Քաղդիա աստուածոյն աւարի առնուիլը լսեց. իւր իսկ ձեռքովն՝ իւր գօտւոյն երկաթի դաշունիւն ինքն զինքն ի կենաց զրաւեց[5]։

---

1 Ք. ա. 714 տարին։

2 Ըստ բնագրին՝ Խալ-դի-ա, որ ուրարտեան ժողովրդոց գերագոյն աստուածն էր։

3 Ազգային ցարդ ծանօթացեալ արձանագրութեանց մէջ այս դիք չի յիշուիր։

4 Այս դէպքերն՝ Խորսապատայ պալատին ԺԳ. սրահի հարթ քանդակներովը (bas-reliefs) ներկայացուած են։ Տես Botta, Monument de Ninive, t. II, pl. 140, 141.

5 Ք. ա. 714 տարին։

Digitized by Google



78. Ուրարտուի վրայ՝ իւր բովանդակ տարածու-
թեամբը՝ Թշուառութիւն հասուցի, հոն բնա-
կող մարդիկը կոծ ու ողբի մէջ նետեցի: —
Տարխունազի

79. Մէլիդդու-ցին ընդդիմահարիլ ցանկացաւ.
դիցն մեծաց վճիռը բռնաբարեց, եւ իւր ըն-
ծայն զլացաւ: Ի զայրոյթ սրտիս զՄէլիդդու-

80. իւր թագաւորական քաղաքը՝ իւր վիճակին
քաղաքներովը միատեղ՝ պուտուկներու պէս
խորտակեցի: Զանի իւր կնաւն, իւր ուստերօքն,
իւր դստերօքն, իւր պալատան գանձիւն՝ որչափ
իւրն էր՝

81. այլ եւ 5,000 գերի ինկած զօրականք՝ իւր ամ-
րոցն Տէլգարբէսսու-էն հանեալ տարի. զանոնք
յաւար դասեցի: . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . .

112. . . . . . Կումմուխցի Մուտալլու՝ այր ան-
խիղճ եւ չարաբարոյ, դիցն անունէն անպատ-
կառ, որ նիւթէր

113. ոճիր, եւ չարիս կը խորհէր, Ուրարտիայ թա-
գաւորն Արգիստիայ[2] վստահացեալ էր. օգ-
նականի մը՝ որ զանի չէր կրնար ազատել. իւր
հարկին ու տրոց՝ իւր տարեկան սակին պայ-
մանաժամը թողուց որ անցնի, եւ զլացաւ իւր
ընծայն: Ի զայրոյթ սրտիս՝

114. պատերազմիկ կառքովս եւ հեծեալներովս
. . . անոր դէմ ճամբայ ելայ[3]: Արշաւանացս
մօտենալը նա տեսաւ. թողուց իւր քաղաքը,
անկէ ետքը չտեսնուեցաւ: . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . .

1 Մեր ազգային արձանագրութեանց Արգիստիս Բ. թագաւորն (Ք. ա. 714— իբր 685):

2 708դ տարի:

*Խորսաբատայ պալատին ԺԴ սրահի Տարեգիրքն*[1]*:*

1. Ապարանք Սարգոնի՝ մեծի արքային, հզօր արքային, . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

7. Ելամացի Խումբանիգաշին զօրութիւնը խորտակեցի, Կարալլում եւ Սուրդա երկիրները, Կիշեսիմ եւ Խարխար քաղաքներն ոչնչացուցի. Մեդացւոց աշխարհին վրայ՝ մինչեւ Բիկնի լեռն

8. եւ Իլլիպի երկիրը՝ Ասորեստանի լուծը դրի։ Ուրարտու երկիրն աւերեցի. Մուծածիր քաղաքն աւարեցի. Անդիա եւ Զիկիրտու երկիրները կործանեցի. Մաննացիները խաղաղացուցի

9. եւ ի խաղաղութեան բնակեցուցի։ . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

16. Կասկու, Թաբալ, Խիլակկու[2] երկիրները բնաջինջ ըրի. Մուսքի երկրին թագաւորը զՄիտա արտաքսեցի։ . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

47. Կառավարութեանս Ճդ տարին[3] Ուրշա Ուրարտացին Ումիլդիշցի Բագդատտիին,

48. Զիկիրտուցի [Միտատտին] եւ Մաննայ կողմնակալներուն յոռի խորհուրդներով իր նուիրակը

49. [խաւրած էր. անոնք] իրենց կողմանէ լուր խաւրեցին, զանոնք ինծմէ եւ Ազայէն՝ իրենց տեառն որդիէն՝ օտարացուց,

50. . . .* ըրաւ զանոնք։ Ուաուս դժուարին լերան վրայ Մաննա երկիրը ատխխիմդու ըրին,

---

[1] Տես ի Հաւաքածոյս Վինքլերայ՝ Die Keilinschrifttexte Sargons, 1889, էջք 80—95, եւ Յ. Մենանայ՝ Annales des rois d'Assyrie, 1875, էջ 158 եւ հետեւ։

[2] Այս է՝ Կիլիկիա։

[3] Ք. ա. 716։

Digitized by Google

51. Ազայի՝ իրենց տէառն՝ դիակը նետեցին: Մաննայի փրկութեան համար Ասուրայ՝ իմ տեառնս՝ ձեռքերս վերցուցի. զբանակս Ասուրայ
52. զյաղթագումարս գումարեցի: Ուաուս լերան վրայ՝ ուր որ Ազայի դիակը նետած էին՝ զԲագդատտին մորթազերծ ըրի,
53. Մաննայի բնակչաց տեսիլ ըրի: Ուլլուսունուին՝ զոր Ազայի գահուն վրայ նստեցուցի, բովանդակ Մաննա երկիրը
54. [կացուցի] հպատակ: Մաննացի Ուլլուսունու Ասուր դից յարգութիւն ընծայելով (°), իւր երկիրը ի °..°:...*
55. Ուրարտացի Ուրշային [վստահացաւ]. զԱսուրըն կարալլացին և զիտտի Ալլաբրացին
56. ինձի դէմ ապստամբեցուց, Ուրարտիցի Ուրշային հպատակութիւն ընելու զաննոնք դրդեց: Ի զայրոյթ սրտիս՝
57. Ասուրայ յաղթագումար բանակները գումարեցի. Մաննա երկրին տիրելու համար . .*
. . . . . . . . . . . . . . .*

## Գլանի արձանագրութիւնն[1]:

1. Սարուկին՝ Բէլայ փոխանորդն, Ասուրայ վսեմ քուրմն . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . .
14. . . . . . արեւելից հեռաւոր Մուսրայ, Նամրի, Իլլիպի,
15. Բիթ-Խամբան, Պարսուա, Մաննա, Ուրարտու, Կասկու, Թուբէլ եւ Մոսոք երկիրներուն իւր հզօր ձեռն տիրեց.

1 Տես ի Cuneif. inscr. of West. Asia, հտր. Ա. տախտ. 36. եւ ի հաւաքածոյս Եբ. Շրատէրայ՝ Keil. Bibl., 1890, հտր. Բ. էջք 38–51: Հ. Վինքլէր իւր հաւաքածոյին մէջ չունի այս արձանագիրը:

16. իւր պաշտօնեայներն իբր կողմնակալներ անոնց վրայ դրաւ. անոնց վրայ՝ նման Ասորեստանեայց՝ հարկեր ու տուրքեր դրաւ:

17. Քաջ դիւցազն՝ որ . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . .

23. (աւերեց) զԲիթ-Բուրութաս, որուն իշխանը զԱմբարիս՝ որ Սարգոնին շնորհքը մոռցած՝ Ուրարտուի ու Մուսքի Թագաւորաց՝

24. վատթար օգնականաց՝ վստահացեալ էր, առեալ ի բաց տարաւ: . . . . .

25. Այր դիւցազն որ . . . . .

26. Քարքամիս քաղաքը, զյոռւի Խաթթաստան՝ զետինը զարկաւ, . . . . .

27. զՈւրարտի աւերեց և Մուծածիր երկիրն աւարեց, մինչդեռ Ուրշա՝ Ուրարտուի Թագաւորն՝ անոր երեւաց սաստիկ սարսափէն՝ անցնիւր զէնքովն իւր կենաց վերջ կու տար.

28. որն որ Պապա[1] և Լալուկնի երկրաց, Սուկկիա, Բալա և Իբիտիկնայ քաղաքաց կայանքը[2] փոխեց, որոնք Կակմի երկրին դէմ կործանում (°) նիւթած էին.

29. որ Անդիա և Զիկկիրտի երկիրները կործանեց. որ անոնց զօրականները գառանց (°) պէս մորթեց, և բովանդակ Թշնամեաց վրայ դեղ մահու սրսկեց. [ճեց, . . .

30. Հզօրն (°) . . . որ անսաստ Մարացիները նուա-

31. որ ցրուեալ Մաննացիները ժողովեց, աւերեալ Իլլիպի երկիրը կարգաւորեց, . . . .

32. որ զԿիրխի առաթուր կոխեց, խեռ Թշնամւոյն լեռները դրդուեցուց (°), որ զյափշտակիչ (°) Իտտի Ալլաբրացին իւր քաղաքէն հեռացուց.

---

[1] Հաւանականօրէն՝ Պասպարունեաց գաւառ Վասպուրականի մէջ: Պապա՝ ըստ Խորսապատայ պալատան մեծ Արձանագրին, տղ. 57:

[2] Իմա՝ բնակչաց "կայանքը":

Digitized by Google

33. որ Կարալլա երկիրն ոչնչացուց. անոր քաղաքապետն Ասուրլին չարաչար պատժեց (°) . .
. . . . . . . . . . . . . . . . . .

## Նիմրուտայ արձանագրութիւնն[1]:

1. Ապարանք Սարուկինայ՝ փոխանորդի Բէլայ, քրմապետի Ասուրայ, . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . .

9. . . . . որ անհանգիստ Մաննան կարգի դրաւ, . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . .

12. որ Մաննա, Կարալլու եւ Պադդիրի[2] երկիրներուն տիրեց . . . որ Հեռաւոր Մարերը մինչեւ յելս արեւու նուաճեց . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . .

## Լառնաքայի Հարթ Կոթողն :[3]

. . . . . . . . . . . . . . . . . *

Սէ-Ն Ա (Բ). 1. Սարգոն՝ արքայ մեծ՝ [արքայ հզօր], . . . . . . . . . . . . .

---

1 Հ. Ա. Լէյարտէն գտնուած այս արձանագրութիւնն երկու վիմատախտակի վրայ փորագրեալ է։ Զայն հրատարակեց իւր հաւաքածոյին մէջ Inscriptions in the cuneiform character են, տախտ. 33—34. Տես Հ. Վինքլէր՝ Die Keilinschrifttexte Sargons, էջք 168–173, եւ Եբ. Շրատէր՝ Keil. Bibl. հտր. Բ. էջք 34—39։

2 Թուի թէ այս երկիրն՝ Շամսիռամմանայ Դ. Հարթ կոթողին արձանագրութեան մէջ սիւն Բ, տղ. 7 յիշուած Պադդիրա քաղաքին վիճակն էր։

3 Այս արձանագրութիւնն՝ որ զարդիս Պերլինի Մուսարանին մէջն է, երկաթակուռ (basalte) քարի մը վրայ փորագրուած է, եւ 1846ին Կիպրոսի Լառնաքա քաղաքին հարաւակողմը գտնուեցաւ՝ հին Կիտիոն քաղաքին փլատակաց տակ։ Տես ի Cuneif. inscr. of West. Asia, հտր Գ. տախտ 11։ Յ. Մենան՝ Annales des rois d'Assyrie,

26. Եգիպտոսէն մինչեւ [Մուսք]
27. ընդ ինեւ նուաճեցի. ցրուեցի
28. [Ելամայէ] Խումբանիգասու զօրութիւնը.
29. կործանեցի Կարալլա երկիրը, [Սուրդա] երկիրը,
30. Կիշեսիմ քաղաքը, Խարխար քաղաքը,
31. Մեդացիները, զերկիրն Իլ[լիպի],

. . . . . . . . . . . . . . . .

37. Նուաճեցի Մաննա երկիրը,
38. Անդիա եւ Զի[կիրտու] երկիրները։ [տանաւն],
39. (քղք) Մուձաձիրցի Ուրզանան [իւր գերդաս-
40. զՔալդիա դիս եւ զԲագբարտու դիս ....*
41. ի գերութիւն վարեցի։
42. Ուրարտուին՝ [բովանդակ] տարածութեամբն՝
43. կոծ [ու ողբ] հասուցի.
44. անոր մէջը [բնակողաց վրայ°] ի ....*
45. սուգ եւ աշխարումն դրի (°)։
46. [Զար]կի Ուրշա [Ուրարտացին]
47. Ուաուս դժուարին լերան [վրայ]։
48. Ուժգին ճակատամարտէս վախ[ցաւ]. [շունչն
49. իւր իսկ ձեռքովն՝ [իւր դաշոյն] երկաթի դա-
50. իւր կենաց [վերջ տուաւ]։

. . . . . . . . . . . . . . . .

## *Ցլոց արձանագրութիւնն*[1]

(Տխտկ 40. տող 1) "Ապարանք Սարգոնի՝ մեծի արքայի ....„

---

էջ 207, եւ Հ. Վինքլեր՝ Die Keilinschrifttexte Sargons, էջք 174, 177։ Եբ. Շրատէրայ հաւաքածոյն այս արձանագրութիւնը չունի։

[1] Խորսապատայ պալատան գլխաւոր դրան առջեւ՝ մարդոյ գլուխ ունեցող եւ թեւաւոր հսկայաձեւ երկու ցուլ գտնուած են, որոնց սրունքներուն մէջտեղն արձանագիր մը կը գտնուի, զոր Յ. Մենան իւր Annales des rois d'Assyrie, էջ 192 եւն հրատարակած է։ Թէպէտ այս ասուրագիտին թարգմանութիւններն ճիշդ չեն առ հասարակ, սակայն մենք վերոյգրեալ տողերը յառաջ կը բերենք՝ որպէս զի անդէն

Digitized by Google

(Տխտկ 40. տողք 12—25) "Հզօր, կարող... Ելամայ երկրին թագաւորը զխումբանիկաս ի փախուստ դարձոյց. Մանայ, Կարալլայի, Անդիայի, Զիկուրտուի... երկիրները նուաճեց. Ուրարթու[1] երկրին պատերազմ հրատարակեց. Մուձաձիր քաղաքը առաւ. եւ Ուրշա՝ Ուրարթու երկրին թագաւորն՝ իւր իսկ ձեռքովն իր կեանքը զրաւեց։...."

(Անդ, տողք 26—49) ". . . . Կասկայի բովանդակ տունը տապալեց։ Թոբէլի եւ Բեթ-Բուրուտասայ երկիրները նուաճեց։...."

## Սենեքերիմայ (Ք. ա. 705 – 682)

### Դէյլէօրի Գլանին հատուածակողման արձանագրութիւնն[2]

Սիւն Ա. 1. Սինախիրիբա՝ արքայ հզօր,

2. . . . արքայ Ասորեստանի, աշխարհիս չորից կողմանց արքայ, . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . .

10. Ասուր՝ լեառն մեծ, . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . .

13. վերին ծովէն[3] դէպ ի մուտս արեւու՝

14. մինչեւ ցստորին ծովն դէպ յարեւելս,

15. բոլոր բովանդակ սնապարծները ոտիցս տակ հպատակեցուց։

Սիւն Գ. . . . . . . . . . . .

---

յիշեալ Կարալլա երկիրն միւս Նաիրեան երկրաց կարգին մէջ յիշուած ըլլալը ցուցուի։

1 Պէտք էր գրուէր 'Ուրարտու,։

2 Հատուածակողմ արձանագրութիւնս խեցեղէն եւ վեցիջեան ըլլալով՝ 1830 տարին Նինուէին մէջ գտնուեցաւ։ Իր կանխագոյն ստացողին անուամբն սովորաբար Դէյլէօրի Գլան կը կոչուի, եւ զարդիս Բրիտանական Թանգարանին մէջն է։ Տես ի Հաւաքածոյս Եբ. Շրատէրայ Keil. Bibl., Հտր Բ, էջք 80–113։

3 Վանայ ծովն։

66. *Հինգերորդ արշաւանքիս՝ մարդիկն Տու-*
*մուր°-րի,*[1]
67. Սարուռ, Իձամա, Կիբշու, Խալբուդա,
68. Քուա Ե– Քանա *քաղաքայ, որոնք նման բունոյ*
*արծուոյ՝ [վրայ*
69. *Թռչնոց Թագաւորի՝ Նիբուր*[2] *դժուարին լերան[*
70. *իրենց բնակատեղին ունէին, լծոյս տակ զիրենք*
*չէին դրած։*
71. *Նիբուր լերան ստորոտը բանակս դրի.*
72. *քաջամարտիկ անձնապահներովս* (°)
73. *եւ ճակատամարտիս անեղծանելի զօրքերովս*
74. *վայրենի եզան մը պէս անոնց ճակատ մատու-*
*ցի ես։ [նային հզօր վտակներ*
75. *Ձորեր, ծործորներ, լերանց զառիվայրեր, լեռ-*
76. *անցայ իմ գահուս վրայ։ Այն տեղն որ դեռ-*
*պակի համար կարի դժուարին էր,*
77. *ոտիցս վրայ իջայ. այծքաղի մը նման, բարձրա-*
*բերձ կատարներուն վրայ*
78. *անոնց դէմ ելայ։ Ուր որ ծունկերս [կը նստէի.*
79. *հանգչեցընել պէտք էր, քարաժայռի մը վրայ[*
80. *ծարաւիս դէմ լեռնային ցուրտ աղբերականց*(°)
*ջուրը կը խմէի։ [հետամուտ եղայ,*
81. *Անտառուտ լեռներու բարձանց վրայ անոնց[*
82. *անոնց վրայ պարտութիւն ածի։ Անոնց քա-*
*ղաքաց տիրեցի,*

Սէ–Ն Գ. 1. *անոնց աւարը կորզեալ առի.*
*աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։*

2. *Երեսս դարձուցի ընդդէմ Մանիաիի՝*
3. *ըմբոստ Թագաւորի Ուկկի քաղաքին՝ յերկրին*
*Դաիայ։ Ընթացքս առի*
4. *չբացուած նուրբ շաւիղներու, անանցանելի*
*զառիվերներու մէջ՝ առաջի*

---

1 Այս անունը կորդուական Ցմրիք գաւառին անուան խիստ նման է։

2 Տես Ասուրնաձիրաբաղայ Տարեգր. տողք 70 եւ 73։

Digitized by Google

5. դժուարին լերանց՝ ինծի առաջ տակաւին
6. թագաւորացիս Նախնեացս եւ ոչ մէկն մտած էր։
7. Անարա եւ Ուպպա աՀագին լերանց ստորոտն
8. բանակս դրի. ես իսկ գահուս աթոռոյն վրայ՝
9. ճակատամարտիս բովանդակ զօրքերովս
10. քաջասրտութեամբ (°) մտանք կիրճերու մէջ։
11. Տաժանօք սեպ լերանց գագաթներուն վրայ
ելայ։
12. Այն Մանիաի զօրացս ոտքերուն փոշին [ղուց՝
13. տեսաւ. զՈւկկու իր արքայական քաղաքը Թո-
14. Հեռագոյն տեղ փախաւ։ ԶՈւկկու պաշարեցի,
անոր տիրեցի, [ստացուածք ու գոյք
15. կողոպուտն առի տարի։ Ամէն Հնարաւոր եղածը,[
16. իր պալատան գանձն անոր մէջէն [քաղաքաց՝
17. դուրս Հանել տուի, յաւար դասեցի. եւ 33[
18. որոնք իր վիճակին կը պատկանէին՝ տիրեցի.
19. մարդիկ, իշեան, արջառ, օդիք եւ այծիք անոնց
մէջէն [այրեցի։
20. յաւարի առի, աւերեցի, քանդեցի, կրակով[

. . . . . . . . . . . . . . .

Նապի-Նունուս բլրոյ արձանագրութիւնն[1]:

. . . . . . . . . . . . . . .

16. Տու-մուր°-րի քաղաքին մարդիկը՝ որոնք դժուարին լերան մը վրան կը բնակին, զինուք յաղթահարեցի։ Ուկկու քաղաքը,
17. այլ եւ անոնց բովանդակ բնակատեղիքը մրրկալից Հեղեղի նման ոչնչացուցի։ . . . .

. . . . . . . . . . . . . . .

---

[1] Նինուէի 'Յովնան մարգարէի, բլրոյն մէջ գտնուեցաւ արձանագրութեանս սախտակն, որ զարդիս ի Կոստանդնուպոլիս կը պահուի։ Տես Cuneif. inscr. of West. Asia, Հտր. Ա. տախտակ 43. տես եւ Եբ. Շրատեր՝ Keil. Bibl., Հտր Բ. էջք 118–119։

## Պահիր-Բէլայ՝ Ամադիյա քաղաքի կուսակալին առ Սենեքերիմ նամակն[1]

1. Առ արքայն՝ տէր իմ, քու ծառայդ Պահիր-Բէլ.
2. խաղաղութիւն լիցի արքային՝ տեառն իմում,
3. խաղաղութիւն թագաւորի երկրին,
4. խաղաղութիւն բերդերուն.
5. Թագաւորին՝ տեառն իմոյ՝ սիրտն լաւ ըլլայ։
6. Ուրարտուին լուրերուն նկատմամբ՝
7. զորոնք հանապազօր կը խաւրեմ,
8. եկաւ աստէն ասոր հետ
9. եւ ըսաւ թէ կուսակալն
10. Բուստուննիայ եւ երկրորդ հրամանատարն
11. զինքը խաւրեցին. Հարդա քաղաքին մէջ
12. պաշտօնակալին առջեւ պահպանութիւն ըրին,
13. եւ քաղաքէ ի քաղաք՝ մինչեւ Տուրուսպա[2] [
14. քու գրելէդ առաջ։ [քաղաքը՝
15. Եւ Արգիստիայ[3] դեսպանն եկաւ
16. նաեւ նոյն նիւթոյն վրայ լուրերը
17. զորոնք խաւրեցի քեզի. եւ նիւթոյն վրայ

---

1 Գէորգ Սմիթ անգղիացին այս նամակը 1874 տարին՝ Նինուէի հողոյն վրայ Գույունճըգ գիւղոյն եւ Սենեքերիմայ պալատին փլատակներու մէջ գտած է։ Նամակն քար մըն է, որուն վրայ կուսակալն սեպագիր գրութեամբ իւր տեղեկագիրը Թագաւորին կը խաւրէ։ Յիշեալ անգղիացի ասուրագէտն իւր Assyrian Discoveries գրքին մէջ (էջ 309, 5դ եւ 6դ տպագր.) սապէս կ'ըսէ. "Մեր հաւաքածոյին մէջ հետաքրքրական նամակ մը կայ, զոր Պահիր-Բէլ Ամիդ (Ամադիյա) քաղաքին կուսակալն Սենեքերիմայ ուղղած է։ Այս նամակիս մնացեալ մասը կը թարգմանեմ"։ Որչափ գիտեմք, նամակիս մնացեալ մասն տակաւին հրատարակուած չէ։ Ամադիյա՝ ոչ թէ Ամիդ՝ այլ Կորդուաց հարաւոյ արեւմտակողմը Ամադիա քաղաքն է անտարակոյս։

2 Ճշդիւ 'Տուսպաս,, արդի Վան քաղաքն։

3 Արգիստիս Բ. (Ք. ա. 714 իմր 685)։

18. իսկ դուն վճիռ չտուիր։ Եւ քու ձիերդ՝
19. որոնք դեսպանին յանձնուած էին՝
20. խաւրեցի։

## Ասուրախիդդինայ Ա. (Ք. ա. 682—668) (ընկեալ) Բ. Հատուածակողման արձանագրութիւնն[1]

Սիւն Ա. 1. Պատառեցի [զգեստս, ողբերու ձայներ] հնչեցուցի,
2. առիւծի մը նման մռնչեցի. սիրտս աղաղակեց։
3. Իմ հայրենական տանս իշխանութիւնը գործածելու, իմ քրմութիւնս կատարելու(°) համար
4. աղաչեցի զԱսուր, զՍին, զՇամաս, զԲէլ, զՆաբու եւ զՆերգաղ,
5. զԻստար Նինուէի եւ զԻստար Արբելայ։
6. Անոնք իմ խօսքս լսեցին։
7. Իրենց հաստատարիմ երախտեօքն (ինծի) շառագոյն տախտակ (°) մը յանձնեցին.
8. 'զօրացիր, քալէ, մի ուշանար',
9. 'մենք քու քովէդ կ'երթանք, քու թշնամիներդ կը նուաճենք։', [չտեսայ.
10. Մէկ օր, երկու օր ետ չդարձայ. զօրացս երեսը[
11. յետս կոյս չնայեցայ. ձիերուն կազմածը, ձիոց հարկիքը՝ [կը քաշէին, վար առնել չտուի.
12. որոնք իմ պատերազմական կահ ու կազմածս[
13. պատերազմի վրանս (°) չպարզեցի։

---

[1] Թէպէտ այս արձանագրութիւնն վեց սիւնէ կը բաղկանայ, սակայն իւրաքանչիւր սեան վերին կէսերն կը պակսին։ Արձանագիրն՝ Սենեքերիմայ մահուան վրայ ակնարկութիւն մ'ընելով կը սկսի։ Ասուրախիդդին՝ Ս. Գրոց Ասորդանն, իր հայրասպան եղբարց վրայ կատարած յաղթութիւնը հոն մեզի կ'աւանդէ։ Տես բնագիրը ի Cuneif. inscr. of West. Asia, հատ Գ., 15։ 16. եւ Budge, The History of Esarhaddon, էջք 20–25. տես եւ Եբ. Շրատեր՝ Keil. Bibl., հատ Բ. էջք 140—143.

14. Շաբատ[1] ամսոյն սառամանիքէն, ցրտութենէն
եւ սաստիկ փոթորկէն չվախցայ։ [բացի՝
15. փետրաւոր շահէն[2] թռչնոյ նման թեւերս[
16. որպէս զի թշնամիներս յերկիր կործանեմ։
17. բուռն եւ արագ ընթացիւք դէպ ի Նինուէ
ճամբայ ելայ[3]։ [դակ զօրքն առջեւս
18. Խանի-րաբբատ[4] երկրին մէջ անոնց[5] բովան-[
19. կանդնեցան. ընդդէմ իմոց գնացից ամէն կող-
մանէ իրենց զէնքերը շարժեցին։
20. Երկիւղ դիցն մեծաց՝ տերանց իմոց՝ զանոնք
յերկիր կործանեց։ [զարհուրեցան։
21. Հզօր ճակատամարտիս յարձակումը տեսան,]
22. Իստար՝ կռուոյ ու ճակատամարտի տիկինն՝ որ
իմ քրմութիւնս կը սիրէ,
23. իմ քովս կեցաւ, անոնց լայնալիճը խորտակեց,
24. անոնց յարդարեալ ճակատը ճեղքեց։
25. Անոնց բանակին մէջ ըսին. "սա է մեր թա-
գաւորն"։
26. Իւր բարձր հրամանաւն՝ իմ կողմս կեցան ե-
ըսին . . . . .*

. . . . . . . . . . . . . . . *

Սէ-ն գ. 1. Խէլ-կկու-ի բնակչաց ծոծորակը
առ ոտն կոխեցի . . . . . . . . . .

16. Յերկիր կործանեցի Մաննայի ապստամբ, ան-
սաստ բնակիչները [զաջին[6]
17. եւ անոնց զօրքը. զԽսպակաի (երկիր) Ասգու-

---

1 Յունուար 20 - Փետրուար 20, 681։

2 Ասորեստաներէն «էրէննու»։

3 Թուի թէ Ասուրախիդդին Սենեքերիմայ մահուան ժամանակ Կապադովկիոյ մէջ էր։

4 Տես Թագղաթփաղասարայ Ա. Հատուածակողման արձանագ. Ե. 34, ըստ որում Միլիդիա (Մելիտինէ) քաղաքն այն երկրին մէջ էր։ Ըստ այսմ Ճակատամարտն Մելիտինեայ մօտերը եղած է։

5 Այսինքն Ադրամելէքայ եւ Սանասարայ։

6 Ասգուզա անուան նախաւոր ձեւն պէտք էր որ

18. դաշնակից մը՝ որ չէր կարող զանոնք փրկել, զինուք ընդ լծով արկի։

## Արշաւանք ի Քաղդէաստան, յԱրաբիա եւ յԱսորիս:

### Ա. եւ Գ. Հատուածակողմանքն[1]

Սէ—ն Ա. 1. Ասուրախիդդինա՝ . . . Թագաւոր Ասորեստանի,

. . . . . . . . . . . . . . . . .

55. աւարող Արզանի[2] քաղաքին,
56. . . . . .* ի վտակն Մուսրի[3] երկրին.

Սէ—ն Բ. 1. զ. . . .*, [զորդի Սուխիլիայ[4]],
2. Ասորեստան տարի.
3. Նինուէի ելքին դրան մօտ՝
4. արջերու (°), շուներու եւ կինճերու հետ
5. զանոնք[5] շղթայներու տակ դրի։

. . . . . . . . . . . . . . . . .

27. յերկիր կործանող բնակչաց Մաննայի
28. ապստամբաց անսաստից,
29. որ զզօրս Իսպակայի...

---

Ասգունզա կամ Ասքունզա ըլլար, զոր Երեմիայ (ԾԱ. 27) Ասքանազ (Աշքենազ)ի հետ պէտք է համեմատել։ Ասգուզա՝ Վասպուրականի Անձախի-Ձոր գաւառին հետ նոյն կը համարիմ։

1 Տես Ա. Հ. Լէյարտ Inscriptions in the cuneif. character, տախտկք 20–29, եւ Եբ. Շրատէր՝ Keil. Bibl., հտր. Բ. էջ 124 եւն.

2 Թուի թէ այս քաղաքն իւր անունը Արածանի գետէն առած է։

3 Ինզիտի (Հանձիթ) վիճակին արեւմտակողմը՝ Նաիրեան երկիր մը, զոր Եգիպտոսի (Մուսուր) հետ պէտք չէ շփոթել։ Տես Fr. Hommel, Geschichte Babyl. und Assyr., 1885, էջ 774, ծանօթ. 3։

4 Բրիտանական Թանգարանին K 2671? տախտակին համեմատ. Fr. Hommel, անդ։

5 Այսպէս ըստ բնագրին։

30. (երկիր) Ասգուզացւոյ՝ Նիշակակցւոյ որ չէր կրնար զանոնք փրկել,
31. զինուք ընդ լծով եարկ։
. . . . . . . . . . . . . . . .

## Ասուրբանիբաղայ (Ք. ա. 668—իբր 638) Ռասսամեայ Գլանին Տարեգրութիւնքն[1]

Սէ–ն Ա. 1. Ես Ասուրբանիբաղ՝ . . . . .
2. երիցագոյն արքայորդի ի կանանոցէ . . .
. . . . . . . . . . . . . . . .

Սէ–ն Բ. . . . . . . . . . . . . .

126. Իմ չորրորդ արշաւանքիս՝ զօրքս խաղացուցի, ընդդէմ Ախսերիոյ՝
127. Մաննայի թագաւորին՝ ճամբայն բռնեցի։ Ի հրամանէ Ասուրայ, Սինայ, Շամասայ,
128. Ռամմանայ, Բէլայ, Նեբովայ,
129. Նինիբայ, Ներգաղայ Ե–Նուսկուայ՝ Մաննայի վրայ քալեցի, հոն յաղթանակաւ յառաջացայ։ [որոց թիւն չկար,
130. Անոր քաղաքները՝ ամուրներն ու փոքրները՝[
131. առի մինչեւ ցԻզիրտու. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։ [արջառ եւ ոչխարներ
132. Այն քաղաքներէն մարդիկ, ձիեր, իշեան,[
133. կորզեալ հանեցի, յաւարի առի։ Ախսերի արշաւանացս գալը [թողուց,
134. լսեց, զԻզիրտու իր արքայական քաղաքը[

---

[1] Արձանագրութիւնս գլանի մը վրայ փորագրուած է, որ տասնիջեան հատուածակողմ մըն է։ Հնութեանց խուզիչ Որմիզդ Ռասսամ 1878 տարին գտաւ զայն ի Հիւսիսային պալատան Գույունճըքի, որ Նինուէի մէկ արուարձանն էր։ Տես ի Cuneif. inscr. of West. Asia, Հտր. Ե. տախտկ 1–10. տես եւ Եբ. Շրատէրայ հաւաքածոյ Keil. Bibl., Հտր. Բ. էջք 152–237։

Սէ–Ն գ. 1. փախաւ յԻշտատտու՝[1] քաղաք նորա ապաւինի. Հ–Ն առաւ

2. դադար։ Այս վիճակին[2] տիրեցի. 10 օրուան և 5 օրուան ճամբայ
3. յաւեր դարձուցի, աւերակաց աւազ թափեցի։
4. Ախսերի՝ որ իմ ճոխութենէս չվախցաւ, ի հրամանէ Իստարայ՝ [ըսած էր,
5. որ Արբէլայի մէջ կը բնակի, որ յառաջագոյն[
6. "Ախսերիայ՝ Մաննայի թագաւորին մահը ես՝
7. ինչպէս ըսած եմ՝ պիտ՝ որ կատարեմ", Նա իր ծառայից ձեռքը զանի մատնեց։
8. Իր երկրին մարդիկն անոր դէմ ապստամբութիւն մ՚ըրին. անոր դիակը իւր քաղաքին մեծ փողոցին վրայ [թողուցին։
9. նետեցին, իր մարմինը գետինը տարածուած[
10. Անոր եղբայրը, անոր գերդաստանը, անոր հօրը տան սերունդները զինուք ջնջեցի։
11. Յետոյ՝ իր որդին Ուալլի անոր գահոյն վրայ նստաւ։
12. Զզօրութիւն Ասուրայ, Սինայ, Շամասայ, Ռամմանայ, Բէլայ, . . . .
13. Նինուէի Իստարայ՝ Թագուհւոյն ի Կիդմուրու,
14. Արբէլայի Իստարայ, Նինիբայ, Ներգաղայ և Նուսկուի՝
15. դիցն մեծաց՝ տերանց իմոց՝ տեսաւ նա
16. և իմ լծոյս խոնարհեցաւ։
17. Ինքն զինքն ի կեանս պահելու համար՝ խոստովանեցաւ իր յանցանքները, յաղերս անկաւ իմ ճոխութեանս։
18. Զերխինի՝ իր ծնած մէկ որդին,
19. Նինուէ խաւրեց, և նա ոտքերս համբուրեց։
20. Շնորհս անոր շնորհեցի։

---

[1] Գ. Սմիթայ Բ. Գլանին համեմատ (Գ. 45) "յԱտրանա,,։

[2] Այսինքն Իշտատտու քաղաքին վիճակին։



Digitized by Google

21. Հաշտութեան ողջունիւ իմ դեսպանս խրկեցի։
22. Իր երիկամունքէն սերած դուստր մը իբր երկրորդական կին ինծի խրկեց։
23. Իր առաջուան ժամանակաց հարկը՝ զոր թագաւորաց իմ հարցս կառավարութեան ատեն
24. դադրեցուցած էին, իմ առջեւս բերին։
25. Անոր առաջուան հարկին վրայ 30 ձի
26. աւելցուցի, անոր վրայ դրի։

## Արշաւանք յԵլամ, ի Բաբելաստան, յԱրաբիա եւն։

Սիւն Գ. . . . . . . . . . . . . . .

40. Շարդուրի՝[1] Ուրարտուի թագաւորն՝
41. որուն հարքն թագաւորք՝ իմ հօրս
42. եղբայրութիւն յայտարարած էին,
43. այն ատեն Շարդուրի այն նշանաւոր գործերը՝
44. զորոնք դիքն մեծամեծք ինծի սահմանած էին, լսեց։ [Նոյց.
45. Որդւոյ մը նման՝ իր հօրը "տէրութիւն"[2] ծա-
46. եւ ըստ այնմ
47. ծանոյց՝ "ողջոյն"
48. "արքայի՝ տեառն իմում".
49. Եւ յարգութեամբ՝ հպատակութեամբ իւր ծանր ընծայն
50. իմ առջեւս տանել տուաւ։

. . . . . . . . . . . . . . .

---

1 Շարիդուրիս Գ. (Ք. ա. իբր 645–620)։

2 Այս տիտղոսն եւ հետեւեալ տողերուն մէջ գործածուած խօսքերն՝ Ուրարտուայ թագաւորին կողմանէ բուն քաղաքական հպատակութիւն չեն յայտներ։ Չեղաւ ուրարտացի թագաւոր մը որ Ասորեստանի թագաւորի մը քաղաքականօրէն հպատակ եւ անոր հարկատու եղած ըլլայ։ Ուստի բովանդակ այս պարբերութիւնն՝ Շարդուրիայ Գ.ի կողմանէ Ասուրբանիբաղի անձին նկատմամբ պատուոյ եւ յարգութեան ցոյց մը մեզի կը ծանուցանէ։ Զայս կը հաստատէ վերագոյն 41 եւ 42 տողերուն բովանդակութիւնն։

Digitized by Google

## Գ. Սմիթայ Ա. Գլանին Տարեգրութիւնքն[1] (այլ ընթերցուած)

Սիւն Գ. 43. Չորրորդ արշաւանիս՝ զօրքս ժողվեցի.

44. Ախսերիի՝ Մաննայի թագաւորին դէմ
45. խաղացքս ուղղեցի։
46. Ի հրամանէ Ասուրայ, Սինայ, Շամասայ, Ռամմանայ, Բէլայ, Նաբուլայ, [Թագուհւոյն
47. Նինուէի Իստարայ՝ Կիտմուրիի աստուածային[
48. եւ Իստարայ Արբեղայի, Նինիպայ, Ներգաղայ եւ Նուսկուի՝
49. Մաննա մտայ եւ յաղթողաբար խաղայի — քայլեցի։
50. Անոր ամուր քաղաքները եւ փոքրները՝ որոնք անհամար էին,
51. մինչեւ Իզիրտու[2] քաղաքը՝ դէպ ի ներս,
52. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։ Մարդիկ, ձիեր,
53. էշեր, արջառ եւ ոչխար ի միջոյ քաղաքայն
54. այնոցիկ առեալ-հանեցի եւ յաւար դասեցի։
55. Ախսերի արշաւանացս մօտենալը լսեց,
56. իւր արքայական քաղաքը զԻզիրտու թողուց,
57. յԻշտատտի՝ իւր ապաւինի քաղաքը փախաւ,
58. հոն դադար առաւ։ Այս վիճակին տիրեցի.
59. — 10 եւ 5 օրուան գնացքի ճամբայն յաւեր դարձուցի,
60. աւերակաց աւազ թափեցի։
61. Ախսերի՝ որ իմ ճոխութենէս չվախցաւ,
62. ի հրամանէ Իստարայ՝ որ Արբեղայի մէջ կը բնակի, որն որ կանխաւ ըսած էր,
63. "Ախսերիի՝ Մաննայի թագաւորին մահը ես՝

---

[1] Տես բնագիրը եւն՝ Գ. Սմիթայ History of Assurbanipal, 1871, էջք 84 եւն։ Գլանն զարդիս ի Լոնտոն Բրիտանական Թանգարանին մէջ է։

[2] Այլ ընթերցուած՝ Իզիրտի։

64. ինչպէս ըսած եմ, պիտ՚ որ կատարեմ»։ Նա իր
ծառայից ձեռքը [Նորա յարեան.
65. զանի մտանեն։ Իր երկրին մարդիկն ի վերայ|
66. անոր դիակը իւր քաղաքին մեծ փողոցին վրայ
նետեցին.
67. իր մարմինը գետինը տարածուած թողուցին։
Անոր եղբարքը, անոր գերդաստանը,
68. անոր հօրը տան սերունդները զէնքով ջնջեցի։
69. Յետոյ Ուալլի՝ իւր որդին՝ անոր գահը նստաւ։
70. Զզօրութիւն Ասուրայ, Սինայ, Շամասայ,
Ռամմանայ, Բէլայ, Նաբուայ, [ի Կիդմուրու,
71. Նինուէի Իստարայ՝ աստուածային թագուհւոյն[
72. Արբեղայի Իստարայ, Նինիբայ, Ներգաղայ եւ
Նուսկուի՝ [իմ լծոյս խոնարհեցաւ։
73. դիցն մեծաց՝ տերանց իմոց, տեսաւ նա, եւ[
74. Ինքն զինքն ի կեանս պահելու համար՝ խոս-
տովանեցաւ իւր յանցանքները, յաղերս անկաւ
75. իմ ճոխութեանս։ Զերիսիննի՝ իր ծնած մէկ
որդին,
76. Նինուէ խաւրեց, եւ նա ոտքերս պագաւ։
77. Շնորհս շնորհեցի անոր։ Հաշտութեան ողջու-
նիւ իմ դեսպանս
78. խրկեցի։ Իր երիկամունքէն սերած դուստր մը
79. ինծի խաւրեց իբր երկրորդական կին։
80. Իր առաջուան հարկը՝ զոր թագաւորաց իմ
հարցս կառավարութեան ատեն
81. դադրեցուցած էին, իմ առջեւս բերին։
82. Անոր առաջուան հարկին վրայ 30 ձի աւել-
ցուցի, անոր վրան դրի։

## Գ. Սմիթայ Բ. Գլանին Տարեգրութիւնք[1] (այլ ընթերցուած)

Սէ-ն գ. 16. [Զորրորդ արշաւանիս՝ ընդդէմ]
Ախսերիայ

---

1 Տես բնագիրը եւն՝ Գ. Սմիթայ History of

17. [արքային Մաննայ] գնացի։
18. . . . . . * նուաճել (°)
19. . . . . . . . *
20. . . . . . * [Ման]նացի
21. . . . . . . Ասուր
22. . . . * ըրի . . . . *
23. Ախսերի արշաւանիս մօտենալը [լսեց]
24. Եւ [իր զօրքը] խրկեց։
25. Դէպ ի կատարած գիշերոյ՝ նենգութեամբ
26. ճակատ տալու համար յառաջ խաղացին,
27. զօրացս հետ պատերազմելու նպատակաւ։
28. Պատերազմի մարդիկս անոնց հետ կռուեցան,
29. զանոնք զարկին.
30. դաշտին երեք կրկնաժամու ճամբայ մը՝ ըն-
դարձակ հարթավայրը անոնց դիակներովը լե-
ցուցին։ [դիցն մեծաց՝ իմ տերանցս,
31. Ի հրամանէ Ասուրայ, Սինայ եւ Շամասայ՝[
32. որոնք զիս զօրացուցին, Մաննայի մէջ խա-
ղացի գնացի,
33. Եւ յաղթանակաւ բոլոր կողմը քալեցի։ Արշա-
ւանէս դառնալուս՝ Աիուսիաս՝ [Աոդիաս,
34. բերդաքաղաք մը, Պաշա . . . սու, Բուսուտու,[
35. Ուրկիամուն, Ուպպիս, Սիխուա,
36. Նազիրինի, ութ ամուր քաղաքները՝
37. փոքրներով հանդերձ որոց ոչ գոյր թիւ,
38. մինչեւ Իզիրտի քաղաքն դէպ ի ներս՝ առի,
39. աւերեցի, քանդեցի, հրով այրեցի։
40. մարդիկ, ձիեր, իշեան, արջառ, ոչխարներ
41. այն քաղաքներէն [պուտ սահմանեցի։
42. դուրս հանել տուի, զանոնք ի կապուտ կողո-
43. Ախսերի իմ արշաւանիս մօտենալը լսեց.
44. զԻզիրտու իր արքայական քաղաքը թողուց,

---

Assurbanipal, 1871, էջք 89 եւ հետ. տես եւ Եբ. Շրատէրայ հաւաքածոյն Keil. Bibl., հտր. Բ., 1890, էջք 240–243։ Գլանս պարդիս ի Լոնտոն Բրիտանական Թանգարանին մէջ կը պահուի։

45. յԱտրանա՝[1] յիւր քաղաք ապաւէնի փախաւ,
46. Հոն դադար առաւ ։ Իզիրտու, Ուրմիատի,
47. Ուսբիա իր ամուր քաղաքները՝ պաշարեցի։
48. Այս քաղաքներուն մէջ բնակող մարդիկը
49. փակեցի, անոնց կեանքը սեղմեցի՝ նեղը ձգեցի։
50. Այս գաւառին տիրեցի, աւերեցի, քանդեցի,
հրով այրեցի։ [աւերակաց աւազ
51. — 10 և 5 օրուան գնացից ճամբայն աւերեցի,[
52. վրան թափեցի։ Արշաւանէս դարձին՝ (քա-
ղաք) Պատտիրիի վիճակին քաղաքներուն՝
53. զորոնք թագաւորաց իմ հարցս կառավարու-
թեան ժամանակ Մաննացիք առած
54. իրենց սեպհականած էին, [աւարեցի։
55. տիրեցի, հրով այրեցի, անոնց կողոպուտը[
56. Այս քաղաքները Ասորեստանի միացուցի։
57. Արսիանիս[2] քաղաքին վիճակը՝
58. Աիքանանի քաղաքին մօտ՝
59. Խարսիշադի երկրին մէջ, [ի Մաննա,
60. դրիւք առաջակացն յերկրին Կումուրդացւոց[
61. յաղթահարեցի, հրով այրեցի։ ԶԲաիդիսադի,
անոնց ամրոցին հրամանատարը՝ սպաննեցի,
62. կողոպուտը աւարեցի։
63. Իրիստիանա քաղաքին վիճակին
64. տիրեցի. անոր քաղաքները յաղթահարեցի,
65. հրով այրեցի, անոր կողոպուտը աւարեցի։
66. Ճակատամարտիս յարձակմամբն անոր վիճակը
աւերեցի,
67. անոր բովանդակ երկիրը փոքրկացուցի։
68. Ճոխ աւարաւ,
69. ծանր ընծայիւք ողջամբ ետ դարձայ,
70. Ասորեստանի երկիրը մտայ։
71. . . . *րուա, Շարրուիգբի,

---

[1] Ռասսամայ Գլանին (Գ. 1) համեմատ՝ "յիշտատտու", և Գ. Սմիթայ Ա. Գլանին մէջ (Գ. 57) "յիշտատտի"։

[2] Հաւանականօրէն՝ Կապուտան ծովուն հիւսիսոյ արեւմտակողմը՝ Հոգեաց-վանք։

Digitized by Google

72. Գուսունի, . . . *րուտի՝
73. քաղաքք ի սահմանս Ասորեստանի,
74. զորոնք Թագաւորաց իմ Հարցս կառավարու-
թեան ժամանակ
75. Մաննացիք առած էին,
76. այս բնակավայրաց տիրեցի:
77. Մաննացիները անկէ հանեցի:
78. Ձիեր, զէնքեր, անոնց պատերազմական կահ
ու կազմածը
79. ի կապուտ կողոպուտ Ասորեստան տարի:
80. Այս քաղաքները նորէն ստացեալ կալայ,
81. Ասորեստանի միացուցի:
82. Ախսերի՝ որ իմ ճոխութենէս չվախցաւ,
83. [Ասուր եւ] Իստար զանի իր ծառայից ձեռքը
մատնեցին: [Թիւն Մ'ըրին Ե-Ն:
84. Իր երկրին մարդիկն անոր դէմ ապստամբու-

*Ծարունակութիւնը (տողք 84—102) տես Ռասսամայ Գլանին մէջ՝ սիւն Գ. 8—26, եւ Գ. Սմիթայ Ա. Գլանին մէջ՝ սիւն Գ. 65—82:*

102. . . . . . Նոյն օրերն Բիրճզխադրի՝ իշխանն
Մեդացւոց,
[1]Սէ-Ն Դ. 1. Սարատի Ե-Պարիտիա[2] Գա-
գուայ[3] որդիքն, իշխանին Շակաց,

---

[1] Այս սեան 1—5 տողերը տես Նաեւ ի Փր. Լընորման, Les origines de l'histoire, 2դ տպգր., Բ. Հտր., մասն Ա., էջք 643–644:

[2] Այսպէս՝ ըստ Փր. Լընորմանի:

[3] Գու-գէ, այլ ընթերցուած Գու-ու-գէ եղ. սեռ.: Եբ. Շրատեր իւր Keilinschriften und Geschichtsforschung (1878, էջ 159, ծանօթ.) գործոյն մէջ՝ Գագու անուան տակ Ս. Գրոց Գոգը եւ "Գոգ Շակաց" ճանչնալ կը միտէ: Իսկ Փր. Լընորման (յիշ. գրծ., անդ, էջք 463–466)

2. Իմ ճոխութեանս լուծը նետած էին։
3. Անոնց ամրոցներէն 75ը առի. աւարնին բարձեալ տարի։
4. Զիրենք եւս կենդանւոյն ձեռք բերի,
5. Եւ Նինուէ՝ իմ տէրութեանս քաղաքը փոխադրեցի։

. . . . . . . . . . . . . . . . . *

## Ասուրախիդդինայ Բ. (Ք. ա. իբր 635—626)

### Խեցետախտակի արձանագրութիւնն[1]

[illegible] Ա. 1. [Ո՛վ Շամաս՝[2] տէր] մեծ՝ կը պաղատիմ քեզի, ստուգած հաստատ վճռոյ, հեռացուր [մեր յանցանքը]։

2. Կարքաշշեայ քաղաքապետն [Կաս]տարիտի[3] է որ առ Մամիտիարշու՝

---

Գ. Սմիթայ նման՝ նոյն անունը ի Գոգ կը տառադարձէ. նա զԳոգ՝ Շակաց պետն կը մեկնէ, եւ մեր Շակաշէն գաւառին անունը Գոգի Շակերէն՝ այսինքն Սկիւթացիներէն յառաջ եկած կը հաստատէ։ Իսկ Գուգարք նահանգին անունն նոյն իսկ Գոգայ անունէն յառաջ եկած կը համարի նոյն հեղինակն (անդ, էջք 465–466)։ Համբաւոր հնախօսին ըստ ամենայնի համամիտ ենք։

1 Գ. Սմիթ անգղիացի ասուրագէտն գտաւ այս արձանագրութիւնը, որ երկու կտորէ բաղկացեալ ըլլալով՝ առաջինն S 2005 եւ երկրորդն S 4668 թուերով Բրիտանական Թանգարանին մէջ կը գտնուին։ Զայն հրատարակեց նախ Ա. Հ. Սէյս յիւրում Babylonian literature, Լոնտոն 1878, էջք 20, 79 եւ հետեւ։ Տես եւ Եբ. Շրատէր՝ Keilinschriften und Geschichtsforschung, 1878, էջք 518–520. Փր. Լընորման՝ Les Origines de l'Histoire, 1882, 2դ տպագր., Բ. հոր. Մասն Ա., էջք 350–354։ Boscawen, Babylonian dated tablets, տես ի Transactions of the Soc. of Bibl. Archeol. vol. VI, pp. 21–22։

2 Արեւ դիք։

3 Կիաքսար Ա., Ք. ա. 634–584։

Digitized by Google

3. [քաղաքապետ] Մեդացւոց պատգամ խրկեց սապէս. "իրարու հետ, . . . .* երկրին հետ պիտ'որ միանանք„:
4. [Մամի]տիարշու անոր անսաց. իւր հաւանու-թիւնը անոր առջեւը ըրաւ:
5. . . . .* Այս տարի՝[1] ընդ Ասուրախիդդինայ՝ արքային [Ասորեստանի պատերազմ ըրաւ]:
6. Ըստ մեծի քոյոյ աստուածութեանդ,
7. . . . .* Մամիտիարշուայ՝[2] քաղաքապետին Մե-դացւոց, . . . .*
8. [Ասուրախիդդին՝] արքայ Ասորեստանի՝ ի . . . .*
[3] . . . . . . . . . . . . . . . .

Հափախոփոր Բ. . . . . . . . . . . .

4. Կաստարիտի իւր զօրքերովն, Գիմիրրայւոց զօր-քերովն, [Նորա ամենեքին թշնամիք,
5. Մեդացւոց զօր.քերովն, Մաննայւոյ զօրքերովն,[
6. խուժեալ հեղեղեցին: . . .
7. (Ասին) զզէնս մարտի եւ ճակատամարտի.ապրս-տամբեցան, հեստեցին: [*սովով,
8. Մերթ պատերազմիկ մենքենայներով, մերթ . . .[
9. մերթ երդմամբ եւ աստուածոց հնազանդելով, եւ . . . .*, մերթ յաւելուածով . . . .*
10. մերթ դաշնադրութեան կապով [տիրեցին] բոլոր քաղաքաց:
11. Կիշաաաա–տացւոց քաղաքը . . .* ի մէջ, Խարփամ քաղաքը, Կիշաաաա– քաղաքը պաշարեցին:
12. Անոնց ձեռքն Խարփամ քաղաքը ե– Կիշաաաա– քաղաքը առաւ:

---

1 Թերեւս 634 դ. տարին:

2 Աստէն՝ Մամիտարշու, ոչ թէ Մամիտիարշու:

3 "Ցախտակիս մնացեալ մասն կարի վնասուած ըլլա-լով, ընթերցումն անհնարին է. սակայն . . . Նէշ Սա-պար-փա-ռէ 'Սեփարադայ մարդիկ, կը յիշուին անդէն, որոնք Սեւ ծովուն եզերքը կը բնակէին„: (Սէյս): Տես Babyl. Litter., էջք 20, 80: Այս Սապար-դա՝ իբր Սպերայ-վիճակ կրնայ նկատուիլ:

13. Շամաս՝ մեծութեան աչքն՝ անոնց ձեռքին մէջ համրեց
14. — 5 [քաղաք՝ ի վիճակաց] Խուրփում եւ Կիշտաու-ուու քաղաքաց։

. . . . . . . . . . . . . . . . . . . .

27. Կաստարիտի իւր զօրքերուն, Գիմիրրացւոց զօրքերուն, Մաննացւոց զօրքերուն, [սարակ,
28. Մեդացւոց զօրքերուն, նոքա թշնամիք առհա-
29. Խուրփում քաղաքին եւ Կիշտաուուու քաղաքին վրայ [յարձակեցան]։ Կիշտաուուուտացւոց Խուրփում քաղաքը,
30. Խուրփում քաղաքին հետ Կիշտաուուու քաղաքը անոնց ձեռքն առաւ, անոնց ձեռքը ինկան։

## Անուանակիր Տարիներու Բ. Կանոնն՝ հանդերձ ծանօթութեամբք[1]

### Ասորւոց կողմն

(Սամսիռամմանայ Դ. — 825—812 — Ք. ա. ժամանակ)

814. Մուշէկնիշ՝ Կիրրուրի երկրին։ Ցերկիրն Իխսանայ։
812. Համասկումուա՝ Արբախա երկրին։ Ի Բաբելոն։

(Աղադնիրարիայ Գ. — 812—783 — ժամանակ)

811. Բէլքատաձաբատ՝ Մազամուայի։ Երկրին մէջ։
808. Բէլ-դան (°) . . .* պալատան պահակապաններուն հարիւրապետն։ Ցերկիրն Մաննայ։
807. Զիլ-Բէլ, Րաբբի-լուբ (°)։ Ցերկիրն Մաննայ։

---

1 Տես Cuneif. inscr. of West. Asia. Հատ Բ. տախտ 52։ Եւ. Շրատերայ հաւաքածոյին մէջ՝ Հատ Ա. էջք 208–215։



Digitized by Google

Ք. ա.

803. Ասուր-ուր(՞)նիշի՝ Արբախա[1] երկրին։ Ցեղը
ծովու։ Ժանտախտ։ [ղաքն Խուբուսկիա։
802. Աղարմալիք՝ Ախի-Զուխինա քաղաքին։ Ի քա–
800. ԱՆ . . .* Ամիդի քաղաքին։ Ցերկիրն Ա. Ա.
797. Ասուրբէլուձուր՝ Կիրրուրի երկրին. Ի քաղաքն
Մանդյուտափ։ [Դիրի։[3]
795. Ուկինաբուա՝ Տուսխան երկրին[2]։ Ի քաղաքն[
792. Բէլիքիշա(ա)նի՝ Մէխինէա քաղաքին։ Ցերկիրն
Խուբուսկիայ։
785. Մարդուկշարուձուր...* Ցերկիրն Խուբուսկիայ։
Մեծն աստուած զանի Դիրի քաղաքը հան–
դիսութեամբ մտցընէ։
784. Նաբուշարուձուր՝ Կուրբան քաղաքին։ Ցեր–
կիրն Խուբուսկիայ։
783. Աղարնաձիիր՝ Մազամուա քաղաքին։ Ցեր–
կիրն Իտու՝։[4]

*(Սալմանասարայ Գ. — 783—771 — ժամանակ)*

782. Նալբաասամիլի՝ Մծբին քաղաքին։ Ցերկիրն
Իտու՝։ [Ուրարտու։
781. Սալմանասար՝ արքայ Ասորեստանի։ Ցերկիրն
780. Շամսիիլու, Տուրտան։ Ցերկիրն Ուրարտու։

---

1 Վասպուրական նահանգին հարաւակողմն՝ Աղբակ գաւառն։

2 Աղձնեաց հարաւոյ արեւմտակողմը՝ Տուսխան քաղաքին վիճակն։

3 785 տարւոյն կցեալ ծանօթութիւններուն ամբողջութենէն կ'երեւայ թէ այս քաղաքն Խուբուսկիա վիճակին մէջն էր։

4 Թուի թէ այս երկիրն Սալմանասարայ Բ. Նիմրուտայ կոթողին 51դ տողին մէջ յիշուած Իդու (ասոր. Իդուի) երկրին հետ նոյն էր. ուստի եւ Զամուա երկրին փոքր մէկ վիճակն էր։

Digitized by Google

Ք. Ա.

779. Մարդուկլիդանի. Բաբբիլուբ(°)։ Յերկիրն Ուրարտու։ [կիրն Ուրարտու։

778. Բէլմուշարիշիր՝ պալատան Հարիւրապետ։ Յեր-

777. Նաբուպուրուկին՝ պաշտօնեայ։ Յերկիրն Իտու՚։

776. Պանասուր-լա-խաբալի՝ Հարիւրապետ երկրին։ Յերկիրն Ուրարտու։ [րարտու. յերկիրն Նամրի։

774. Իստարդուր՝ Մծբին քաղաքին։ Յերկիրն Ու-

Յետոյ կողմն

(Ասորդանայ Գ. — 771—753 — ժամանակ)

769. Բէլմալիք՝ Արբախա երկրին։ Յերկիրն Իտու՚։

768. Աբալաի՝ Մազամուա քաղաքին։ Երկրին մէջ։

765. Ադարմուկիննիշի՝ Կիրրուրի երկրին։ Յերկիրն Խատարիկայ։ . . . .

764. Ձիդքիիլու՝ Տուսխան երկրին։ Երկրին մէջ։

762. Տաբբէլ՝ Ամիդի քաղաքին։ Ասուր քաղաքին մէջ ապստամբութիւն։

761. Ադարմուկինախ Նինուէ քաղաքին։ Արբախա քաղաքին[1] մէջ ապստամբութիւն։

760. Լաքիբու՝ - Կակ(°)զի քաղաքին։ Արբախա քաղաքին մէջ ապստամբութիւն։

(Թագղաթփաղասարայ Գ. — 745—727 — ժամանակ)

745. Նեբոմբէլուձուր՝ Արբախա քաղաքին։ Այրու[2] ամսոյն 12դ օրը Թագղաթփաղասար գահը ելաւ։ . . . .

---

[1] Այս քաղաքն՝ վերոյիշեալ Արբախա երկրին գլխաւոր քաղաքն պէտք էր որ ըլլար։

[2] Ապրիլ 20-Մայիս 20։

Digitized by Google



743. Թագղաթփալասար՝ արքայ Ասորեստանի։ Ի քաղաքն Արփադ[1]։ Ուրարտուի զօրաց ջարդ։

739. Սինտակկիլ՝ պաշտօնեայ։ Ցերկիրն Ուլլուբայ։..

736. Ադարմալիք՝ Մծբին քաղաքին։ Ի ստորոտ Նալ[2] լերին։ [Ուրարտու։

735. Ասուրսալլիմաննի՝ Արբախա երկրին։ Ցերկիրն[

733. Ասուրդանինան(ն)ի՝ Մազամուա քաղաքին։ Ցերկիրն Դամասկոս։

729. Նապխարիլու՝ Կիրրուրի երկրին։ Թագաւորն Բելայ ձեռքը կը բռնէ։

728. Դուրասուր՝ Տուսխան քաղաքին։ Թագաւորն Բելայ ձեռքը կը բռնէ։

## (Սաղմանասարայ Դ. — 727—722 — ժամանակ)

726. Մարդուկբելուձուր՝ Ամիդի քաղաքին։ [Երկրին] մէջ։

## Նոյնպիսի ցուցակի մը հատակոտորն[3] (Սարգոնի — 722—705 — ժամանակ)

707. Ուագայրութիւն Շա-Ասուր-դուբբուի՝ կուսակալի Տուսխան քաղաքին . . . . .* պալատներն շրջապատեցան եւ . . . . *

705. Ուագայրութիւն Ուպախխիրբելայ՝ կուսակալի Ամիդի քաղաքին . . . .* Միտկախպաի (°) Կուլումմացին . . . . *

---

1 Ասորւոց հիւսիսակողման մէջ։

2 Տարօնոյ հարաւոյ արեւմտակողմն լեռ մը։

3 Cuneiform inscr. of West. Asia, հտր Բ. տախտ 69։ Եբ. Շրատեր՝ Keil. Bibl. հտր Ա. էջ 214 եւ 215։

Digitized by Google

# Դարեհի Ա. (Ք. ա. 521—485)

## Բագիստան (Պիսուդուն)ի արձանագրութեանէն[ա].

### Ա. — Վասն Արմ՚ինացւոց Պատերազմին.

| Պարսկական խմբագրութիւն[բ] | Մարական խմբագրութիւն[գ] | Բաբելոնական խմբագրութիւն[դ] |
|---|---|---|
| Սէ—ն Ա. 1. Ես Դարայավաւշ՝ թագաւոր մեծ, թագաւոր[թագա]ւո | Սէ—ն Ա. 1. Ես Դարիյավաւոս՝ թագաւոր մեծ, թագաւոր թագաւորաց, թագաւոր ի Պարսս, թագաւոր երկրաց, Վիշ | 1. . . . . . . . . . . . . . |
| 2. րաց, թագաւոր ի Պարսս, թագաւոր երկրաց, Վ(ի)շտ | | . . . . . . . . . . . . . . |
| 3. ասպայ որդի, Արշամայ թոռն, Աքեմենեան: . . . . . . . . | 2. տասպայ որդի, Արշամայ թոռն, Աքեմենեան: . . . . . . . . | . . . . . . . . . . . . . . <br>. . * Աքեմենեան: |
| . . . . . . . . . . . . . . | . . . . . . . . . . . . . . | . . . . . . . . . . . . . . |
| 13. Դարայավաւշ թագաւորն [կ՚ը]սէ. ասոնք (են) նահանգք՝ որոնք ի[մ պետու]թիւնս կը կազմե | 9. Եւ Դարիյավաւոս արքայն կ՚ըսէ. ասոնք (են) նահանգք՝ որոնք իմս կ՚ան | 4. . . . Այսպէս կ՚ըսէ Դարի՚ամուշ արքայն. ասոնք |
| 14. ն. Աւրամազդայի զօրութեամբ թագաւոր եղայ. Պարսկաստան, Շօ[շաստան, Բաբե]լաստան, Ա | 10. ուանին. Որամազդայի շնորհիւ ես անոնց վրայ թագաւորութիւն ըրի. Պարկաստան եւ Շօշաստան եւ Բաբելաստան եւ Աս | 5. . . . . . . . . . . . . . * թագաւոր եղայ. Պարսկաստան, Ելամ, Բաբելաստան, Ասորեստան, Արաբիա, Եգիպտոս, Որք առ ծովուն, Սապարդու, Յոնիա, |
| 15. սորեստան, Արաբիա, Եգիպտոս, Որք առ ծովուն, Սպարդա[ե], Յո[նիա, Մարաստան, Ար]մ՚ինա, Կապա | 11. որեստան եւ Արաբիա եւ Եգիպտոս եւ ծովեզերեայ երկիրք եւ Սպարդա եւ Յո | |
| | 12. նիա եւ Մարաստան եւ Հարմի- | |

| | | |
|---|---|---|
| 16. դովկիա, Պարթեւաստան, Դրանգիանէ, Արիա, Խորասմիա, Բակտրի[ա], Սոգդիանէ, Գանդարա, Շա | Նիյապ եւ Կապադովկիա եւ Պարթեւաստան եւ Դրանգիանէ եւ | 6. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . |
| 17. կք, Սատտագիդացիք, Առաւատ գ), | 13. Արիա եւ Խորասմիա եւ Բակտրիա եւ Սոգդիանէ եւ Գանդարա եւ | Արիա, Խորասմիա, Բակտրիա, Սոգդիանէ, Գանդարա, Շակքb), |

ա) Երեքլեզուեան արձանագրութիւնս՝ 1835 տարին անգղիացի պաշտօնական Հենրիկոս Րաւլինսըն՝ արդի Պարսկաստանի Արտիլան նահանգին հարաւակողմը Բիսուդուն կամ Բէհիսթան կոչուած ժայռային լերան վրայ փորագրեալ՝ գտաւ։ Բաբելոնական խմբագրութեան վերեւը գտնուող գետակէ մը կաթած ջուրերն՝ նոյնը մեծապէս եղծած են։ Հ. Րաւլինսըն այս արձանագրութիւնները ընդօրինակեց եւ թարգմանեց։ Տես Journal of the Royal Asiatic Society, 1846։ Օբբերդ եւ Փր. Շբիգել պարսկական՝ եւ դարձեալ Օբբերդ մարական խմբագրութիւնները արձակօրէն եւ պարբերութեամբք թարգմանեցին. սակայն մենք բառական թարգմանութեամբ՝ որչափ հնար էր՝ բնագրաց համեմատ զանոնք տողերու բաժնեցինք։

բ) Տես Օբբերդ ի Journal Asiatique 4e Série, 1851, հտ ԺԷ, էջք 255 եւ հետ., 534, 546 եւ հետ.։ Fr. Spiegel, Die Altpersischen Keilinschriften. 2e édit., 1881, էջք 2—5, 12—14, 16—21։

գ) Յատկապէս Լիւկիա, Կիլիկիոյ արեւմտակողմը եւ արեւմտեան հիւսիսակողմը։

դ) Հարաւատիշ, Արաքոսիա։

ե) Ափրիկէի հիւսիսակողմը՝ Կիւրենէ, եւ կամ Պարսից ծոցին հիւսիսոյ արեւմուտք եզերքն երկիր մը։ Մակա անունն Հայաստանի որ եւ է մասը չցուցըներ։

1) Յ. Օբբերդ, Le peuple et la langue des Médes, էջք 112—115, 124—131։

a) Կ. Պեցոլտ, Die Achem. inschr. Transcr. des babyl. Textes nebst Uebersetz. էջ 2 եւ հետ.։

b) Նամիրի, որ 'Կիմմերացիք, անուան բաբելոնական ձեւն է։

Մակա[k]). ընդ ամենայն՝ 23 երկիր։
[Կ՚ըս]է Դարա

18. յավաւշ արքայն. այս երկիրներն (են) որ իմ պետու[թիւնս] կը կազմեն. Աու
19. րամազդայի շնորհիւ ինձի ծառայ եղան, ինձի հարկեր բերին. ինչ որ ինձմէ
20. գիշեր ու ցորեկ անոնց հրամայեցաւ, այն կատարեցաւ։ . . . .
Սէ—ն Բ. . . . . . . . . . . . .
5. . . . . [Կ՚ըս]է Դարայավաւշ ա

6. րքայն. մինչդեռ ես ի Բաբելոն էի[q]), ա[յս երկիրներն (են) որ]-ոնք ինձմէ ա
7. պըստամբեալ յեստսկացին. Պարսկաստան, Շօշաստան, Մարաստան, Ասորեստան, [Եգիպտոս, Պարթեւստա[h])]տան, Մարգիանէ, Սատ-
8. տագիտացիք, Շակք։ . . . . .
. . . . . . . . . . . . . .
29. Դարայավաւշ թագաւորն կ՚ըսէ. [ապա Դադարշիշ ան]ուն արմ-‘ինացին՚ը)ի

14. Շակք եւ Սատտագիդացիք եւ Առաւատ եւ Մակկա. ընդ ամենայն 23 երկիր։ Եւ
15. Դարեհյավաւս արքայն կ՚ըսէ. այս նահանգներն (են), որոնք իմս կ՚անուանին. շնորհիւ Որամազդայի հպատակութիւն ի
16. նձի ըրին. տուրքեր ինձի բերին. ինչ որ ես անոնց գիշեր [ցորեկ] հրամայեցի, զայն կատարե
17. ցին։ . . . . . . . . . . . .
Սէ—ն Բ. 1. Եւ Դարեհյավաւս արքայն կ՚ըսէ. մինչդեռ ես ի Բաբելոն էի, այս երկիրներն
2. ինձմէ ապստամբեցան. Պարսկաստան եւ Շօշաստան եւ Մարաստան եւ Ասորեստան եւ Ե
3. գիպտոս եւ Պարթեւաստան եւ Մարգիանէ եւ Սատտագիդացիք եւ Շա՛կ
4. ք։ . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . .
21. . . . Եւ Դարեհյավաւս արքայն կ՚ըսէ. Դադարսիս

Սատտագիդացիք,

7. . . . . . . . . . . . . . .
. . . .* այս երկիրներն (են) որ ինձի հնազանդեցան. Ուրիմիզդայ պաշտպանութեամբն ինձի հպատակ եղան, տուրքեր

8. . . . . . . . . . . . . . .*
. . . . . . . . . . . . . .
40. Դարի՚ամուշ . . . . . . . .
. . . . . .* էի, այս երկիրներն (են) որոնք ինձմէ ապստամբեցան. Պարսկաստան, Իլամ, Մարաստան, Ասորեստան,

41. . . . . . . . . . . . . . .
. . .* Սատտագիդացիք, Շակք[c])

. . . . . . . . . . . . . .*

. . . . . . . . . . . . . .*

30. մ ծառայս, զանի ես յԱրմ'ինա խրկեցի. [այսպէս ըսի. "Եր]թ, զքա

31. նակն զայն ապստամբ՝ (որ) ինծի չհպատակիր, զանի [զարկ„: Ապ]ա Դադարշի

32. ւ քալեց: Երբ յԱրմ'ինա գնաց, յետոյ [ապստամբներն] գումա- րեցան, քալե

33. ցին Դադարշեայ դէմ՝ պատերազմ տալու: [Զուզա[թ])] անուամբ աւ-

22. անուն Հարմինացի[2]) մը՝ իմ ծա- ռայս, զանի ես ի Հարմինիյայ[3]) խրկեցի. այսպէս

23. ըսի. "գնա այն ապստամբաց բա- նակը՝ որոնք իմս չեն ըսուիր, զա- նոնք սպաննէ„: Ապա Դադարսիս

24. քալեց: Երբ ի Հարմինիյայ հա- սաւ, ապստամբներն ի մի վայր գումարեցան, Դադարսեայ դէմ

. . . . . . . . . . . . . . *

48. . . . . . . . . . . . . . * զօրկ ապստամբաց բանակը՝ որոնք ինծի չեն հնազանդիր:

49. . . . . . . . . . . . . . *
. . . . . . . . . . . . . . *
. . . . . . . . . . . . . . *

---

զ) Բաբելոնի պատերազմը Դարեհ անձամբ կը վարէր: Այս պատերազմն 521 Նոյեմբ. ամսէն մինչեւ 519 Յուլիս ամսոյն վերջերն տեւեց, այսինքն 21 ամիս: Բաբելոն քաղաքն 20 ամիս պաշարմանէ վերջն առնուեցաւ: Տես Օբբերդ՝ La peuple et la langue des Mèdes, էջ 123, ծանօթ. 2, եւ էջ 125, ծանօթ. 1: Ասպա կրնանք ապահովապէս ըսել թէ Ուրարտու — Արմ'ինայի ապստամբութիւնն 520ին մէջ եղած է:

է) Տես մարական խմբագրութիւնը, ուր այս երկու երկրաց անուններն անեղծ կը գտնուին: Եթէ Դարեհ զԱրմ'ինա այս տեղս ապստամբեալ երկրաց կարգը յականէ յանուանէ չի յիշեր, պատճառն էր անշուշտ որ զԱրմ'ինա Մարաստանի մաս կը բանէր, այնու որ Մարաց վեհագոյն պետութեան տակն եղած էր:

ը) Արմ'ինիյա:

թ) Խմբագրութեանս մէջ այս եղծեալ անունը մարականէն փոխառեալ է: Բզնունեաց ծովուն հիւսիսա- կողմը՝ Զարիշատ Աղիովտի:

2) Հարմինիյար:

3) Ցօգնական ձեւ. եզականն է Հարմինիյա:

c) Նումիբի:

25. եկան պատերազմ ընելու։ Այն
ատեն Դադարսիս անոնց հետ ճա-
կատեցաւ։ Աւան (մը կայ) Զուզա
26. անուն ի Հարմինիյայ. հոն Որա-
մազդա ինծի օգնական եղաւ.
շնորհիւ Որամազդայի՝ բանակն
27. այն իմ՝ ապստամբաց այն բանա-
կէն շատերը սպաննեց։ (ԱՆ[4]) -)
ՊՈՒԼ(Մ) (ԱՆ-) Սուրվար ամսոյն
8դ օրը
28. այսպէս պատերազմ ըրին։ Իւ-
2դ անգամ ապստամբներն ի մի
վայր գումարեցան, Դադարսեայ
29. դէմ եկան պատերազմ ընելու։
Ապա՝ ամրոց (մը կայ) Տիգրա
անուն՝ Հարմինիյայի
30. մէջ. հոն պատերազմ ըրին. Որա-
մազդա ինծի օգնական եղաւ.
Որամազդայի շնորհիւ՝ բա
31. նակն այն իմ՝ ապստամբաց այն
բանակէն շատերը սպաններ։ 18դ
օրն (ԱՆ–)ՊՈՒԼ(Մ) (ԱՆ–) Սուր-
վար

ան (մը կայ) յԱ
34. րմանիյա[d]). հոն ճակատ տուին.
Աուր[ամազդա ինծի նպաստամա-
տոյց է
35. ղաւ[h]). Աուրամազդայի շնորհիւ,
բանակն այն ի[մ՝ զայն բանակ]
ապստամբ
36. չարաչար զարկաւ[i])։ Թուրավահա-
րահյա ամսոյն 8 գ[k]) օ[րը անդ՝]
եղաւ
37. ճակատամարտն անոնց հետ։ Դար
[այավաուշ Թագաւո]րն կ'ըսէ.
երկրորդ անգամ
38. ապստամբներն գումարեցան. քա-
լեցին [Դադարշեայ դէմ ճակ]ատ
տա
39. լու։ Տիգրա[e]) անուամբ ամրոց (մը
կայ) յԱրմանիյա. [հոն ճակատ
տ]ուին. Ա
40. ուրամազդա ինծի նպաստամատոյց
եղաւ. շնորհիւ [Աուրամազդայ՝
բանակն] այն իմ
41. այն ապստամբ բանակը չարաչար
զարկաւ[l])։ [Թուրավահարահյա ա]
մսոյն 18դ
42. օրը անդ՝ եղաւ ճակատամարտն.
անոնց հետ։ [Կ'ը]սէ Դարայա

. . . . . . . . . . . . *
ճակատ տալու։ Ապա Դադարշու՝
Ուրաստուէ[d]) մէջ՝ ի քաղաքն
Զուզու անուն՝ ճակատ տուաւ
անոնց հետ։

50. . . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . . *
. . . . * ապստամբներն գումա-
րեցան եւ ճակատ տալու համար
Դադարշուին դէմ քալեցին. ապա
ճակատ տուին.

. . . . . . . . . . . . *

51. . . . . . . . . . . . *
ճակատն։ Անոնցմէ 546 հոգի
սպաննեցին, եւ 520 հոգի կեն-
դանւոյն գերի բռնեցին։ Ցետոյ
3դ անգամ ապստամբներն

43. վաւշ արքայն. երրորդ անգամ ապստա[մբներն գումարեցան], քալեցին ընդ
44. դէմ Դադարշեայ պատերազմ տալու: Ու[հի]ամա ի) [անուամբ ամր]ոց (մը կայ) յԱրմանիյա. ա
45. նդ ճակատ տուին. Աուրամազդա [ինծի նպաստամատոյց եղաւ. շ]նորհիւ Աուրամա
46. զդայի՝ իմ այն բանակս զայն բանակ [ապստամբ չարաչար զար-

32. ամսոյ այսպէս պատերազմ ըրին: Եւ 3 դ. անգամ ապստամբներն ի մի վայր գումարեցան, Դա
33. դարշեայ դէմ եկան պատերազմ ընելու: Ույամա անուամբ ամրոց (մը կայ) Հարմինիյայի
34. մէջ՝ հոն պատերազմ ըրին. Որամազդա ինծի օգնական եղաւ. Որամազդայի շնորհիւ՝ բա
35. նակն այն իմ՝ ապստամբաց այն բանակէն շատերը սպաննեց: 9 դ.

52. . . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . *

Ուրիմիզդայի պաշտպանութեամբն իմ զօրքս ապստամբները զարկաւ: Սիվան (ն) ամսոյն 9 դ. օրը ճակատ տուին:

---

ժ) Արմ'ինա անուան միւս այլ ձեւ մը:

ի) Հ. պրս. ստղասպամ ոճոյս ՚Նպաստ բերաւ,՚:

լ) Իմա ՚զՊարսիկ բանակն Արմ'ինացիք չարաչար զարկին,՚. որովհետեւ՝ յետոյ մինչեւ յԱսորեստան յառաջացած են. տես 53 դ. տող:

խ) Այս ամիսն Ապրիլ—Մայիս ամիսները կ'առնուր: Օբբերդ պատերազմի տարին 519ին կը դնէ: Ըստ այսմ առաջին ճակատամարտն 519 Ապրիլի իբր 28ին եղած կ'երեւի:

ծ) Անծանօթ անուն. սակայն թուի թէ այս ամրոցն Տիգրիսի արեւելեան ծիւղոյն ստորին կողմանքն էր:

կ) Այս է՝ Արմինացիք Պարսից երկրորդ անգամ յաղթած են:

հ) Հաւանականօրէն՝ Աղձնեաց արեւելից Հարաւակողմն կը գտնուէր այս ամրոցն:

ձ) Դիւց որոշանշի հնչականն:

ղ) Ասորեստանեան Ուրարտու ձեւոյն՝ բաբելոնական ձեւն էր Ուրաստու:

կաւ^{d)}]: Թարգարկա
47. իշ ամսոյն 9դ ^{g)} օրը անդ եղաւ [ճակատամարտն անոնց հետ]: Ցետոյ
48. Դադարշիշ այնչափ ժամանակ ինծի սպասեց, [մին]չեւ ես եկայ ի Մա

49. րաստան^{d)}: Կ'ըսէ Դարայավաւշ ար[քայն. յետոյ Վաւմ'իսա] անուն պարսիկ՝ իմ ծա

50. ռայս, զանի ես յԱրմ'ինա խըրկեցի. [այսպէս ըսի.] "գնա, զբանակն
51. զայն ապստամբ՝ (որ) ինծի՝ չհպատակիր, [զայն զա՛րկ„: Ցե]տոյ Վաւմ'իսա ք
52. ալեց: Երբ յԱրմ'ինա գնաց^{f)}, յետ[ոյ ապստամբներն գու]մարեցան. քալեցին ընդ
53. դեմ Վաւմ'իսայ պատերազմ տալու: [Իզ]ի[տուս կոչուած եր]կիր (մը կայ) Ասորեստանի մէ

54. Ջ. Հոն ճակատ տուին: Աւրամազ[դա ինծի նպաստ]ամատոյց

օրն (Աղ.-) ՊՈՒԼ(Մ) (Ան-) Սայիկարրիչիս

36. ամսոյ այսպէս պատերազմ ըրին: Եւ ապա Դադարսիս ոչինչ ոչ գործեաց. ինծի սպասեց
37. մինչեւ որ ես Մարաստան եկայ: Եւ Դարիյավաւս Թագաւորն կ'ըսէ. Վաումիս
38. սա անուն պարսիկ մը՝ իմ ծառայս, զանի ես ի Հարմինիյապ խրկեցի. այս
39. պէս անոր ըսի. "գնա՛, այն ապստամբաց բանակը՝ (որոնք) իմս չեն ըսուիր, զանոնք սպաննէ„: Ապա
40. Վաումիսաս խաղաց գնաց: Երբ ի Հարմինիյապ հասաւ, ապստամբներն մի վայր գումարեցան, Վա

41. ումիսասյին դէմ եկան պատերազմ ընելու: Ապա Իզզիտոյ կոչուած (երկիր կայ) Ասորեստանի մէջ, հոն պատե
42. րազմ ըրին: Որամազդա ինծի օգնական եղաւ. Որամազդայի շնոր-

53. . . . . . . . . . . . . . *
. . . . . . . . . . . . . . *
. .* Այսպէս կ'ըսէ Դարի'ամուշ արքայն. Ումիսի անուն ծառայն՝ պարսիկ մը, Ուրատուի վրայ

54. . . . . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . . . . *

. . . * ապստամբներն գումարեցան եւ Ումիսուի դէմ քալեցին ճակատ տալու համար: Ապա ճակատը տուին

55. . . . . . . . . . . . . . *

եղաւ. շնորհիւ Աու

55. րամազդայի՝ իմ այն բանակս զայն [բանակ ապստա]մբ չարաչար զար- կաւ։

56. Անամակաւհյա ամսոյն 15դ.յ) օրը [անդ՝ եղաւ անոնց] հետ ճակա- տամարտն։

57. Կ'ըսէ Դարայաւաւշ [արքայն. Ե]ր- կրորդ [անգամ] ա

58. պըստամբներն գումարեցան, քա- լեցին ընդդէ[մ Վ]աւմ'իսայ ճա- կատ] տալու։ Աւ

հիւ՝ այն իմ բանակս

43. ապստամբաց այն բանակէն չա- տերը սպաննեց։ (ԱՆ-) ՊՈՒԼ(Մ) (ԱՆ-) Անամակկաս ամսոյն 15դ օրն այս

44. պէս պատերազմ ըրին։ Եւ 2դ անգամ ապստամբներն ի մի վայր գումարեցան Վ. ասծիս

45. սային դէմ եկան պատերազմ ընե- լու։ Ապա գաւառ (մը կայ) Հաո- տիյարուս անուն, հոն պատեր

. . . . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . . . *

Անոնցմէ 2024 հոգի սպաննեցին։ 2դ անգամ ապստամբներն գու- մարեցան եւ Ուիսուէին դէմ քա- լեցին ճակատ տալու համար։

56. . . . . . . . . . . . . . *

---

ձ) Իմա երրորդ պարտութիւն Պարսից։

ղ) Թաիգարկաիշ ամիսն Մայիս—Յունիս ամիսներէն կ'առնուր. ուստի երրորդ ճակատամարտն՝ 519 Մայիսի դէպ ի 29ը եղած կ'երեւի։

ճ) Անիմաստ խօսք. որովհետեւ Արմէնացւոց բանակն երրորդ ճակատամարտէն վերջ Արմ'ինայի սահմա- նագլուխները անցնելով՝ դէպ ի Բաբելոն կը քալէր։

մ) Յաիաւէին յԱրմ'ինա չհասած՝ Ասորեստանի մէջ ճակատեցաւ Արմ'ինացւոց հետ, որոնց եւ առաջին անգամ հոն յաղթեց։ Իսկ երկրորդ յաղթութիւնը տարաւ Արմ'ինայի մէջ. տես 53, 58—61 տողերը՝ ստորեն ի վայր։

յ) Այս ամիսն Դեկտեմբեր—Յունուար ամիսներէն կ'առնուր։ Ուստի Արմ'ինացւոց առաջին պարտութիւնն 518 Յունուարի դէպ ի 5ն եղած կ'երեւի։

59. տիյարա[բ]) անուամբ երկիր (մը կայ) Արմ՚ինա[յի մէջ. հոն ճակատ] տուին։

60. Աւրամազդա ինծի նպաստամատոյց եղաւ. [շնորհիւ Աւրամազդ]այի՝ բանակն այն ի

61. մ՝ այն ապստամբ բանակը [զարկաւ չարաչարութու րա]վահարահյաամս

62. պն վերջն[գ]) եղաւ անոնց հետ [ճակատամարտն]։ Ցետոյ Վ աւմ՚իսա

63. այնչափ ժամանակ Արմ՚ինայի մէջ ինծի սպասեց, [մինչեւ ես] Մարաստան եկայ։

64. Դարայավաւշ արքայն կ՚ըսէ. յետոյ ես ելի ի

65. Բաբելոնէ, գնացի ի Մարս։ . .

. . . . . . . . . . . . . .

46. ազմ ըրին. Որամազդա ինծի օգնական եղաւ. Որամազդայի շնորհիւ՝ իմ այն բանակս ի բանա

47. կէն յայնմանէ ապստամբաց շատերը սպաննեց։ (ԱՆ-) ՊՈՒԼ(Մ) (ԱՆ-) Սուրվարայ վերջն այսպէս պատերազմ ըրի

48. ու Ցետոյ Վ ամիսաս Հարմինիյայի մէջ սպասեց, մինչեւ որ ես Մարաստան եկայ։ Եւ

49. Դարիյավաւս Թագաւորն կ՚ըսէ. յետոյ ես Բաբելոնէն ելայ, Մարաստան գնացի։

. . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . *

. . . . . * Արու ամսոյն 30 դ օրը ճակատ տուին։ Անանցմէ 2045 հոգի սպաննեցին, եւ 2559 հոգի կենդանւոյն գերի բռնեցին։

57. . . . . . . . . . . . . . *

. . . . . . . . . . . . . . *

. . . . ի Մարս։

. . . . . . . . . . . . . .

---

[բ]) Մեծի Հաւանութեան է որ կորձէից Ասյուանք գաւառն էր այն, որ ասորեստանեան արձանագրութեանց մէջ Ազաուս կը կոչուի։

[գ]) Ք. ա. 518 Մայիսի երկրորդ տասնեկին վերջերն։

## Դարեհի Ա.

## Պերսեպոլսի պալատան արձանագրութիւնն[1]

### Թ. = I.

1. Ես Դարայավաւշ՝ արքայ մ
2. եծ. թագաւոր թագաւորա
3. ց, թագաւոր երկրացս այսո
4. ցիկ բազմաց։ Վիշտասպայ
5. որդի, Աքեմենեան։ Ասէ Դարա
6. յավաւշ արքայն. շնորհիւ Աուրամա
7. զդայի՝ այս երկիրներն (են) զորոնք ես
8. կը կառավարեմ այս պարսիկ զօր
9. քով, որոնք իմ առջեւս կը վախնային, ինծի տու
10. րք կը բերէին. Շօշաստան, Մարաստան, Բա-
    բելաստա
11. ն, Արաբիա, Ասորեստան, Եգիպտո
12. ս, Արմ'ինա, Կապադովկիա, Սպարդա, Յո
13. նիացիք՝ որք ցամաքի եւ որ
14. ք ծովու, եւ երկիրք որ [Դրանգիա
15. քյարեւ[ել]ս, Սագարտացիք, Պարթեւաստան, [
16. նէ, Արիա, Բակտրիա, Սոգդիանէ, Խո
17. րասմիա, Սատտագիդացիք Առաւատ, Հ
18. նդիկք, Գանդարա, Շակք, Մակա։

---

1 Պերսեպոլսի մէջ Դարեհի Ա. կանգնել տուած պալատան հարաւային պատին վրայ քանդակուած է այս արձանագրութիւնն. միայն հին պարսիկ լեզուաւ գրուած է։ Տես Յ. Ոբբերդայ թարգմանութիւնը ի Journal Asiatique, 4e série. Հտր ԺԹ., 1852, էջք 140–141, եւ Փր. Շբիկէլ՝ Die Altpersischen Keilinschriften, 2դ տպագր., 1881, էջք 48–51 եւ 79։

Digitized by Google

# Դարեհի Ա.

## ի Նաqշ-ի-Ռուստամ արձանագրութիւնն[ա])

## NR[a])

| Պարս. խմբագր.[x]) | Մար. խմբագր.[1]) | Բաբել. խմբագր.[a]) |
|---|---|---|
| 1. Աստուած մեծ Աւրամազդա . . . | 1. Աստուած մեծ Որամազդա . . . . | 1. Մեծ աստուածն աստուածոց Ախուրամազդա՛, . . . . . . . |
| . . . . . . . . . . . . . . | . . . . . . . . . . . . . . | 2. . . . . . . . . . . . . . . որ |
| 5. որ զԴարայավաւշ թագաւոր ա | 4. . . . որ զԴարիյավաւոս | 3. զԴարի՛ամուշ շատ մը թագաւորներու թագաւոր ըրաւ։ Ես |
| 6. րար, միակ բազմաց թագա | 5. թագաւոր ըրաւ, միակ բազմաց թագաւոր, միակ | 4. Դարի՛ամուշ՝ . . . թագաւոր երկրաց, |
| 7. ւոր, միակ բազմաց հրամանա | 6. բազմաց հրամանատար։ . . . | 5. ամբողջութեան ամենայն լեզուաց, . . . ։ |
| 8. տար։ . . . . . . . . . . . | | |
| . . . . . . . . . . . . . . | . . . . . . . . . . . . . . | |
| 15. . . . Աստ Դարայավաւշ ա[րք] | 12. . . . Դարիյավաւոս արքայն կ'ըսէ. շնորհիւ Որա | 7. . . . Դարի՛ամուշ արքայն կը հաշակե. պաշտպանութեամբ |
| 16. այն. շնորհիւ Աւրամազդայի՝ այս[քիկ] | 13. մազդայ՝ ասոնք (են) երկիրք՝ զորոնք ես առացայ՝ բա | 8. Ախուրամազդա՛յի՝ հետեւեալ երկիրները առացեալ կալայ. բաց ի |
| 17. (են) երկիրք, զորս ես գրաւեցի՝ | | |
| 18. բաց ի Պարսկաստանէ. ես (անոնց) | 14. ց ի Պարսկաստանէ. ինծի հնազանդեցան, տուրք | 9. Պարսկաստանէ՝ անոնց վրայ տէրութիւն կը գործածեմ, եւ ինծի կը բերեն |
| 19. իշխեցի. ինծի հարկեր բե[րին]...* | | |
| 20. որ ինչ յինէն աս[ցաւ նոցա], ա | 15. եր ինծի բերին. ինչ որ ինծմէ անոնց հրամայուեցաւ, | 10. տուրքեր. եւ ինչ որ ինծմէ անոնց կը հրամայուի՝ կը կատարեն |
| 21. րարին. օրէնքն՝ որ յինէն տու[ան], | | |
| 22. կատարեցան. Մարաստան, Հօ- | 16. զայն կատարեցին. օրէնքն որք | |

Digitized by Google

